

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳԻՐԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

**Մարքս- լենինյան ուսմունքի պրոպագանդման բնագավառում կատարած արգասալի աշխատանքի, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների կատարմանը նրանց մոբիլիզացնելու գործին ցուցաբերած ակտիվ մասնակցության համար «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ամսագիրը պարգևատրել ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ շքանշանով:**

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
նախագահի առաջին տեղակալ՝ Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
քարտուղար՝ Թ. ՄԵՆԹԵՇԱՇՎԻԼԻ

Մոսկվա, Կրեմլ, 6 հունվարի 1983 թ.

# ՍՍՀՄ ՎԱԹՍՈՒՆ ՏԱՐԻՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ զեկուցումը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում 1982 թվականի դեկտեմբերի 21-ին

Թանկագին ընկերնե՛ր:
Հարգելի հյուրե՛ր:

Վաթսուն տարի առաջ հաղթական Հոկտեմբերյան հեղափոխությամբ ազատագրված մեր երկրի ժողովուրդները կամավոր կերպով միավորվեցին Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ: **(Ծափահարություններ)**:

Սովետական հանրապետությունների առաջին, միավորիչ համագումարում, որը հռչակեց ՍՍՀ Միության կազմավորումը, Մ. Ի. Կալինինը եզրափակիչ խոսքում ասաց. «Ամբողջ հազարամյակներ են անցել այն պահից ի վեր, ինչ մարդկության լավագույն մտածողները գլուխ են ջարդում տեսական պրոբլեմի վրա՝ գտնելու այնպիսի ձևեր, որոնք ժողովուրդներին հնարավորություն ընձեռեին առանց մեծագույն տառապանքների, առանց փոխադարձ պայքարի ապրելու բարեկամության ու եղբայրության պայմաններում: Միայն այժմ, միայն այսօր է գործնականում դրվում առաջին քարը այդ ուղղությամբ»: **(Ծափահարություններ)**:

Կապիտալիզմի զարգացումը չհանգեցրեց ազգային ճնշման վերացման: Ընդհակառակը: Ազգային ճնշումը լրացվեց և սրվեց գաղութային ճնշմամբ: Ստրկացնելով հարյուր միլիոնավոր մարդկանց, մի բուռ կապիտալիստական տերություններ նրանց դատապարտեցին չարքաշ ու տառապալից կյանքի, փակեցին նրանց առաջընթացի ուղիները:

Մարքսիզմը առաջին անգամ բացահայտեց ազգային հարցի օրգանական կապը հասարակության սոցիալական, դասակարգային կառուցվածքի հետ, սեփականության տիրապետող տիպի հետ: Այլ խոսքով, ազգային հարաբերությունների արմատները սոցիալական հող ունեն: Ահա թե ինչու Մարքսը և Էնգելսը հիմնարար հետևություն արեցին՝ սոցիալական ճնշման ոչնչացումը ազգային ճնշման ոչնչացման պայմանն ու նախադրյալն է: «...Բուրժուազիայի նկատմամբ պրոլետարիատի հաղթանակը,— ասել է Մարքսը,— միաժամանակ բոլոր ճնշված ազգերի ազատագրության ազդանշանն է»: Մարքսիզմի հիմնադիրների հռչակած՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» անմահ լոզունգը դարձավ թե՛ սոցիալական, թե՛ ազգային ստրկացման բոլոր ձևերի դեմ աշխատավորների ինտերնացիոնալ պայքարի կոչ: **(Ծափահարություններ)**:

Պատմական նոր պայմաններում Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գործը շարունակեց Վ. Ի. Լենինը: Նա գլխավորեց հեղափոխական շարժումն այն ժամանակ, երբ Ռուսաստանի վրա սկսեցին բռնկել հեղափոխության առաջին փայլատակումները: Այն երկրում, որն իրավամբ անվանում էին «ժողովուրդ-






ների բանտ», ազգային հարցը, բնականաբար, առաջին տեղերից մեկում դրըվեց բոլշևիկների կուսակցության ստրատեգիան ու տակտիկան մշակելիս:

Լենինի ուշադրության կենտրոնում էր գտնվում ազգերի ինքնորոշման իրավունքը՝ որպես նրանց իսկական, կայուն մերձեցումն ապահովող միակ հուսալի միջոց: Միայն ինքնորոշման իրավունքը կարող էր բոլոր ազգերի կամավոր համախմբման գաղափարաքաղաքական հիմք լինել ցարիզմի տապալման, նոր հասարակության ստեղծման համար մղվող պայքարում: Հարցն այսպես էր դնում Լենինը: Այսպիսին էր լենինյան կուսակցության ազգային քաղաքականության առանցքը: **(Ծափահարություններ)**:

Հոկտեմբերյան հեղափոխությունը քաղաքական լոզունգներն ու պահանջները փոխադրեց ամենօրյա կազմակերպչական աշխատանքի մակարդակի վրա: Կյանքն ինքը, տնտեսական, սոցիալական, արտաքին քաղաքական, պաշտպանական դժվարագույն խնդիրները թելադրում էին ժողովուրդների համախմբման, ռուսական կայսրության փլատակների վրա ստեղծված հանրապետությունների միավորման անհրաժեշտությունը:

Այն, ինչ այսօր ակնհայտ է թվում, բնավ ակնհայտ չէր այն բուռն, անցումային ժամանակներում: Կոնկրետ պետական ձևերի, քաղաքական հաստատությունների որոնումը, որոնցով հարկավոր էր մարմնավորել ազգային ծրագրի ընդհանուր գաղափարներն ու նախադրյալները, ընթանում էր սուր վեճերով: Բախվում էին ամենատարբեր կարծիքներ՝ կոնֆեդերացիայի շրջանակներում հանրապետությունների խախուտ, անձև միավորման ծրագրից մինչև դրանք ինքնավարության հիմունքներով պարզապես ՌՍՖՍՀ-ի կազմի մեջ ներառնելու պահանջները: Հարկավոր եղան Վ. Ի. Լենինի հանճարն ու հեղինակությունը՝ գտնելու և պաշտպանելու միակ ճշմարիտ ուղին՝ սոցիալիստական ֆեդերալիզմի ուղին:

Ո՞րն է Լենինի նշած ուղու էությունը: Համառոտակի կարելի էր այսպես ասել: Դա ազատ ժողովուրդների դաշինքի լիակատար կամավորությունն է՝ որպես սոցիալիստական հանրապետությունների ֆեդերացիայի առավելագույն ամրության երաշխիք: Դա բոլոր ազգերի և ազգությունների լիակատար իրավահավասարությունն է, նրանց ո՛չ միայն իրավաբանական, այլև փաստական անհավասարության վերացման հետևողական գիծը: Դա յուրաքանչյուր հանրապետության, յուրաքանչյուր ազգության ազատ զարգացումն է նրանց եղբայրական դաշինքի շրջանակներում: Դա մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների ինտերնացիոնալիստական գիտակցության հաստատակամ դաստիարակումն է և նրանց մերձեցման անշեղ կուրսը:

Սովետական Միության կազմավորման տարում իսկ Վ. Ի. Լենինը գրեց այն խոսքերը, որոնք վառ կերպով արտացոլեցին ազգային հարցի վերաբերյալ նրա խորհրդածությունների ընթացքը: Ահա այդ խոսքերը. «Ազգային հարցը հինգ տարվա ընթացքում լուծելու մեր փորձը մի պետության մեջ, որը պարունակում է ազգությունների մի այնպիսի բազմազանություն, որը հազիվ թե կարելի լինի գտնել այլ երկրներում, մեզ ամբողջովին համոզում է այն բանում, որ նման դեպքերում ազգերի շահերի նկատմամբ միակ ճիշտ վերաբերմունքը կլինի նրանց առավելագույն չափով բավարարումը և այնպիսի պայմանների ստեղծումը, որոնք բացառում են բախումների ամեն մի հնարավորություն այս հողի վրա: Մեր փորձը,— շարունակել է Լենինը,— մեր մեջ անսասան համոզմունք է ստեղծել, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ հսկայական ուշադրությունն է միայն, որ վերացնում է բախումների հողը, վերացնում է փոխադարձ անվստահությունը, վերացնում է ամեն տեսակի ինտրիգների երկյուղը, ստեղծում է մանավանդ տարբեր լեզուներով խոսող բանվորների և գյուղացիների այն վստահությունը, առանց որի բացարձակապես անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե փոքր ի շատե հաջող զարգացումն այն ամենի, ինչ արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ»:

Լենինյան պատգամները, ազգային քաղաքականության լենինյան սկըզբունքները մեզ համար սրբազան են: Ելնելով դրանցից, հետևողականորեն հաստատելով դրանք պրակտիկայում, մենք ստեղծեցինք հզոր պետություն՝

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որի կազմավորումը եղավ ո՛չ միայն խոշոր քայլ սոցիալիզմի զարգացման գործում, այլև համաշխարհային պատմության ընթացքի կարևորագույն բեկումնային պահերից մեկը: **(Երկարատև ծափահարություններ):**

## 1. ԱՆՑԱԾ ՈՒՂՈՒ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Վաթսուն տարում Սովետական Միության անցած ուղին մի ամբողջ դարաշրջան է: Պատմությունը, թերևս, չգիտե այդքան շեշտակի թռիչք հետամնացության , աղետների և քայքայվածության վիճակից դեպի ժամանակակից մեծ տերության հզորությունը՝ կուլտուրայի բարձրագույն մակարդակով և ժողովրդի հարաճուն բարեկեցությամբ:

Իսկ որո՞նք են մեր զարգացման առավել նշանակալի արդյունքները:

— Լիովին հաստատված է Մարքսի-Լենինի այն ուսմունքի պատմական ճշմարտացիությունը, որ ազգային հարցը կարող է լուծվել միայն դասակարգային հիմքի վրա: Սոցիալական հակամարտությունների հետ մեկտեղ անցյալի գիրկն են անցել ազգային երկպառակությունը, ռասայական և ազգային անիրավահավասարության ու ճնշման բոլոր տեսակները:

— Համոզիչ կերպով ցույց է տրված, որ ազգային հարցի սոցիալիստական լուծման գործում ղեկավար, ուղղություն տվող ուժը, այդ լուծման ճըշտության երաշխիքը կոմունիստական կուսակցությունն է, նրա գիտականորեն հիմնավորված քաղաքականությունը:

— Անհետացել են հետամնաց ազգային ծայրամասերը, որոնցում հաճախ գերիշխում էին դեռևս ֆեոդալական-նահապետական և նույնիսկ տոհմային հարաբերությունները:

— Բոլոր հանրապետությունների դինամիկ, պետական պլանով ղեկավարվող տնտեսական աճի բազայի վրա կազմավորվել է միասնական միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքս:

— Որակապես փոխվել է հանրապետությունների սոցիալական կառուցվածքը, նրանցից յուրաքանչյուրում աճել է ժամանակակից բանվոր դասակարգ, նոր, կոլտնտեսային ուղիով է ընթանում գյուղացիությունը, ստեղծվել է սեփական մտավորականություն, դաստիարակվել են որակյալ կադրեր պետական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:

— Առաջավոր ավանդույթների, հոգևոր արժույթների ինտենսիվ փոխանակման հիման վրա ծաղկել է բազմազգ սոցիալիստական կուլտուրան:

— Ձևավորվել են սոցիալիստական ազգեր, որոնք այժմ կազմում են պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ: **(Երկարատև ծափահարություններ):**

Ավելի ու ավելի սերտորեն են միահյուսվում հանրապետությունների շահերը, ավելի ու ավելի բեղմնավոր են դառնում փոխօգնությունը, փոխադարձ կապերը, որոնք միասնական հունով են տանում Սովետական Միության ազգերի և ազգությունների ստեղծարար ջանքերը: Մեր երկրում սոցիալիստական ազգերից յուրաքանչյուրի համակողմանի զարգացումը օրինաչափորեն տանում է դեպի նրանց ավելի սերտ մերձեցում:

Միութենական հանրապետություններից յուրաքանչյուրը՝ Ռուսաստանի Ֆեդերացիան, Ուկրաինան և Բելոռուսիան, Ուզբեկստանը և Ղազախստանը, Վրաստանը և Ադրբեջանը, Լիտվան և Մոլդավիան, Լատվիան և Կիրգիզիան, Տաջիկստանը և Հայաստանը, Թուրքմենիան և Էստոնիան,— կրկնում եմ, միութենական հանրապետություններից յուրաքանչյուրը անփոխարինելի ավանդ է ներդնում Սովետական Միության էկոնոմիկայի և կուլտուրայի ընդհանուր վերելքում: Եվ դա, ընկերնե՛ր, ոչ թե պարզապես մեր ստեղծագործական ուժերի գումարում է, այլ դրանց բազմակի բազմապատկում: **(Ծափահարություններ):**

Եղբայրական ընտանիքում հաջողությամբ իրենց հնարավորությունները



են բացահայտում քսան ինքնավար հանրապետություններում և տասնութ ինքնավար մարզերում ու օկրուգներում ապրող բոլոր ազգերն ու ազգությունները: Սովետական լիիրավ քաղաքացիներ են նաև միլիոնավոր գերմանացիներ, լեհեր, կորեացիներ, քրդեր, այլ ազգությունների ներկայացուցիչներ, որոնց համար Սովետական Միությունը վաղուց դարձել է հայրենիք:

Մեր երկրի ժողովուրդները երախտագիտության առանձնակի խոսքեր են հղում ռուս ժողովրդին: Առանց նրա անշահախնդիր, եղբայրական օգնության ոչ մի հանրապետության այսօրվա նվաճումները հնարավոր չէին լինի: Երկրի տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքում, նրա բոլոր ազգերի և ազգությունների մերձեցման, համաշխարհային քաղաքակրթության հարըստություններին նրանց հաղորդակցման մեջ բացառիկ նշանակություն ունեցող գործոն է ռուսաց լեզուն, որը բնականաբար մտել է ամեն մի ազգության միլիոնավոր մարդկանց կյանքի մեջ: **(Ծափահարություններ):**

Սովետական հասարակության ազգային-պետական հիմքերի ամրապնդման գործում խոշոր ուղենիշ եղավ ՍՍՀՄ նոր սահմանադրությունը: Այդ երևելի փաստաթղթի մեջ ո՛չ միայն հանրագումարի են բերված նախորդ զարգացման արդյունքները, այլև մատնանշված են երկրի բոլոր ազգերի և ազգությունների հետագա ծաղկման ու մերձեցման քաղաքական-իրավական ամուր, հաստատուն հիմքերը:

Ազգային հարաբերություններում 60 տարում տեղի ունեցած ռեալ որակական փոփոխությունները վկայում են, որ ազգային հարցը այն վիճակով, ինչ վիճակում մեզ թողել էր շահագործողական հասարակարգը, լուծված է հաջողությամբ, լուծված է վերջնականապես և անդառնալիորեն: **(Երկարատև ծափահարություններ):** Պատմության մեջ առաջին անգամ երկրի բազմազգ կազմը նրա թուլության աղբյուրից վերածվել է ուժի և ծաղկման աղբյուրի: **(Ծափահարություններ):**

Այս դահլիճում հանդես գալով ուղիղ տասը տարի առաջ, Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը շատ լավ ասաց. «Մեր երկրում... ստեղծվել են պատմության մեջ աննախադեպ հարաբերություններ, որոնք մենք իրավամբ անվանում ենք ժողովուրդների լենինյան բարեկամություն: Այդ բարեկամությունը, ընկերներ, մեր անգնահատելի հարստությունն է, սոցիալիզմի ամենանշանակալի և սովետական յուրաքանչյուր մարդու սրտի համար ամենաթանկ նվաճումներից մեկը: Եվ այդ բարեկամությունը մենք, սովետական մարդիկ, միշտ կպահպանենք աչքի լույսի պես»: **(Երկարատև ծափահարություններ):**

Այսօր, այս հանդիսավոր օրը, մենք պատշաճն ենք հատուցում բոլոր ազգությունների սովետական մարդկանց բազում սերունդներին, տղամարդկանց ու կանանց, բանվորներին ու գյուղացիներին, մտավորականությանը, կուսակցական և սովետական աշխատողներին, զինված ուժերի ռազմիկներին, կոմունիստներին և անկուսակցականներին՝ բոլոր նրանց, ովքեր կառուցել են սոցիալիզմը, այն պաշտպանել ամենածանր պատերազմում և իրողություն դարձրել ժողովուրդների հավասարության, բարեկամության ու եղբայրության հազարամյա երազանքը: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Ամփոփելով կատարվածի արդյունքները, մենք, բնականաբար, գլխավոր ուշադրությունը նվիրում ենք այն բանին, ինչը դեռ պետք է արվի: Մեր վերջնական նպատակն ակնհայտ է: Դա, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «Ո՛չ միայն ազգերի մերձեցում, այլև նրանց միաձուլում է»: Կուսակցությունը լավ է հասկանում, որ դեպի այդ նպատակն է տանում երկար ճանապարհ: Այստեղ ոչ մի կերպ չի կարելի առաջ վազել, ինչպես և չի կարելի կասեցնել նաև արդեն հասունացած պրոցեսները:

Ազգային հարցի լուծման գործում եղած հաջողությունները բնավ չեն նշանակում, թե վերացել են այն բոլոր պրոբլեմները, որոնք ծնում է միասնական պետության շրջանակներում բազմաթիվ ազգերի և ազգությունների կյանքի ու աշխատանքի բուն փաստը: Նման բան հազիվ թե հնարավոր է, քանի դեռ գոյություն ունեն ազգերը, քանի դեռ կան ազգային տարբերությունները: Իսկ դրանք գոյություն կունենան երկար ժամանակ, շատ ավելի երկար, քան դասակարգային տարբերությունները:

Ահա թե ինչու զարգացած սոցիալիզմի կատարելագործումը,— իսկ մենք հենց այդպես կարող ենք սահմանել արդի փուլում կուսակցության և ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությունը,— պետք է ներառնի նաև կշռադատված, գիտականորեն հիմնավորված ազգային քաղաքականություն: Կկամենայի անդրադառնալ այդ քաղաքականության մի քանի խնդիրների:

Արդեն ասվեց, թե մեր երկրի ժողովուրդներին, նրա հանրապետություններին ինչպիսի վիթխարի օգուտներ և առավելություններ է տվել միասնական միության մեջ միավորվելը: Բայց այդպիսի միավորման ընձեռած հնարավորությունները դեռ բնավ էլ սպառված չեն:

Վերցնենք էկոնոմիկան: Ժամանակակից արտադրաուժերը պահանջում են ինտեգրացում նույնիսկ այն ժամանակ, երբ խոսքը վերաբերում է տարբեր երկրների: Առավել ևս դրանք պահանջում են միևնույն երկրում տարբեր շրջանների ու հանրապետությունների ջանքերի սերտ ու հմուտ միավորում: Յուրաքանչյուր հանրապետության բնական և աշխատանքային ռեսուրսների, կլիմայական առանձնահատկությունների առավել խելացի օտագործում, ընդհանուր միութենական պոտենցիալի մեջ այդ պոտենցիալի առավել ռացիոնալ ներառում, ահա թե ինչը առավելագույն օգուտ կբերի յուրաքանչյուր շրջանին, յուրաքանչյուր ազգին և ազգությանը, ինչպես նաև ողջ պետությանը:

Այսպիսին է մեր սկզբունքային դիրքորոշումը: Դրա կենսագործման համար հարկ կլինի, որ շատ աշխատեն մեր կենտրոնական ու տեղական պլանային և տնտեսական մարմինները: Կպահանջվի ավելի կատարելագործել արտադրաուժերի տեղաբաշխումը, ռեգիոնալ մասնագիտացումն ու կոոպերացումը, տնտեսական կապերի և փոխադրումների սխեմաները: Իհարկե, դա հասարակ խնդիր չէ: Բայց այն հասունացել է, և դրա լուծումն զգալի շահում է խոստանում:

Ամբողջ երկիրն այժմ աշխատում է պարենային ծրագրի կատարման համար: Այդ ծրագրում հստակորեն սահմանված են բոլոր միութենական հանրապետությունների կոնկրետ խնդիրները: Եվ նրանցից յուրաքանչյուրը պետք է հիմնավորապես աշխատի, որպեսզի, այն էլ արդեն մոտակա ժամանակաշրջանում, իրական ավանդ ներդնի սովետական մարդկանց անխափան կերպով պարենամթերք մատակարարելու կարևորագույն գործում:

Ընդունած ծրագրում խոսքը, ինչպես հայտնի է, վերաբերում է առաջնահերթ, անհետաձգելի խնդիրներին: Բայց եթե մտածելու լինենք հեռանկարի մասին, ապա չի կարելի չտեսնել, որ մեր ագրոարդյունաբերական կոմպլեքսի, ինչպես և, ի դեպ, ամբողջ երկրի էկոնոմիկայի հետագա զարգացումը կպահանջի գյուղատնտեսության առավել խոր ու հետևողական մասնագիտացում ողջ երկրի մասշտաբներով:

Մի հարց ևս: Այնպիսի լայնածավալ պետության մեջ, ինչպիսին մերն է, միանգամայն առանձնահատուկ դեր է խաղում տրանսպորտը: Թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական և թե, եթե կուզեք, հոգեբանական դեր:

Առանց լավ գործող տրանսպորտի շատ դժվար է ապահովել թե՛ բոլոր հանրապետությունների արագ զարգացումը, թե՛ նրանց տնտեսական համագործակցության հետագա խորացումը: Բայց տրանսպորտը կարևոր է ո՛չ միայն զուտ տնտեսական խնդիրների լուծման համար: Տրանսպորտի, ճանապարհային ցանցի զարգացումը, գյուղը մոտեցնելով քաղաքին, ոչ պակաս չափով կնպաստի, օրինակ, նաև կադրերի ամրացմանը գյուղում: Դա, իհարկե, կօգնի լուծելու նաև սոցիալական մեծ խնդիր՝ աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ և ճկուն օգտագործման խնդիրը: Ապահովելով ամենօրյա մարդկային կոնտակտներ ամբողջ Սովետական Միության մասշտաբներով, կենդանի կապեր երկրի բոլոր հանրապետությունների ու շրջանների միջև, տրանսպորտը ծառայում է մարդկանց սոցիալիստական քաղաքակրթության հասումներին հաղորդակից դարձնելուն՝ բառիս ամենալայն իմաստով:

Միության մեջ միավորվելը դարձավ սովետական ժողովրդի ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր հարստության լրացուցիչ աղբյուրներից մեկը: Սա-



կայն այստեղ ևս մենք դեռ բնավ չենք օգտագործում բոլոր հնարավորությունները:

Հարկավոր է համառորեն որոնել աշխատանքի նոր, այսօրվա պահանջներին համապատասխանող մեթոդներ ու ձևեր, որոնք հնարավորություն ընձեռեն ավելի ու ավելի բեղմնավոր դարձնելու կուլտուրաների փոխհարստացումը, բոլոր մարդկանց առջև բացելու ավելի լայն ճանապարհ դեպի ողջ լավագույնը, ինչ տալիս է մեր ժողովուրդներից յուրաքանչյուրի կուլտուրան: Այս ազնիվ գործում հարանուն դեր պետք է խաղան ռադիոն ու հեռուստատեսությունը, ինչպես նաև, անշուշտ, մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցները:

Իհարկե, ընդսմին պետք է հիշել, որ յուրաքանչյուր ազգի հոգևոր ժառանգության, ավանդույթների մեջ, նրա կենցաղում կա ո՛չ միայն լավը, այլև վատը, դարն ապրածը: Այստեղից էլ դարձյալ մի խնդիր՝ ոչ թե կոնսերվացնել այդ վատը, այլ ձերբազերծվել այն ամենից, ինչ հնացել է, ինչը հակասում է սովետական համակեցության, սոցիալիստական բարոյականության նորմերին, մեր կոմունիստական իդեալներին:

Կյանքը ցույց է տալիս, որ բոլոր ազգերի և ազգությունների տնտեսական ու կուլտուրական առաջընթացն անխուսափելիորեն ուղեկցվում է նրանց ազգային ինքնագիտակցության աճով: Դա օրինաչափ, օբյեկտիվ պրոցես է:

Սակայն կարևոր է, որ ձեռք բերված հաջողությունների համար բնականոն հպարտությունը չվերածվի ազգային սնապարծության կամ գոռոզամտության, չհարուցի անջատվածության, մյուս ազգերի և ազգությունների նկատմամբ անհարգալից վերաբերմունքի նկրտումներ: Իսկ նմանօրինակ բացասական երևույթներ դեռևս հանդիպում են: Եվ ճիշտ չէր լինի դա բացատրել միայն անցյալի վերապրուկներով: Դրանց սնում են երբեմն նաև աշխատանքում եղած մեր սեփական վրիպումները: Այստեղ, ընկերնե՛ր, մանրուքներ չկան: Այստեղ կարևոր է ամեն ինչ՝ թե՛ լեզվի, թե՛ անցյալի հուշարձանների նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքը, թե՛ պատմական իրադարձությունների մեկնաբանությունը և այն, թե ինչպես ենք մենք վերափոխում գյուղերն ու քաղաքները, ներազդում մարդկանց աշխատանքի ու կյանքի պայմանների վրա:

Բնակչության բնական միգրացիայի հետևանքով է՛լ ավելի բազմազգ է դառնում մեր յուրաքանչյուր հանրապետություն, իսկ այս կամ այն չափով՝ յուրաքանչյուր մարզ, յուրաքանչյուր քաղաք: Ուրեմն, կուսակցության ազգային քաղաքականության կիրառողներ, կատարողներ ավելի ու ավելի մեծ չափով են դառնում կուսակցական և սովետական մարմինները, մեր բոլոր տեղական կադրերը:

Ընդ որում, նրանք հարկադրված են լինում այդ քաղաքականության վեհ սկզբունքները կենսագործել ամեն օր, ապահովել բոլոր՝ մեծ ու փոքր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների ներդաշնակ, եղբայրական հարաբերությունները թե՛ աշխատանքում, թե՛ կենցաղում:

Կուսակցությունը միշտ հսկայական ուշադրություն է նվիրել մեր հասարակության առաջատար ուժը կազմող սովետական բանվոր դասակարգի ազգային ջոկատների աճին: Եվ արդյունքներն ակնբախ են: Այժմ բանվորներն ամենախոշոր սոցիալական խումբն են բոլոր միութենական հանրապետություններում: Սակայն դրանցից մի քանիսում բանվոր դասակարգի կազմում պետք է ավելի լրիվ ներկայացվի բնիկ ազգությունը: Այստեղից էլ ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրը՝ ընդլայնել ու բարելավել հանրապետություններում բնակվող բոլոր ազգերից ու ազգություններից որակյալ բանվորների պատրաստումը: Դա հարկավոր է էկոնոմիկայի զարգացման համար: Դա կարևոր է նաև քաղաքականապես: Աշխատանքային և ամենից առաջ բանվորական բազմազգ կոլեկտիվները հենց այն միջավայրն են, որտեղ ամենից լավ է դաստիարակվում ինտերնացիոնալիստական ոգին, ամրապնդվում ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

Շատ կարևոր է նաև հանրապետությունների և ողջ Միության կուսակցա-

կան ու պետական մարմիններում աշխատավորների ներկայացուցչության հարցը: Խոսքը, իհարկե, վերաբերում է ոչ թե ներկայացուցչության ինչ-որ ձևական նորմաների: Այդպիսի պրոբլեմների լուծման նկատմամբ թվաբանական մոտեցումը տեղին չէ: Բայց հարկավոր է հետևողականորեն հասնել այն բանին, որ այս կամ այն հանրապետությունում եղած բոլոր ազգությունները պատշաճ կերպով ներկայացված լինեն կուսակցական և սովետական մարմինների տարբեր օղակներում: Կադրերի գործարար և բարոյաքաղաքական հատկանիշների հաշվառումը, նրանց ընտրության ու տեղաբաշխման ժամանակ ցուցաբերվող ուշադրությունն ու հոգատարությունը, մեծ տակտը հատկապես անհրաժեշտ են միութենական և ինքնավար հանրապետությունների բազմազգ կազմի պայմաններում:

Մշտական, իր նշանակությամբ մշտակա խնդիր է սովետական մարդկանց դաստիարակումը երկրի բոլոր ազգերի և ազգությունների փոխադարձ հարգանքի ու բարեկամության, իրենց մեծ սովետական հայրենիքի նկատմամբ սիրո, ինտերնացիոնալիզմի, մյուս երկրների աշխատավորների հետ համերաշխության ոգով:

Խնդիրը լուծելու են կոչված բոլոր կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները, սովետներն ու արհմիությունները, մեր զինված ուժերը, որոնք միշտ եղել են ինտերնացիոնալիզմի լավ դպրոց: Դա պետք է լինի երկրի բոլոր ուսումնական հաստատությունների ամենօրյա հոգածության առարկան: **(Ծափահարություններ):**

Ինտերնացիոնալ դաստիարակության բնագավառում, ինչպես և գաղափարախոսական և մասսայական-քաղաքական ողջ աշխատանքում, մեր առջև մեծ խնդիրներ են ծառացած: Մեր հասումների համոզիչ, կոնկրետ ցուցադրում, կենսածին նոր պրոբլեմների լուրջ վերլուծություն, մտքի ու խոսքի նորություն՝ ահա մեր ողջ պրոպագանդայի կատարելագործման ուղին, պրոպագանդա, որը միշտ պետք է լինի ճշմարտացի և ռեալիստական, ինչպես նաև հետաքրքրական, մատչելի, ուրեմն և՝ ավելի ներգործուն: **(Ծափահարություններ):**

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու համագործակցության հետագա զարգացումն զգալիորեն պայմանավորված է սոցիալիստական դեմոկրատիայի խորացմամբ: Հասարակական ու պետական գործերի կառավարմանը բոլոր ազգությունների աշխատավորների ավելի ու ավելի լայն մասնակցություն, ամենաանեղմ ձևով՝ այսպես կարելի է բնութագրել մեր քաղաքական կյանքի առաջատար միտումը: Եվ կուսակցությունն ամեն ինչ կանի, որ այն ամրանա ու ծավալվի:

Ամբողջ ասվածից բխում է, ընկերնե՛ր, որ հասուն սոցիալիզմի պայմաններում ազգերի փոխհարաբերությունների պրոբլեմները օրակարգից չեն հանվում: Դրանք պահանջում են առանձնահատուկ հոգածություն, կոմունիստական կուսակցության մշտական ուշադրություն: Կուսակցությունը պետք է խորամուխ լինի դրանց մեջ, նախատեսի դրանց լուծման ուղիները, զարգացած սոցիալիզմի պրակտիկայով ստեղծագործաբար հարստացնելով ազգային քաղաքականության լենինյան սկզբունքները: **(Ծափահարություններ):**

Մենք թե՛ եղած պրոբլեմների մասին, թե՛ չլուծված խնդիրների մասին ասում ենք համարձակորեն, որովհետև հաստատ գիտենք՝ այդ պրոբլեմները, այդ խնդիրները մեզ համար մատչելի են, մենք կարող ենք և պետք է դրանք լուծենք: **(Երկարատև ծափահարություններ):** Գործարարություն, և ոչ թե մեծադղորդ խոսքեր՝ ահա թե այսօր ինչ է հարկավոր, որպեսզի է՛լ ավելի ամուր լինի մեծ ու հզոր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):** Վստահ եմ, որ այսպես են մտածում այս դահլիճում բոլոր ներկա գտնվողները, մեր ողջ կուսակցությունը, սովետական ողջ ժողովուրդը: **(Բուռն ծափահարություններ):**



## 2. ՍՍՀՄ-Ը ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԳՈՐԾԻ ՊԱՏՎԱՐՆ Է

Ընկերնե՛ր: Այն նույն օրը, 1922 թվականի դեկտեմբերի 30-ին, երբ Մոսկվայում ընդունվեցին ՍՍՀՄ կազմավորման մասին դեկլարացիան ու պայմանագիրը, Լոզանի կոնֆերանսում Լենինի հանձնարարությամբ հայտարարվեց, որ, ղեկավարվելով ընդհանուր խաղաղության շահերով, սովետական հանրապետությունները «իրենց անհետաձգելի պարտքն են համարում... իրենց բոլոր ուժերով նպաստել ռասաների միջև քաղաքական հավասարության, ժողովուրդների ինքնորոշման և բոլոր պետությունների քաղաքական ու տնտեսական լիակատար անկախության իրավունքը հարգելու ռեժիմի հաստատմանը»:

Այսպես պարզ ու հասկանալի էր շարադրված այն՝ սկզբունքորեն նոր արտաքին քաղաքականության էությունը, որը հետևողականորեն սկսեց վարել հաղթանակած սոցիալիզմի՝ աշխարհում առաջին երկիրը: **(Ծափահարություններ):**

Նոր սոցիալիստական երկրների երևան գալու համեմատ սկսեց կազմավորվել նաև միջազգային հարաբերությունների միանգամայն նոր տիպ: Դրանց հիմքում դրված են գաղափարական միասնությունը, նպատակների ընդհանրությունը, ընկերական համագործակցությունը՝ երկրներից յուրաքանչյուրի շահերի, առանձնահատկությունների և ավանդույթների նկատմամբ լիակատար հարգանքով հանդերձ: Դրանք խարսխված են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքի վրա:

Զարգացնելով այդ հարաբերությունները՝ սոցիալիզմի երկրներն ընթանում էին չտրորված ուղիներով: Մարդկության անցյալի փորձը չէր կարող տալ այն հարցերի պատասխանները, որ առաջադրում էր կյանքը: Հասկանալի է, որ այստեղ ամեն ինչ միանգամից չէր ստացվում: Մանավանդ որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը կազմած երկրները շատ բաներում սկըսում էին տարբեր ելակետային դիրքերից՝ ինչպես իրենց ներքին զարգացման մակարդակի, նույնպես և այն արտաքին պայմանների առումով, որոնցում նրանք գտնվում էին:

Ոչ միշտ էր հաջողվում նաև ժամանակին հետևություններ անել բուն սոցիալիստական աշխարհում կատարված փոփոխություններից: Ասենք, միջազգային իրադրությունը նս ժամանակ չէր տալիս խորհրդածությունների՝ հարաբերությունների նոր ձևերը հարկ էր լինում փորձել, ինչպես ասում են, գործի ընթացքում: Կային պատրանքներ, որոնք հարկ էր լինում հաղթահարել, սխալներ, որոնց համար հարկ էր լինում հատուցել:

Բայց, գնահատելով մեր երկրների այսօրվա օրը, մենք կարող ենք գոհունակությամբ ասել. մենք շատ բան սովորեցինք, սոցիալիստական պետությունների ընկերակցությունը հզոր, առողջ օրգանիզմ է, որը հսկայական և բարերար դեր է խաղում արդի աշխարհում: Եղբայրական համագործակցության մեխանիզմն ընդգրկում է մեր երկրների կյանքի ամենատարբեր ոլորտները, սոցիալիստական շինարարության գործում մեր փոխգործողության տարբեր ուղղությունները: Մենք համատեղ ջանքերով գտնում ենք ընկերակցության մեջ մտնող երկրներից յուրաքանչյուրի շահերի հետ այդ ընկերակցության ընդհանուր շահերի զուգակցման ավելի ու ավելի հաջող ուղիներ: **(Երկարատև ծափահարություններ):**

Իհարկե, հիմա էլ մենք չենք կարող ասել, թե բոլոր դժվարություններն անցել են, թե իդեալին հասել ենք: Այն, ինչ հարմար էր երեկ, բարելավման կարիք ունի այսօր: Մեր ընկերակցության երկրների առջև բազմաթիվ լուրջ խնդիրներ են ծառացած: Դա մեր սոցիալիստական նվաճումների և արժեքների պաշտպանությունն է իմպերիալիզմի գրոհից, համատեղ պայքարը խաղաղության ամրապնդման և լարվածության թուլացման համար. դա քաղաքական համագործակցության հետագա կատարելագործումն է. դա, վերջապես, տնտեսական ինտեգրացման պրոցեսի նոր խթանումն է:

Այնպես որ առջևում գործեր շատ կան: Եվ ես կուզենայի հավաստիաց-

նել, որ Սովետական Միությունն իր կողմից հնարավոր առավելագույնը կանի համաշխարհային սոցիալիզմի ամրապնդման ու բարգավաճման համար: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Ազգային պրոբլեմի սոցիալիստական լուծման փորձը ուշադիր ուսումնասիրվում է գաղութային ճնշումից ազատագրված տասնյակ երկրներում: Սոցիալիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած մեր հաջողությունները, ֆաշիզմի նկատմամբ պատմական հաղթանակը, Սովետական Միության բոլոր ազգերի և ազգությունների ծաղկումը հզոր խթան եղան ժողովուրդների ազատագրական պայքարի համար:

Գաղութատիրության վերացման համար Սովետական Միության ակտիվ ու վճռական պայքարը, ժողովուրդների ազատագրության և իրավահավասարության գործի անշեղ պաշտպանությունը դյուրացնում են նրանց ազատության և առաջընթացի ուղին: Այս մասին լավ գիտեն Ասիայի և Աֆրիկայի, արաբական արևելքի և Լատինական Ամերիկայի ժողովուրդները:

Գաղութային ճնշումից ազատագրված երիտասարդ երկրներն այժմ ազգային լինելիության և սոցիալական զարգացման բարդ ժամանակաշրջան են ապրում: Նրանց ետ են պահում գաղութային անցյալից ժառանգված հետամնացությունը, ազգամիջյան երկպառակություններն ու բախումները: Դեռևս չամրապնդված երկրներին սպառնում են նեոգաղութարարների սարքած բազմաթիվ որոգայթները: Սակայն մենք վստահ ենք, որ իմպերիալիզմին ցույց տրվող վճռական դիմադրությունը, տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման մտածված ստրատեգիան, միմյանց շահերը և իրավունքները փոխադարձաբար հարգելը այդ երկրների ժողովուրդներին հնարավորություն կընձեռեն հաղթահարելու այն, ինչն անվանում են աճի դժվարություններ: Սովետական մարդիկ նրանց մեծ հաջողություններ են մաղթում անկախության ամրապնդման գործում, բարեկեցության և առաջընթացի համար մղվող պայքարում: **(Երկարատև ծափահարություններ):**

Մենք հարգանքով ենք վերաբերվում չմիանալու շարժմանը, որի խաղաղասիրական քաղաքականությունն օգտակար ավանդ է մուծում միջազգային կյանքի մեջ: Մենք վճռականորեն և անշեղորեն նրանց կողմն ենք, ովքեր դեռ այսօր էլ հարկադրված են պայքարել իրենց ժողովուրդների ազատության, անկախության, նրանց բուն գոյության համար, ովքեր հարկադրված են ետ մղել ագրեսորի գրոհը կամ ենթարկվել ագրեսիայի սպառնալիքին: Եվ մեր այդ դիրքավորումը անբաժանելի է աշխարհի կայուն խաղաղության այն պայքարից, որ հետևողականորեն և անդուլ կերպով մղում է Սովետական Միությունը: **(Ծափահարություններ):**

Վեց տասնամյակում արմատապես փոխվել է սովետական պետության դրությունը: Անչափ աճել են նրա հեղինակությունն ու ազդեցությունը: Խաղաղ համագործակցության խիտ հյուսվածքը Սովետական Միությանը շաղկապում է բոլոր մայրցամաքների երկրների հետ: Նրա ձայնը հեղինակավոր կերպով է հնչում միջազգային համաժողովներում:

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության հիմքը կազմող խաղաղ գոյակցության սկզբունքները միջազգային լայն ճանաչում են գտել, ներառվել են միջազգային տասնյակ փաստաթղթերի, այդ թվում նաև համաեվրոպական խորհրդակցության Հելսինկիի եզրափակիչ ակտի մեջ: ՍՍՀՄ առաջարկությունները դրվել են խաղաղության և անվտանգության ամրապնդման հարցերի վերաբերյալ ՄԱԿ-ի առավել խոշոր որոշումների հիմքում:

Բայց խաղաղության ամրապնդման ճանապարհի ամեն մի քայլը կատարվել ու կատարվում է ոչ դյուրին կերպով, պահանջելով լարված պայքար իմպերիալիստական «ճուռակների» դեմ: Այդ պայքարը հատկապես սրվել է այժմ, երբ Արևմուտքում ակտիվացել են առավել ռազմատենչ խմբավորումները, որոնց՝ սոցիալիզմի նկատմամբ ունեցած դասակարգային ատելությունը գերակշռում է ռեալության զգացմանը, երբեմն էլ պարզապես ողջամտությանը:

Իմպերիալիստները չեն հրաժարվում սոցիալիստական երկրների դեմ տնտեսական պատերազմ մղելու, նրանց ներքին գործերին միջամտելու դի-



տավորություններից՝ հուսալով խարխլել նրանց հասարակարգը, փորձում են ռազմական գերակշռության հասնել ՍՍՀՄ-ի, սոցիալիստական ընկերակցության բոլոր երկրների նկատմամբ:

Իհարկե, այդ պլանները ձախողման են դատապարտված: Ոչ ոք չի կարող ետ շրջել պատմական զարգացման ընթացքը: Սոցիալիզմը «խեղդելու» փորձերը ձախողվել են նույնիսկ այն ժամանակ, երբ սովետական պետությունը նոր էր միայն ոտքի կանգնում և աշխարհում միակ սոցիալիստական երկիրն էր: Առավել ևս դրանից ոչինչ դուրս չի գա այժմ: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Բայց չի կարելի չտեսնել, որ Վաշինգտոնի այժմյան քաղաքականությունը միջազգային իրադրությունը հասցրել է ծայրահեղ վտանգավոր սրման:

Աննախընթաց, բոլոր ժամանակների համար ռեկորդային մասշտաբներ են ընդունել ԱՄՆ-ի և նրա գլխավորած ՆԱՏՕ-ի բլոկի ռազմական պատրաստությունները: Վաշինգտոնի պաշտոնական ներկայացուցիչներից լսվում են դատողություններ միջուկային պատերազմի «սահմանափակ», «տևական» և այլ տարատեսակների հնարավորության վերաբերյալ: Մարդկանց փորձում են հանգստացնել, ընտելացնել դրա ընդունելիության մտքին:

Հիրավի, հարկավոր է մեր դարաշրջանի իրողությունների նկատմամբ կույր լինել՝ չտեսնելու համար, որ ինչ կերպ, որտեղ էլ բռնկելու լինի միջուկային մրրկայունը, այն անխուսափելիորեն դուրս կգա հսկողությունից, կառաջացնի համընդհանուր աղետ:

Այս հարցում մեր դիրքավորումը պարզ է. չի կարելի թույլ տալ ոչ փոքր, ոչ մեծ, ոչ սահմանափակ, ոչ համընդհանուր միջուկային պատերազմ: **(Երկարատև ծափահարություններ):** Կանգնեցնել նոր պատերազմի հրձիգներին— այժմ չկա ավելի կարևոր խնդիր: Այդ են պահանջում բոլոր ժողովուրդների շահերը: Ուստի, երբ Սովետական Միությունը միակողմանիորեն պարտավորություն ստանձնեց առաջինը չգործադրել միջուկային զենք, դա հավանությամբ ու հույսով ընդունվեց ամբողջ աշխարհում: Եթե մեր օրինակին հետևեն մյուս միջուկային տերությունները, դա իրոք ծանրակշիռ ավանդ կդառնա միջուկային պատերազմի կանխման գործում:

Ասում են, թե Արևմուտքը չի կարող ստանձնել այդպիսի պարտավորություն, քանի որ իբր Վարշավայի պայմանագիրը գերազանցություն ունի սովորական սպառազինությունների մեջ: Նախ և առաջ, դա այդպես չէ, այդ մասին վկայում են փաստերն ու թվերը: Բացի դրանից էլ, մենք, ինչպես հայտնի է, կողմ ենք այդպիսի սպառազինությունների սահմանափակման, կողմ ենք այդ հարցերում ևս խելացի, փոխադարձաբար ընդունելի լուծումներ որոնելուն: Մենք պատրաստ ենք պայմանավորվածության գալու նաև այն բանի շուրջը, որ կողմերը առաջինը չգործադրեն ո՛չ միայն միջուկային, այլև սովորական զենք:

Դեպի միջուկային պատերազմի սպառնալիքի ռեալ նվազեցում տանող գլխավոր ուղիներից մեկը, իհարկե, ստրատեգիական միջուկային սպառազինությունների սահմանափակման ու կրճատման շուրջը Սովետական Միության և Միացյալ Նահանգների միջև պայմանավորվածության հասնելն է: Դրա շուրջը վարվելիք բանակցություններին մենք մոտենում ենք ամենայն պատասխանատվությամբ, որոնում ենք ազնիվ համաձայնություն, որը չվնասի կողմերից ոչ մեկին և դրա հետ մեկտեղ հանգեցնի նրանց միջուկային զինանոցների կրճատման:

Առայժմ ամերիկյան կողմից մենք, ցավոք, այլ մոտեցում ենք տեսնում: Խոսքով կոչ անելով «արմատական կրճատումների», նա գործով նկատի ունի հիմնականում սովետական ստրատեգիական պոտենցիալի կրճատումը: Իսկ ԱՄՆ-ը կուզենար իր ձեռքերին ազատություն տալ ստրատեգիական սպառազինությունների մեծացման գործում: Անհեթեթություն է նույնիսկ մտածել, որ մենք կարող ենք համաձայնել դրան: **(Ծափահարություններ):** Այս ամենը, իհարկե, ձեռնտու կլիներ պենտագոնին, բայց ոչ մի կերպ չի կարող ընդունելի լինել Սովետական Միության համար, ինչպես նաև բոլոր նրանց համար, ով-

քեր շահագրգռված են խաղաղության պահպանմամբ և ամրապնդմամբ: **(Ծափահարություններ):**

Համեմատեցեք դրա հետ ՍՍՀՄ-ի առաջարկությունները: Դրանք ելնում են կողմերի հավասարության պահպանումից: Մենք պատրաստ ենք մեր ստրատեգիական սպառազինությունները կրճատել ավելի քան 25 տոկոսով: Համապատասխանաբար պետք է կրճատվեն նաև ԱՄՆ-ի սպառազինությունները, որպեսզի երկու պետությունների մոտ էլ ստրատեգիական զենք կրողների թիվը հավասար լինի: Մենք առաջարկում ենք նաև էապես նվազեցնել միջուկային լիցքերի քանակը և առավելագույնս սահմանափակել միջուկային զենքի կատարելագործումը:

Մեր առաջարկություններն ընդգրկում են ստրատեգիական զենքի բոլոր տեսակներն անխտիր, նախատեսում են դրա զինանոցների կրճատում հարյուրավոր միավորներով: Դրանք փակում են այդ բնագավառում սպառազինությունների հետագա մրցավազքի բոլոր հնարավոր ուղիները: Եվ դա միայն սկիզբն է. հիշյալ հիմքի վրա պայմանավորվածությունը ելակետ կդառնար այդպիսի զենքի քանակությունների առավել խոշոր փոխադարձ կրճատման համար, որի շուրջը կողմերը կարող էին պայմանավորվել՝ հաշվի առնելով աշխարհում տիրող ընդհանուր ստրատեգիական իրավիճակը:

Իսկ քանի դեռ բանակցություններ են վարվում, մենք առաջարկում ենք այն, ինչ թելադրվում է ողջամտությամբ՝ սառեցնել երկու կողմերի ստրատեգիական զինանոցները: ԱՄՆ-ի կառավարությունը դա չի ուզում, և ամենքին այժմ հասկանալի է, թե ինչու նա ձեռնամուխ է եղել միջուկային սպառազինությունների նոր նշանակալի մեծացման:

Այդ մեծացումն արդարացնելու Վաշինգտոնի փորձերը բացահայտորեն սնանկ են: ՍՍՀՄ-ից «ետ մնալու» վերաբերյալ պնդումները, որն ամերիկացիներն իբր պետք է լրացնեն, բացարձակ սուտ է, այդ մասին արդեն բազմիցս ասվել է: Եվ միանգամայն ծիծաղաշարժ են այն խոսակցությունները, թե իբր զենքի այնպիսի նոր սիստեմներ, ինչպիսին է, օրինակ, «MX» հրթիռը, կոչված են «օգնելու զինաթափման բանակցությունների հաջողությանը»:

Սպառազինությունների հետագա մեծացման ծրագրերը Սովետական Միությանը չեն կարող ստիպել դիմելու միակողմանի զիջումների: Ամերիկյան կողմի մարտահրավերին մենք ստիպված կլինենք պատասխանել զենքի մեր համապատասխան սիստեմների ծավալմամբ. «MX»-ին՝ մեր համանման հրթիռով. հեռավոր գործողության ամերիկյան թևավոր հրթիռին՝ հեռավոր գործողության մեր թևավոր հրթիռով, որը մեզ մոտ արդեն փորձարկվում է: **(Երկարատև ծափահարություններ):**

Սրանք ամենևին էլ սպառնալիքներ չեն: Մենք բոլորովին չենք ուզում իրադարձությունների այդպիսի ընթացք և ամեն ինչ անում ենք դրանից խուսափելու համար: Բայց հարկավոր է, որ թե՛ նրանք, ովքեր որոշում են ԱՄՆ-ի քաղաքականությունը, թե՛ լայն հասարակայնությունը, լավ պատկերացնեն ռեալ իրադրությունը: Այնպես որ, եթե Վաշինգտոնում իրոք հավատում են, թե զենքի նոր սիստեմներն ամերիկացիների համար «հաղթաթուղթ» կլինեն բանակցություններում, ապա թող իմանան, որ այդ «հաղթաթղթերը» կեղծ են: **(Երկարատև ծափահարություններ):**

Սովետական Միության նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու ձգտման վրա հիմնված քաղաքականությունը անհեռանկար է և ունակ է միայն ուժեղացնելու պատերազմի սպառնալիքը:

Այժմ այն մասին, ինչը ընդունված է անվանել վստահության միջոցառումներ: Մենք դրանց լրջորեն ենք վերաբերվում:

Արդիական զենքի գործողության արագության և դրա հզորության պայմաններում փոխադարձ կասկածների մթնոլորտը հատկապես վտանգավոր է: Նույնիսկ աննշան պատահականությունը, վրիպումը, տեխնիկական անսարքությունը կարող են ողբերգական հետևանքներ ունենալ: Ուստի կարևոր է մատները հեռացնել ձգանների վրայից, զենքը հուսալի պահպանակի դնել:



Այս ուղղությամբ որոշ բան արվում է, մասնավորապես Հելսինկիի պայմանավորվածությունների շրջանակներում: Սովետական Միությունը, ինչպես հայտնի է, առաջարկում է նաև ավելի լուրջ բնույթի, ավելի լայն ընդգրկում ունեցող միջոցառումներ: Դրա վերաբերյալ մեր առաջարկությունները գրառվում են միջուկային սպառազինությունների սահմանափակման և կրճատման հարցերի շուրջը Ժնևում վարվող սովետա-ամերիկյան բանակցությունների սեղանի վրա:

Մենք պատրաստ ենք նաև քննության առնելու այդ բնագավառում ուրիշների, այդ թվում ԱՄՆ-ի պրեզիդենտի վերջերս արած առաջարկությունները: Բայց միմիայն այդպիսի միջոցառումները, որոնց մասին նա ասաց, փոխադարձ կասկածների մթնոլորտը չեն ցրի, վստահությունը չեն վերականգնի: Անհրաժեշտ է ինչ-որ ավելի մեծ բան՝ իրադրության նորմալացում, թշնամանքի և ատելության քարոզից, միջուկային պատերազմի պրոպագանդայից հրաժարում: Եվ, իհարկե, վստահության, ամեն մի պատերազմի, այդ թվում պատահականորեն ծագելու ունակ պատերազմի, կանխման գլխավոր ուղին սպառազինությունների մրցավազքի դադարեցումն է, վերադարձը պետությունների հանգիստ, կոռեկտ հարաբերությունների, լարվածության թուլացման: **(Ծափահարություններ):**

Մենք դա կարևոր ենք համարում մոլորակի բոլոր շրջանների համար: Բայց հատկապես Եվրոպայի համար, որտեղ ամեն մի բռնկում կարող է հանգեցնել համաշխարհային պայթյունի:

Այժմ այդ մայրցամաքի վրա նոր վտանգ է կախվել՝ Արևմտյան Եվրոպայում մի քանի հարյուր ամերիկյան հրթիռների տեղաբաշխման հետևանքները: Պետք է ուղղակի ասեմ՝ դա խաղաղությունը ավելի խախուտ կդարձներ:

Մենք գտնում ենք, որ եվրոպական ժողովուրդների, ինչպես նաև ողջ աշխարհի ժողովուրդների գլխին կախված սպառնալիքը կարելի է կանխել: Եվրոպայի խաղաղությունը լիովին կարելի է փրկել և ամրապնդել, այն էլ առանց որևէ մեկի անվտանգությանը վնաս հասցնելու: Հենց դրա համար էլ մենք արդեն ավելի քան մեկ տարի ԱՄՆ-ի հետ Ժնևում բանակցություններ ենք վարում այն հարցի շուրջը, թե ինչպես սահմանափակենք ու կրճատենք միջուկային սպառազինությունները Եվրոպայի գոտում:

Սովետական Միությունը պատրաստ է շատ հեռուն գնալու: Ինչպես հայտնի է, մենք առաջարկեցինք համաձայնագիր Եվրոպայի նպատակակետերը խոցելու համար նախատեսված ինչպես միջին հեռավորության, այնպես էլ տակտիկական միջուկային զենքի բոլոր տեսակներից հրաժարվելու մասին: Բայց այս նախաձեռնությունը հանդիպեց լռության խուլ պատին: Ըստ երևույթին, այն ընդունել չեն ուզում, իսկ բացահայտորեն մերժելուց էլ վախենում են: Ուզում եմ կրկին հավաստել, որ մեր այդ առաջարկությունը մնում է ուժի մեջ: **(Ծափահարություններ):**

Մենք առաջարկեցինք նաև ուրիշ տարբերակ՝ որպեսզի ՍՍՀՄ-ը և ՆԱՏՕ-ի երկրները միջին հեռավորության իրենց սպառազինությունները կրճատեն ավելի քան երեք անգամ: ԱՄՆ-ը դրան առայժմ չի համաձայնում:

Իր կողմից նա արեց մի առաջարկություն, որն ասես ծաղրանքի համար անվանվեց «զրոյական» տարբերակ: Այն նախատեսում է վերացնել միջին հեռավորության սովետական բոլոր հրթիռները ո՛չ միայն ՍՍՀՄ եվրոպական, այլև ասիական մասում՝ պահպանելով և նույնիսկ մեծացնելով ՆԱՏՕ-ի հրթիռամիջուկային զինանոցը Եվրոպայում: Մի՞թե որևէ մեկը լրջորեն կարծում է, թե Սովետական Միությունը կարող է դրան համաձայնել: Այնպես է ստացվում, թե Վաշինգտոնը կուզենար վիժեցնել համաձայնությունը, որպեսզի, պատճառաբանելով բանակցությունների անհաջողությունը, այսպես թե այնպես իր հրթիռները տեղադրեր եվրոպական հողում:

Դա այդպես է թե ոչ՝ ցույց կտա ապագան: Իսկ մենք այսուհետ ևս կձրգ-

տենք համաձայնության հասնել երկու կողմերի համար արդարացի հիմքի վրա: Մենք պատրաստ ենք մասնավորապես համաձայնելու, որ Սովետական Միությունը Եվրոպայում պահպանի միայն այնքան հրթիռներ, որքան ունեն Անգլիան և Ֆրանսիան, և ոչ մի հատ ավելի: Դա նշանակում է, որ Սովետական Միությունը կկրճատեր հարյուրավոր հրթիռներ, այդ թվում Արևմուտքում ՍՍ—20 անվանվող մի քանի տասնյակ առավել արդիական հրթիռներ: Իսկ միջին հեռավորության հրթիռների՝ ՍՍՀՄ-ին և ԱՄՆ-ին վերաբերող հարցում դա կլիներ իրոք ազնիվ «զրոյական» տարբերակ: Իսկ եթե անգլիական ու ֆրանսիական հրթիռների թիվը հետագայում նվազեցվեր, ապա նույնքանով լրացուցիչ կկրճատվեր նաև սովետական հրթիռների թիվը:

Դրա հետ մեկտեղ պետք է պայմանավորվածություն ձեռք բերվի նաև, որպեսզի երկու կողմերը կրճատեն ու հավասար մակարդակների հասցնեն նաև միջին հեռավորության միջուկային զենք կրող այն ինքնաթիռների թիվը, որպիսիք ունեն տվյալ շրջանում ինչպես ՍՍՀՄ-ը, այնպես էլ ՆԱՏՕ-ի երկրները:

Մենք մեր պարտնյորներին կոչ ենք անում համաձայնելու այս պարզ ու արդարացի պայմանավորվածությանը, օգտվելու այս հնարավորությունից, քանի դեռ այն կա: Բայց թող ոչ ոք մոլորության մեջ չընկնի. մենք երբեք թույլ չենք տա, որ մեր անվտանգությունը, մեր դաշնակիցների անվտանգությունը սպառնալիքի տակ դրվեն: Հարկ կլիներ մտածել նաև այն մասին, թե Եվրոպայում միջին հեռավորության ամերիկյան նոր զենքի տեղաբաշխումը ինչպիսի անխուսափելի ծանր հետևանքներ կունենար առհասարակ միջուկային սպառազինությունների սահմանափակման հետագա բոլոր ջանքերի համար: Մի խոսքով, այժմ խոսքը ԱՄՆ-ինն է:

Վերջում այսպես կասեմ. մենք կողմնակից ենք մոլորակի բոլոր ժողովուրդների լայն, բեղմնավոր, թելադրանքից և ուրիշների գործերին միջամտելուց զերծ համագործակցության՝ հանուն նրանց փոխադարձ շահի և ի բարօրություն ողջ մարդկության: **(Երկարատև ծափահարություններ)**: Սովետական Միությունը իրենից կախված ամեն բան կանի, որպեսզի հանգիստ, խաղաղ ապագա ապահովի ներկա և գալիք սերունդների համար: Դա մեր քաղաքականության նպատակն է, և դրանից մենք չենք նահանջի: **(Երկարատև ծափահարություններ)**:

Ընկերնե՛ր: Մի հայացք գցելով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության անցած 60-ամյա ուղուն, մենք պարզորոշ տեսնում ենք, որ մեր բոլոր հասումներն ու հաղթանակներն անխզելիորեն կապված են կոմունիստների լենինյան կուսակցության գործունեության հետ: Կուսակցությունն է եղել ու մնում այն հզոր ստեղծագործական, մոբիլիզացնող ուժը, որն ապահովում է անընդհատ առաջընթացը հասարակական պրոգրեսի բոլոր ասպարեզներում:

Իր գաղափարախոսությամբ, իր կազմով ու կառուցվածքով մեր կուսակցությունը Սովետական Միության բոլոր ազգերի և ազգությունների միասնության, համախմբվածության կենդանի մարմնացումն է:

Իր քաղաքականությունը նպատակամղելով ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցմանը, կուսակցությունն ստեղծում է սոցիալական այնպիսի պայմաններ, որոնցում յուրաքանչյուր ազգի ծաղկումը, համակողմանի զարգացումը մեր ամբողջ եղբայրական միության վերելքի ու ծաղկման նախադրյալն են:

Երբ մենք ասում ենք՝ «Ժողովուրդն ու կուսակցությունը միասնական են», դա այն անառարկելի փաստի արձանագրումն է, որ կուսակցության՝ իր առջև դրված նպատակներն ու խնդիրները ճշտորեն են արտահայտում սովետական բոլոր մարդկանց ակնկալիքները, պահանջմունքները: Եվ մեր բազմամիլիոնանոց ժողովուրդն իր գործերով իրականացնում է կուսակցության քաղաքականությունը: Դրա ամենաակնհայտ վկայություններից են այն հաջողությունները, որոնցով բոլոր հանրապետությունները դիմավորում են ներկա հոբելյանը: **(Ծափահարություններ)**:



Թույլ տվեք, ընկերնե՛ր, խորին երախտագիտություն և շնորհակալություն հայտնել արտադրության միլիոնավոր առաջավորներին, որոնք կատարել ու գերակատարել են ՍՍՀ Միության 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: **(Երկարատև ծափահարություններ)**:

Թույլ տվեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի անունից սովետական բոլոր մարդկանց ջերմորեն շնորհավորել մեծ տոնի՝ մեր մեծ Միության ծննդյան օրվա առթիվ: **(Բուռն, երկարատև ծափահարություններ)**:

Կեցցե՛ կոմունիզմ կառուցող ժողովուրդների բարեկամությունը: **(Բուռն ծափահարություններ)**:

Կեցցե՛ պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը: **(Բուռն ծափահարություններ)**:

Կեցցե՛ խաղաղությունը ամբողջ աշխարհում: **(Բուռն ծափահարություններ)**:

Թո՛ղ բարգավաճի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: **(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում)**:

---

# ԱՇԽԱՐՀԻ ՊԱՌԼԱՄԵՆՏՆԵՐԻՆ, ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻՆ

Մենք, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ներկայացուցիչներս, որ հավաքվել ենք Մոսկվայում՝ հանդիսությամբ նշելու Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման վաթսուներորդ տարեդարձը, երկու հարյուր յոթանասուն միլիոն սովետական մարդկանց անունից երկրագնդի պառլամենտներին, կառավարություններին, քաղաքական կուսակցություններին և ժողովուրդներին ենք դիմում խաղաղության այս ուղերձով:

Այն, ինչի մասին դարերով երազել են մարդկության լավագույն մտածողները՝ ազգային թշնամանքի ու երկպառակության հաղթահարում, տարբեր ազգերի իսկական իրավահավասարություն ու բարեկամություն, մեր երկրում իրողություն է դարձել կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան քաղաքականության շնորհիվ, ազգային և սոցիալական ազատության սոցիալիստական սկզբունքների իրականացման, ճնշման ու շահագործման բոլոր ձևերի վերացման շնորհիվ:

Սոցիալիստական պետության մեջ մարդկանց միջև, ազգերի միջև եղած նոր հարաբերությունները որոշում են նաև ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը: Մեր իդեալը, մեր անփոփոխ նպատակը և մշտական հոգատարության առարկան ընդհանուր խաղաղությունն է, ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նշանավորեց պատմական նոր դարաշրջանի սկիզբը: Թոթափելով սոցիալական և ազգային ճնշումը, աշխատավոր մարդիկ ստեղծեցին սովետների երկիրը՝ մի պետություն, որը հաստատեց ժողովուրդների եղբայրական բարեկամություն և իրավահավասար հարաբերություններ, բոլոր ազգերի համար ապահովեց իսկական ազատություն, առաջադիմություն և բարգավաճում:

Ամուր, հուսալի, կայուն խաղաղություն՝ սա բոլոր մարդկանց, բոլոր ժողովուրդների, ամբողջ մարդկության առաջին և ամենահրամայական պահանջմունքն է:

Խաղաղության պահանջը հատկապես կարևոր նշանակություն է ստանում ներկա պայմաններում, երբ պետություններն ունեն մարդկային քաղաքակրթությունը, երկրագնդի վրա բուն կյանքը ոչնչացնելու ունակ զենք և երբ պատերազմի սպառնալիքը, որը 70-ական թվականներին հաջողվեց նկատելիորեն ետ վանել, կրկին սկսել է ուժեղանալ, իսկ միջազգային լարվածությունը շոշափելիորեն սաստկանում է:

Պետությունների բոլոր ջանքերը, կառավարությունների, կազմակերպված քաղաքական ուժերի, յուրաքանչյուր երկրի բոլոր քաղաքացիների ակտիվությունն այժմ պետք է նպատակամղվեն այն բանին, որ թույլ չտրվի միջուկային աղետ: Չկա և չի կարող լինել ավելի կարևոր հարց:

Մենք՝ սովետական ժողովրդի լիազոր ներկայացուցիչներս, հանդիսավոր կերպով հայտարարում ենք, որ Սովետական Միությունը, հետևելով խաղաղության և միջազգային համագործակցության լենինյան քաղաքականությանը, իրենից կախված ամեն ինչ կանի պատերազմը կանխելու համար:



Մենք հավաստում ենք, որ իր ստանձնած պարտավորությանը համապատասխան Սովետական Միությունը առաջինը չի գործադրի միջուկային զենք, և մեկ անգամ ևս դիմում ենք մյուս միջուկային տերություններին՝ կոչ անելով ստանձնել նույնպիսի պարտավորություն:

Մենք հայտարարում ենք, որ Սովետական Միությունը պատրաստ է Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ փոխադարձ հիմունքներով սառեցնել իր միջուկային զենքի զինանոցները:

Մենք հանդես ենք գալիս ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման ու կրճատման և Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ սովետա-ամերիկյան բանակցությունների արագ և արդյունավետ ավարտման օգտին, Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման վերաբերյալ պայմանավորվածության շուտափույթ ձեռքբերման օգտին:

Մենք առաջարկում ենք անհետաձգելիորեն պայմանավորվել միջուկային զենքի փորձարկումների լրիվ և համընդհանուր արգելման շուրջն այն հաշվով, որ այլևս չկարողանան ստեղծվել այդ զենքի նոր տեսակներ ու տիպեր:

Մենք հանդես ենք գալիս քիմիական զենքի արգելման ու ոչնչացման օգտին:

Մենք կոչ ենք անում շուտափույթ վերսկսել սպառազինությունների սահմանափակման և կրճատման մյուս բոլոր հարցերի շուրջը ընդհատված բանակցությունները:

Մենք դիմում ենք աշխարհի բոլոր պետությունների օրենսդիր մարմիններին ու կառավարություններին՝ կոչ անելով ակտիվորեն օժանդակել կոնֆլիկտային իրավիճակների և լարվածության օջախների կարգավորմանը բացառապես քաղաքական միջոցներով:

Մենք հանդես ենք գալիս Միավորված ազգերի կազմակերպության ամրապնդման օգտին, միջազգային խաղաղության և անվտանգության կայունացման գործում նրա դերի բարձրացման օգտին:

Հանուն այդ նպատակների Սովետական Միությունը պատրաստ է համագործակցելու աշխարհի բոլոր պետությունների հետ՝ անկախ նրանց քաղաքական և սոցիալական սիստեմներից:

Մեծ է այժմ աշխարհի բոլոր պետությունների վրա ընկած պատմական պատասխանատվությունը՝ պատասխանատվություն ներկայի և ապագայի համար:

Սովետական մարդիկ համոզված են, որ պետություններն ու ժողովուրդները, միավորելով իրենց ջանքերը, կկարողանան հաղթել պատերազմի սպառնալիքին, պահպանել և ամրապնդել աշխարհի խաղաղությունը, ապահովել մարդու ապրելու իրավունքը: Ջանքերի այդպիսի միավորման ենք մենք կոչում երկրագնդի պառլամենտներին, կառավարություններին, քաղաքական կուսակցություններին և ժողովուրդներին:

| | |
|---|---|
| ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏ | ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ |

«Աշխարհի պառլամենտներին, կառավարություններին, քաղաքական կուսակցություններին և ժողովուրդներին» դիմումը միաձայն ընդունվել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀ Միության Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում

1982 թվականի դեկտեմբերի 22-ին:

# ԼԵՆԻՆԻ ՆՇԱԾ ՈՒՂԻՈՎ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի՝ ՍՍՀ Միության կազմավորման 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում 1982 թվականի դեկտեմբերի 17-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Վեց տասնամյակ է մեզ բաժանում 1922 թվականի դեկտեմբերյան այն հիշարժան օրվանից, երբ մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում Սովետների համամիութենական առաջին համագումարը հանդիսավորապես հռչակեց աշխարհում առաջին միասնական բազմազգ սոցիալիստական պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ծնունդը։*

*Այդ պատմական ակտը բախտորոշ նշանակություն ունեցավ մեր երկրի ժողովուրդների համար։ Իրողություն դարձավ նրանց իսկական եղբայրական ընկերակցությունը։ Բացվեցին համատեղ ստեղծարար աշխատանքի և պայքարի լայն հնարավորություններ հանուն ամենավեհ նպատակի՝ կոմունիստական հասարակության կառուցման։*

*ՍՍՀ Միության ծնունդը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի, բոլշևիկների կուսակցության տիտանական գործունեության արգասիքն է, մեր անմահ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի գաղափարների կենդանի մարմնավորումը, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը։*

*Քսաներորդ դարի գլխավոր իրադարձությունից՝ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ՍՍՀՄ-ի ստեղծումը սովետների երկրի տարեգրության ամենաակնառու իրադարձությունն է։ Եվ որքան ժամանակը մեզ հեռացնում է Սովետական Միության ծննդյան պահից, այնքան մեծանում է այն բանի դարակազմիկ նշանակությունը, ինչ տեղի ունեցավ մեր երկրում վեց տասնամյակ առաջ։*

*Պատմությանը հայտնի են ոչ քիչ թվով խոշոր բազմազգ պետություններ, որոնք, ծնունդ առնելով կեղծիքի և բռնության հիմքի վրա, բզկտվելով դասակարգային և ազգամիջյան հակամարտությունից, անխուսափելիորեն տրոհվել են ու կործանվել։*

*Մեր երկրի պատմական փորձը ցույց տվեց, որ միայն կամովին, ազատ ժողովուրդների կամքով ստեղծված բազմազգ սոցիալիստական պետությունը կարող է պատմական հեռանկար ունենալ։*

*Դեռևս Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, բացահայտելով սոցիալական և ազգային հակամարտության հաղթահարման ու մարդկության զարգացման անհավասարաչափության ընդհանուր օրինաչափությունը, նշում էին, որ այնքանով, որքանով կոչնչացվի մի անհատի կողմից մյուսի շահագործումը, կոչնչացվի նաև մի ազգի կողմից մյուսի շահագործումը։ Ազգերի ներսում եղած դասակարգերի հակամարտության հետ մեկտեղ կվերանան նաև նրանց միջև եղած թշնամական հարաբերությունները։*

*Վլադիմիր Իլյիչ Լենինի մեծագույն ծառայությունն այն է, որ նա քսաներորդ դարի սկզբում նոր դարաշրջանի գիտական վերլուծության հիման վրա ստեղծագործաբար, համակողմանիորեն զարգացրեց գիտական կոմունիզմի հիմնադիրների հայացքները, բացահայտեց աշխարհի հեղափոխական վերակերտման մեջ ազգային հարցի տեղն ու դերը, ցույց տվեց, որ այդ հարցի լուծման, ազգային ճնշման վերացման և ժողովուրդների բարեկամության հաստատման մայրուղին հանուն քաղաքական իշխանության նվաճման, նոր, շահագործումից զերծ հասարակության ստեղծման համար պրոլետարիատի մղած դասակարգային պայքարն է։*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր գոյության սկզբից իսկ զինվեց ազգային հարցի վերաբերյալ լենինյան տեսությամբ ու ծրագրով։*

*Հայ ժողովուրդն իրավամբ հպարտանում է, որ նրա պանծալի զավակները՝ Լենինի մերձավորագույն աշակերտներ ու զինակիցներ, ժողովրդի երջանկության ու եղբայրության ջատագովներ Ստեփան Շահումյանը, Բոգդան Կնունյանցը, Սուրեն Սպանդարյանը, Ալեքսանդր Մյասնիկյանը և լենինյան գվարդիայի ուրիշ շատ ականավոր ներկայացուցիչներ, ծանրակշիռ ավանդ են ներդրել նաև ազգային հարցի մշակման գործում։*

*Վ. Ի. Լենինի բարձր գնահատականին արժանացան «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը և, հատկապես, ազգային ճիշտ հարցադրման նրա փորձը։ «Մեզ համար առանձնապես հետաքրքրական է Միության վերաբերմունքը դեպի ազգային հարցը...— նշել է Վլադիմիր Իլյիչը։— Դա, նախ, ոչ թե ազգային ինքնավարության, այլ քաղաքական և քաղաքացիական ազատության և լիակատար իրավահավասարության պահանջն է, դա, երկրորդ, պետության կազմի մեջ մտնող յուրաքանչյուր ազգության ինքնորոշման իրավունքի պահանջն է»։*

*Հանրահայտ են ազգային հարցի վերաբերյալ «մարքսիստական տեսության ծանր հրետանու»՝ Ստ Շահումյանի հիմնարար աշխատությունները։ «Ազգային հակասություններն ու հակադրությունները,— գրել է նա, պաշտպանելով լենինյան ուսմունքի հիմնարար սկզբունքները,— կազմում են սոցիալական այն խոշոր հակասության անհրաժեշտ բաղկացուցիչ մասը, որը գոյություն ունի արդի բուրժուական հասարակության մեջ և որը կոչվում է* կապիտալի և աշխատանքի պրոբլեմ: *Ազգային հակասության իսպառ վերացումը, այլ կերպ ասած, հարցի արմատական լուծումը անկարելի է, քանի դեռ գոյություն ունի կապիտալիստական արտադրությունը։ Այդ հակասությունը կարող է վերացվել միայն այն ժամանակ, երբ ժամանակակից սոցիալական հասարակարգը կտապալվի, երբ աշխատանքը կազատագրվի կապիտալի լծից»։*

*Ազգային հարցի վերաբերյալ կոմունիստական կուսակցության, Վ. Ի. Լենինի մշակած ծրագրային դրույթներն սկսեցին կենսագործվել սոցիալիստական հեղափոխության առաջին օրվանից։*

*Մեծ Հոկտեմբերը փշրեց սոցիալական և ազգային ճնշման շղթաները, պատմական ինքնուրույն ստեղծագործության կոչեց մեր երկրի բոլոր ժողովուրդներին։ Սովետական իշխանությունը ոչ միայն հռչակեց, այլև գործնականում իրականացրեց ու երաշխավորեց տարբեր ազգերի և ազգությունների աշխատավորների հավասարությունը, զարթոնքի լույսով լուսավորեց ծայրամասերի կյանքը, քաղաքական ու տնտեսական պայմաններ ստեղծեց անցյալում հետամնաց ժողովուրդների արագ զարգացման, նրանց սերտ միասնության ու բարեկամության համար։*

*Ազատություն ձեռք բերած ժողովուրդները, ինչպես կանխատեսում էր Լենինը, իրենք եկան դեպի եղբայրական դաշինքն ու համագործակցությունը։ Միասնական միութենական պետության մեջ սովետական հանրապետություն-*

ների միավորման լենինյան մեծ գաղափարը տիրապետեց միլիոնների մտքերին ու սրտերին, ջերմորեն պաշտպանվեց բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության, առաջավոր մտավորականության կողմից և վերածվեց հիրավի համաժողովրդական միավորիչ շարժման։

Անկարելի է առանց հուզմունքի կարդալ ժամանակի փաստաթղթերը, որոնք հաղորդում են այդ շարժման կենդանի շունչը, երկրի բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների հեղափոխական խանդավառությունն ու կրքոտ ձգտումը՝ միավորվելու միասնական միության մեջ հանուն Հոկտեմբերի գաղափարների, կոմունիզմի իդեալների հաղթանակի։

ՍՍՀՄ-ի կազմի մեջ սովետական մյուս հանրապետությունների հետ միավորվելու Սովետական Հայաստանի աշխատավորների ջերմ ձգտումը 1922 թվականի դեկտեմբերի 3-ին արտահայտեց Հայաստանի բանվորագյուղացիական և կարմիրբանակային դեպուտատների սովետների երկրորդ համագումարը։ Իր բանաձևում նա շեշտեց, թե եկել է ժամանակը՝ իրականացնելու այդ դաշինքը, որի անհրաժեշտությունը թելադրվում է մեր տնտեսական ու քաղաքական շինարարության պահանջներով, թե Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը համապատասխանում է Սովետական Հայաստանի բանվորների և գյուղացիների շահերին։

Սովետական հանրապետությունների աշխատավորները քաջ գիտակցում էին ՍՍՀ Միության ստեղծման բացառիկ նշանակությունը, նոր կյանքի կառուցման պատմական նպատակների իրականացման համար ստեղծարար հնարավորությունները միաձուլելու ողջ կարևորությունն ու անհրաժեշտությունը։ Միասնական միության մեջ միավորվելու անհրաժեշտությունը թելադրվում էր նախ և առաջ նրանով, որ երկրում ամենուրեք հին աշխարհը թողել էր ծայրահեղորեն խղճուկ ժառանգություն, ավերված տնտեսություն, քայքայում և սով, իսկ շատ ծայրամասեր առհասարակ գտնվում էին զարգացման ամենացածր մակարդակի վրա։ Համատեղ, միացյալ ջանքերով, միմյանց զորավիգ լինելով, եղբայրաբար օգնելով միայն կարելի կլիներ հաղթահարել դարավոր հետամնացությունը, վերականգնել ու զարգացնել արտադրաուժերը, ստեղծել միասնական, ընդհանուր պլանով կարգավորվող սոցիալիստական էկոնոմիկա, ապահովել աշխատավորների բարեկեցության, հասարակության հոգևոր կյանքի վերելքը և ընթանալ համակողմանի առաջընթացի ուղիով։

Ընդհանուր շահերն ու նպատակները նոր հասարակության տնտեսական հիմքի հետ մեկտեղ պահանջում էին ստեղծել ժողովուրդների հարաբերությունների սոցիալ-քաղաքական սկզբունքորեն նոր հիմք, հաստատել փոխադարձ հարգանքի և վստահության մթնոլորտ, ինտերնացիոնալ եղբայրության անսասան սկզբունքներ, որոնք, ի հակակշիռ ցարիզմի կողմից բորբոքվող ազգային երկպառակության ու թշնամանքի, սկսեցին ծնունդ առնել դեռևս այն համատեղ պայքարում, որ աշխատավորները մղում էին սոցիալական և ազգային լիակատար ազատագրության համար,. հեղափոխության բարիկադների վրա, նոր աշխարհի համար մղվող դասակարգային ճակատամարտերի քուրայում։

Օտարերկրյա ինտերվենտների և ներքին հակահեղափոխության կատաղի գրոհները հենց նոր ետ մղած սովետական հանրապետությունները պետք է հոգային նաև իրենց պաշտպանության մասին, ապահովեին ազգային անվտանգությունը։ Եվ որպեսզի կապիտալիստական շրջապատման պայմաններում պահպանեին իրենց գոյությունը, իրենց պաշտպանեին բանվորների և գյուղացիների իշխանությունը խեղդելու, մեր երկիրը գաղութ դարձնելու համաշխարհային իմպերիալիզմի հետագա փորձերից, հարկավոր էր ստեղծել հզոր բանակ, միատեղ ամրապնդել սովետների երկրի պաշտպանունակությունը, հուսալիորեն պահպանել նրա սահմանները։

Իրենց էությամբ խորապես հեղափոխական այդ բոլոր խնդիրները հաջողությամբ կարող էին լուծվել միայն և միայն միասնական միութենական բազմազգ սոցիալիստական պետության ստեղծումով։

Կոմունիստների կուսակցությունը փայլուն կերպով կատարեց պատմության կողմից իր վրա դրված նաև այս մեծ առաքելությունը։ Գլխավորելով



սովետական հանրապետությունների աշխատավորների միավորիչ շարժումը, նա իր գործունեության մեջ առաջնորդվում էր բազմազգ սոցիալիստական պետության մասին լենինյան ուսմունքով։

Մեր բազմազգ պետությունն ստեղծվում էր կուսակցության կողմից, ժողովուրդների կամքով բոլոր անկախ սովետական հանրապետությունների լիակատար իրավահավասարության սկզբունքներով միասնական միության մեջ կամովին միավորելու Լենինի առաջադրած դրույթների հիման վրա։ «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում,— գրել է Վլադիմիր Իլյիչը,— այնպիսի միություն, որը թույլ չտար մի ազգի որևէ բռնություն մյուսի նկատմամբ, այնպիսի միություն, որը հիմնված լիներ լիակատար վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցման, միանգամայն կամավոր համաձայնության վրա»։

Հեղափոխության մեծ առաջնորդը ո՛չ միայն խորապես հիմնավորեց սովետական հանրապետությունների ամենասերտ դաշինքի անհրաժեշտությունը, մշակեց ՍՍՀՄ կազմավորման սկզբունքները, այլև ինքն անմիջականորեն գլխավորեց նրա կառուցումը։ Չնայած հիվանդությանը, նա բացառիկ ուշադրություն էր նվիրում ՍՍՀՄ-ի ստեղծման գործին, հանդիսանում էր ժողովուրդների միավորիչ շարժման իսկական ոգեշնչողը, միտքն ու հոգին։ «Լինելով համոզված ինտերնացիոնալիստ, նա հետևողականորեն և անհաշտորեն պայքարում էր բոլոր աշխատավորների հեղափոխական համախմբման համար, ազգային պրոբլեմների լուծման գործում ամեն տեսակ խոտորումների դեմ,— ասված է ՍՍՀՄ վաթսունամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։— Լենինի քաղաքական և կազմակերպչական հանճարը, նրա վիթխարի աշխատանքը մի ամբողջության մեջ միավորեցին կոմունիստների մարտական կազմակերպության ուժը, պրոլետարիատի հեղափոխական եռանդը և ժողովուրդների՝ ազգային հավասարության և ազատության անհաղթահարելի ձգտումը»։

Կուսակցությունը, Լենինի գլխավորությամբ, հսկայական նախապատրաստական աշխատանք կատարեց ՍՍՀՄ կազմավորման նպատակով։

Ինտերնացիոնալիստական հիմունքներով համախմբելով բոլոր ազգերի աշխատավորներին՝ կուսակցությունը ժողովուրդների իրավահավասարության և սուվերենության սկզբունքի հետևողական կենսագործմամբ դնում էր բազմազգ սովետական պետության մեջ նրանց եղբայրական միավորման անսասան հիմքը։

«Որպես ինտերնացիոնալ համախմբման առաջատար ուժ հանդես եկավ Ռուսաստանի բանվոր դասակարգը,— նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։— Ինքնակալության և կապիտալիզմի դեմ մղած իր հեղափոխական պայքարի անձնուրաց հերոսությամբ, քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում ցուցաբերած արիությամբ և տոկունությամբ, անձնվեր աշխատանքով, հետևողական ինտերնացիոնալիզմով նա վաստակեց բոլոր ազգությունների աշխատավորների ճանաչումն ու վստահությունը։ Բանվոր դասակարգը աշխատավոր մասսաներին, ինչպես և կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, հասցրեց սովետական հասարակարգի։ Սովետական կազմակերպության գաղափարը հոգեհարազատ էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավոր մասսաներին, պարզ ու կիրառելի՝ նրանց կյանքի ամենաբազմազան պայմաններում»։

ՍՍՀՄ կազմավորման պատմական ակտին նախորդեց սովետական հանրապետությունների տնտեսական, ռազմական և դիվանագիտական դաշինքի հաստատումը Սովետական Ռուսաստանի հետ, որը, լինելով բնակչության թվով, տարածքով, տնտեսական պոտենցիալով ամենախոշոր բազմազգ սոցիալիստական հանրապետությունը, դարձավ ազատագրված ժողովուրդների ձգողության կենտրոնը։ Ռուսաստանի նկատմամբ այդ բնական ձգման մեջ իր վառ արտահայտությունն էր գտնում ժողովուրդների խոր հարգանքը ռուս մեծ ժողովրդի նկատմամբ, նրանց հսկայական վստահությունը ռուս հերոսական բանվոր դասակրագի նկատմամբ, որի հետ նրանք անցել էին սոցիալական և ազգային ազատագրության համատեղ պայքարի մեծ ճանապարհ։

Սովետական հանրապետությունների ժողովուրդները ձգտում էին ռուս

ժողովրդի հետ ավելի սերտ մերձեցման, եղբայրական դաշինքի ամրապնդման՝ իրենց ապագան, բարգավաճման ու առաջընթացի հեռանկարը մշտապես կապելով նոր Ռուսաստանի ապագայի, բարգավաճման և առաջընթացի հետ։ Այդ փոխադարձ կապը ընդգրկուն ու պատկերավոր արտահայտել է Ս. Մ. Կիրովը։ «Դժվար չէ խոստովանել,— ասում էր նա 1921 թվականին,— որ եթե սառնաշունչ ալիքներն սկսեն ողողել Ռուսաստանը, ապա բոլոր սովետական հանրապետություններում էլ տաք չի լինի»։

ՌՍՖՍՀ-ում՝ սովետական առաջին բազմազգ պետության մեջ, որը եղավ ՍՍՀ Միության նախատիպը, ազգային-պետական շինարարության պրակտիկան ու փորձը աշխատավորներին ցույց տվին ինտերնացիոնալ-դասակարգային միասնության սկզբունքներով համախմբվելու ճշտությունն ու պատմական անհրաժեշտությունը։

Ամրապնդելով աշխատավորների բազմազգ մասսաների կամքի արտահայտությունը, միավորիչ շարժման եզրափակիչ փուլում ՈւՍՍՀ-ի, ԱՍՖՍՀ-ի, ԲՍՍՀ-ի և ՌՍՖՍՀ-ի սովետների համագումարները միահամուռ որոշում ընդունեցին հանրապետությունների՝ ՍՍՀ Միության մեջ մտնելու մասին։ Դրանով իսկ այդ սուվերեն պետությունները, այդ թվում՝ Անդրֆեդերացիայի կազմում նաև Հայաստանը, դարձան ՍՍՀ Միության հիմնադիրները։ ՍՍՀՄ-ի ստեղծման պատմական ակտը սահմանադրականորեն ձևակերպեց դեկտեմբերի 30-ին կայացած Սովետների համամիութենական առաջին համագումարը, որն ընդունեց դեկլարացիա և պայմանագիր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման մասին։

Մարդկության պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց ազատ ժողովուրդների պետական միասնություն և եղբայրական ընկերակցություն, որոնց բոլոր ուժերը, եռանդը, տաղանդը, կամքը այդուհետ առհավետ միավորվեցին և միասնական ստեղծարար ուժ դարձան հասարակության հեղափոխական վերակառուցման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար։

Սովետական Միությունը դարձավ ավելի քան հարյուր ազգերի և ազգությունների եղբայրության ու բարգավաճման մեծ տուն, աշխարհին ցույց տալով ժողովուրդների ազատ զարգացման օրինակ։

Այսօր, Սովետական Միության 60-ամյա հոբելյանի բարձունքից, ավելի պարզորոշ են երևում սովետական ժողովուրդների փայլուն նվաճումները, ավելի խորապես են գիտակցվում բազմազգ սովետական պետության կազմավորման և հաջող զարգացման պատմական նշանակությունը ինչպես մեր երկրի, այնպես էլ ամբողջ աշխարհի ժողովուրդների համար։

ՍՍՀՄ կազմավորումից հետո անցած տասնամյակները համեմատաբար փոքր ժամանակամիջոց են, նույնիսկ ակնթարթ հազարամյակների ֆոնի վրա, բայց դրանք մեծագույն նշանակալիության տասնամյակներ են, դրանք աշխարհի նորացման համար ժողովուրդների հեղափոխական մաքառման, սովետական ժողովուրդների պատմական մեծ սխրանքի տասնամյակներ են, ժողովուրդներ, որոնք լենինյան կուսակցության ղեկավարությամբ իրականացրին սոցիալ-տնտեսական և կուլտուրական խորագույն վերափոխումներ, որոնք մեր հայրենիքը հասցրին սոցիալական պրոգրեսի բարձունքները։

Մեր հասարակության ամբողջ դեմքը փոխած այդ վերակերտումները ՍՄԿԿ-ի տնտեսական, սոցիալական և ազգային իմաստուն քաղաքականության իրականացման արգասիքն են։

ՍՍՀՄ ամբողջ տարածքում միասնական տնտեսական քաղաքականության կիրառումը, ստեղծարար հնարավորությունների միտեղումը, պլանային սոցիալիստական տնտեսության ստեղծումը, աշխատանքի հասարակական ռացիոնալ բաժանումը, բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործումը հնարավորություն ընձեռեցին անցյալում հետամնաց երկիրը դուրս բերելու աշխարհի՝ տնտեսական առումով ամենազարգացած պետությունների շարքը։ ՍՍՀՄ էկոնոմիկայի վիթխարի թռիչքն իր վառ արտահայտությունն է գտնում այն բանում, որ անցած վաթսուն տարում երկրի ազգային եկամուտն աճեց ավելի քան 170 անգամ, կապիտալ ներդրումների ծավալը՝ մոտ 560 անգամ, արդյունաբերական արտադրանքի ծավալը երկրում ամբողջությամբ վերցրած



մեծացել է գրեթե 540 անգամ, համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ դրա բաժինը 1922 թվականի մեկ տոկոսից աճել-հասել է ներկայիս 20 տոկոսին։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության՝ որպես միասնական կոմպլեքսի, ձևավորումը, որի սոցիալ-քաղաքական բազան մեր հասարակության բոլոր դասակարգերի ու խավերի, նրա բոլոր ազգերի և ազգությունների շահերի միասնությունն է, հանդիսացավ էկոնոմիկայի բուռն վերելքի, հանրային արտադրության զարգացման հաստատուն տեմպերի ապահովման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների յուրացման, ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի հուսալի նախադրյալներ ստեղծելու՝ երկրի առջև ծառացած համաշխարհային-պատմական խնդիրների լուծման կարևորագույն գործոններից մեկը։

Կուսակցության սոցիալական քաղաքականության իրականացումը ժողովրդական մասսաների առջև բացեց նյութական և հոգևոր կյանքի մակարդակի բարձրացման ամենալայն հնարավորություններ։ Այժմ նույնիսկ անհնար է ժողովրդի այսօրվա կենսամակարդակը համեմատել 60 տարի առաջ եղածի հետ, երբ երկիրը նոր-նոր սկսում էր ազատվել անցյալի ծանր սոցիալական խոցերից, երբ աշխատավորները, պատկերավոր ասած, ձեռքներին ունենալով միայն ազատություն, լենինյան մեծ գործի ճշմարտացիության ջերմ հավատով սկսեցին երկիրը դուրս բերել քայքայման ու սովի ճիրաններից, հեղափոխական հաստատուն քայլերով ընթանալով դեպի առաջադիմություն ու բարգավաճում։

Հիշենք պատմությունը, հիշենք, թե ինչպես հնգամյակից հնգամյակ աճում էին մեր սոցիալիստական պետության սոցիալական ծրագրերի մասշտաբները, ինչպես հանուն ժողովրդի բարօրության առաջադրվում ու լուծվում էին այնպիսի վիթխարի խնդիրներ, որպիսիք առաջներում չէին լուծվել ոչ մի երկրում, թե ինչպես հետևողականորեն բարձրացվում էր աշխատավորների կենսամակարդակը, բարելավվում էին նրանց կյանքի, աշխատանքի և հանգստի պայմանները, ինչպես կատարելագործվում էր սոցիալական ապահովության, բժշկական և կենցաղային սպասարկման համակարգը։ Մեր հասարակարգի հսկայական նվաճումն է, որ սովետական մարդիկ ունեն այնպիսի երաշխավորված իսկական դեմոկրատական, հիմնարար իրավունքներ, ինչպիսիք են աշխատանքի, կրթության, առողջության պահպանման, բնակարանի իրավունքը։

Ահա ասվածը հավաստող օրինակներ։

Ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվն աճել է 18,5 անգամ։ Եթե երկրում քաղաքային բնակարանային ֆոնդը 1922 թվականին կազմում էր 184 միլիոն քառակուսի մետր, ապա 1981 թվականին այն հասավ 2.270 միլիոն քառակուսի մետրի։ Գրադարանների թիվը 16,6 հազարից հասել է 132,8 հազարի։ 1922—23 ուսումնական տարում երկրի բուհերում սովորում էին 216,7 հազար ուսանողներ, իսկ 1981—82 ուսումնական տարում՝ 5.284,5 հազար։ 1922 թվականին կային 21,1 հազար բժիշկներ, իսկ 1981 թվականին՝ 1.033,9 հազար։

Հիրավի, այն, ինչ ձեռք է բերվեց սոցիալիզմի օրոք՝ սոցիալ-տնտեսական զարգացման, մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում, աննախադեպ է։

Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում լենինյան ինտերնացիոնալիստական ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը հնարավորություն ընձեռեց ո՛չ միայն լիովին վերացնելու ժողովուրդների՝ հին աշխարհից ժառանգած տնտեսական ու սոցիալ-կուլտուրական անհավասարությունը, այլև ապահովելու նրանց չտեսնված համակողմանի առաջընթացը, նրանց վերաճումը սոցիալիստական ծաղկուն ազգերի։ «Ազգային ծայրամաս» բուն հասկացությունը, որն առաջ նույնացվում էր դարավոր հետամնացության հետ, մեկընդմիշտ վերացել է մեր կյանքից։ Այժմ բոլոր հանրապետություններում ձեռք է բերվել ժողովրդական մասսաների կրթական և կուլտուրական բարձր մակարդակ, ձևավորվել են բանվորների, գիտատեխնիկական աշխատողների, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների

մասնագետների որակյալ կադրեր։ Աննախընթաց կերպով զարգացել են սովետների երկրի գիտությունը, տեխնիկան, գեղարվեստական մշակույթը, ժողովուրդների ողջ բազմապիսի հոգևոր կյանքը։

Հիրավի, պատմությունը չգիտե այնպիսի մի պետություն, որը շատ կարճ ժամանակաշրջանում այնքան շատ բան արած լիներ ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման համար, որպիսին է ՍՍՀՄ-ը՝ մեր բոլոր ժողովուրդների սոցիալիստական հայրենիքը։

Մարքսիզմ-լենինիզմի անսասան սկզբունքների հիման վրա ազգային հարցի լուծումը, փոխադարձ վստահության ու համագործակցության բարենպաստ հողի ստեղծումը, սոցիալիստական ազգային հարաբերությունների հաստատումը ամրապնդեցին երկրի բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների համախմբվածությունն ու բարեկամությունը, նրանց մեծ եղբայրությունը։ Մեր երկրի աշխատավորներին միավորում, հարազատացնում են միասնական ընտանիքի վեհ զգացումը, միասնական գաղափարախոսությունը, միասնական շահերն ու նպատակները, միասնական բարոյական հիմքերը, սովետական ապրելակերպը, համատեղ աշխատանքը և, բնականաբար, նրանց գործունեության տնտեսական ոլորտը՝ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսը, որը դարձել է ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության նյութական հիմքը։

Ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների կենսագործման կարևորագույն հանրագումարներից մեկը սովետական բազմազգ կուլտուրայի աննախընթաց ծաղկումն է, մեր հասարակության հոգևոր զարգացման վիթխարի արագացումը։ Այս ասպարեզում հասումներն այնքան փայլուն են, որ ներկա երիտասարդ սերնդի համար նույնիսկ դժվար է պատկերացնել, որ ընդամենը վեց տասնամյակ առաջ մեր երկրում տիրում էր անգրագիտություն, իսկ ավելի քան քառասուն ազգություններ առհասարակ գիր ու գրականություն չունեին։ Սոցիալիզմը կուլտուրայի նվաճումներով զինեց բազմազգ աշխատավոր մասսաներին, բոլոր սովետական մարդկանց համար մատչելի դարձրեց գիտելիքների աղբյուրները, լայն հնարավորություններ ստեղծեց գիտության և արվեստի բնագավառում մասսաների տաղանդների ու ձիրքերի դրսևորման, նրանց ստեղծագործության ծավալման համար։ Օրինաչափություն դարձան եղբայրական ժողովուրդների սոցիալիստական կուլտուրաների ծաղկումը, մերձեցումն ու փոխհարստացումը։

Սովետական բազմազգ կուլտուրան, որը ներկայացնում է բոլոր ժողովուրդների կողմից ստեղծվող հոգևոր և գեղագիտական արժեքների համաձուլվածքը, ծառայում է բոլոր աշխատավորներին, արտահայտում նրանց ընդհանուր իդեալները, ակտիվորեն նպաստում երկրի ազգերի և ազգությունների գաղափարաբարոյական համախմբմանը։

Սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության ամրապնդման, ազգային կուլտուրաների զարգացման և փոխհարստացման կարևոր գործոն է դարձել ռուսաց լեզուն, որը սովետական մարդիկ կամովին ընդունել են որպես ազգամիջյան հաղորդակցման լեզու։ Լենինի և Հոկտեմբերի լեզուն՝ ռուսաց լեզուն, դարձել է ժողովուրդների մեծ եղբայրության, առաջավոր գիտության և հեղափոխական հասարակական մտքի լեզու։ Նրա միջոցով ՍՍՀՄ ազգերն ու ազգություններն ավելի լավ են ճանաչում ու հաղորդակցվում միմյանց, ամրապնդում ինտերնացիոնալ կապերը, հոգեպես հարստանում, ավելի ակտիվորեն են առնչվում մարդկության կուլտուրական արժեքներին։ Ռուսերեն թարգմանությունների շնորհիվ եղբայրական գրականությունների՝ գեղարվեստական, գիտական և տեխնիկական ստեղծագործությունները դառնում են մեր բոլոր ժողովուրդների սեփականությունը։ Հզոր ու հարուստ ռուսաց լեզուն դարձել է սովետական ժողովուրդների երկրորդ մայրենի լեզուն։

Սովետական հասարակության սկզբունքային նվաճումն է նաև այն, որ մեծ Հոկտեմբերից և ՍՍՀՄ կազմավորումից հետո անցած ժամանակաշրջանում տեղի է ունեցել ժողովրդական մասսաների հասարակական գիտակցության հեղափոխական վերափոխումը սոցիալիստականի։ Ինտերնացիոնալիզմը



դարձել է սովետական մարդու՝ համազգային հպարտության հայրենասիրական մեծ զգացումով օժտված միլիոնավոր աշխատավորների համոզմունքը, վարքագծի նորմը, սոցիալիստական ապրելակերպի դիմորոշ գիծը։ Ժողովուրդների բարեկամության գաղափարները լիովին հաղթանակել են՝ դառնալով սովետական մարդկանց սոցիալիստական աշխարհայացքի անկապտելի մասը։

Սովետական բազմազգ պետության ողջ պատմությունը ցույց է տալիս, թե սովետական հասարակության ինչպիսի մեծագույն շարժիչ ուժ եղան ժողովուրդների ինտերնացիոնալ միասնությունը, բարեկամությունը, եղբայրական փոխօգնությունն ու համագործակցությունը։ Այն դարձել է երկրի նյութական և հոգևոր պոտենցիալի բազմապատկման, սովետական բոլոր հանրապետությունների արագ ու համակողմանի զարգացման, նոր կյանքի կառուցման բոլոր փուլերում մեր հաղթական առաջընթացի, մեր բոլոր պատմական հաղթանակների կարևորագույն գործոններից մեկը։

Այդ ուժի շնորհիվ իսկ այնպես հաջողությամբ և պատմական նման կարճ ժամկետներում մեր երկրում հիմնականում իրականացվեցին վիթխարի մասշտաբի արմատական հեղափոխական վերակերտումներ, լուծվեցին սոցիալիստական հեղափոխության ստեղծարար վեհ խնդիրներ, ինդուստրացման, կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության խնդիրները։

Սովետական ժողովուրդների բարոյաքաղաքական միասնության և բարեկամության հզոր ուժը հատկապես վառ դրսևորվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին, որը դարձավ ՍՍՀՄ-ի ամրության խստագույն քննությունը։ Պատերազմն ի դերև հանեց բազմազգ սոցիալիստական պետության փլուզման՝ համաշխարհային իմպերիալիզմի հույսերը։ Ընդհակառակը, այն ավելի ամրապնդեց ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, սովետական հանրապետությունների անխորտակելի միությունը։ Մեր եղբայր ժողովուրդները ուս-ուսի, մի մարդու պես կրծքով պաշտպան կանգնեցին հայրենիքին։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նրանք հերոսաբար պաշտպանեցին սովետների երկրի պատիվն ու անկախությունը, իրենց հեղափոխական նվաճումները, ցուցաբերեցին մասսայական հերոսություն և հաղթանակի աննկուն կամք, ջախջախեցին ֆաշիստական զավթիչներին, աշխարհի ժողովուրդներին փրկեցին ստրկացումից ու ոչնչացումից։

Կուսակցության գործին, հայրենիքին հայ ժողովրդի անսահման նվիրվածությունը, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի նրա վեհ ոգին, եղբայրության իդեալներին նրա հավատարմությունը վառ դրսևորվեցին մեր երկրի համար այդ դժնդակ տարիներին։ Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում խիզախորեն մարտնչում էին Հայաստանի հարյուր հազարավոր որդիներ ու դուստրեր։ Սոցիալիստական հայրենիքի զինվորները սխրանքի անմար էջեր գրեցին սովետական ժողովրդի հերոսական պայքարի տարեգրության մեջ։ Մեր ժողովրդի ավելի քան հարյուր անվեհեր զավակներ դարձան Սովետական Միության հերոսներ, ավելի քան 60-ը մտան սովետական զորապետների փառահեղ կոհորտայի մեջ։ Ժողովրդի հիշողության մեջ ապրում են և հավերժ կապրեն փառաբանված մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Հ. Ք. Բաղրամյանի, Սովետական Միության հերոսներ՝ նավատորմի ծովակալ Հ. Ս. Իսակովի, զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Հ. Խ. Բաբաջանյանի, ավիացիայի մարշալ Ս. Ա. Խուդյակովի, Սովետական Միության կրկնակի հերոս Ն. Ստեփանյանի, Սովետական Միության հերոսներ Հ. Ավետիսյանի, Ս. Օհանյանի, Ս. Բուռնազյանի, Ջ. Կարախանյանի և մեր ժողովրդի շատ ու շատ ուրիշ խիզախ որդիների՝ սովետական հերոսական բանակի գեներալների, սպաների, զինվորների անմահ սխրանքներն ու մարտական մեծագործությունները։

Ֆաշիզմի՝ մարդկության այդ երդվյալ թշնամու դեմ մղված պայքարին ի սպաս էին դրվել հանրապետության բոլոր ուժերն ու ռեսուրսները։ Նրանք, ովքեր մնացին թիկունքում՝ կանայք, ծերերը, դեռահասները, ապրում էին ռազմաճակատային լարված կյանքով, մարտնչող հայրենիքի տոկուն մարտիկներն էին, մարտիկներ հաստոցի մոտ, դաշտում, մարտիկներ, որոնք պատերազմի

առաջին օրվանից մինչև վերջին օրը բոլոր սովետական մարդկանց հետ մեկտեղ համառ, անձնվեր աշխատանքով կռում էին մեծ հաղթանակը։

Ժողովուրդների եղբայրական միասնության ու բարեկամության մեծ ուժը, որը դարձավ ֆաշիզմի նկատմամբ Սովետական Միության տարած պատմական հաղթանակի աղբյուրներից մեկը, ամբողջովին դրսևորվեց նաև հետպատերազմյան ժամանակաշրջանում, երբ երկիրը, չնայած մարդկային ու տնտեսական ծանր կորուստներին, անօրինակ հաջողությունների հասավ ավերված ժողովրդական տնտեսության վերածնման, նրա հետագա ամրապնդման ու զարգացման գործում։

Ժողովուրդների եղբայրության փառահեղ հաղթանակներն են խոպանի յուրացումը, նոր քաղաքների, ինդուստրիալ հսկաների, ջրանցքների ու ոռոգման սիստեմների, ԲԱՄ-ի կառուցումը, Սիբիրի, Հեռավոր Արևելքի և Հյուսիսի վառելիքաէներգետիկ և հումքային հարստությունների յուրացումը և մեր մեծ հայրենիքի անծայրածիր տարածություններում բազմազգ կոլեկտիվների շատ ու շատ հերոսական մեծագործություններ։

Արտադրական, գիտական և ստեղծագործական բազմազգ կոլեկտիվների աշխատանքային մեծագործությունները և մեր երկրում ամենուրեք դրանց կազմավորումն իսկ ուշագրավ երևույթ են սովետական հասարակության կյանքում։ Զոդված սոցիալիստական հայրենիքին անձնվիրաբար ծառայելու, կոմունիզմի կառուցման ընդհանուր նպատակներով, նրանք իրենց բեղմնավոր համատեղ աշխատանքով մարմնավորում են ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների միաձույլ համախմբվածությունը, ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության նրանց վեհ ոգին։

Մեր ժողովուրդների հերոսական համատեղ ջանքերի, նրանց հեղափոխական, վերակերտիչ գործունեության, նրանց բարեկամության ու ընկերակցության ստեղծարար ուժի արդյունքը հանդիսացավ ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը։

ՍՍՀՄ ազգերի և ազգությունների սոցիալիստական զարգացումն ու մերձեցումը պատմական բնականոն պրոցես է։ Մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորումը Հոկտեմբերի մեծ իդեալների կենսագործման, տնտեսական և ողջ հասարակական կյանքի հարաճուն ինտերնացիոնալացման, մեր երկրում սոցիալիստական ազգերի զարգացման արգասիք է, ազգեր, որոնց միջև հաստատվել են իսկական իրավահավասարության, եղբայրական փոխօգնության և համագործակցության, հարգանքի և փոխադարձ վստահության հարաբերություններ։

Տնտեսական և ողջ հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսների խորացումը օբյեկտիվորեն պայմանավորված է սովետական հասարակարգի բուն էությամբ, սոցիալիստական իրականությամբ։ Հակառակ մեր գաղափարական հակառակորդների պնդումներին, սովետական հասարակության մեջ ազգային հարաբերությունների էությունը խեղաթյուրելու բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսների անպտուղ փորձերին, ինտերնացիոնալիստականի և ազգայինի զուգակցումը, ինտերնացիոնալացման խորացումը բնավ չեն տանում դեպի ազգային ինքնատիպության վերացում։ Ընդհակառակն, սոցիալիզմը բոլոր պայմաններն ստեղծել է յուրաքանչյուր ազգի և ազգության նյութական ու հոգևոր ուժերի բուռն ծաղկման համար։

Ընկերնե՛ր։

Հայ ժողովրդի սոցիալիստական կենսագրությունը փայլուն օրինակն է այն բանի, թե սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման ինչպիսի բարձունքների են հասել սովետական երկրի ժողովուրդները լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ, թե նրանց ճակատագրերում ինչպիսի բացառիկ պրոգրեսիվ դեր է խաղացել ՍՍՀՄ կազմավորումը։

Այսօրվա ծաղկուն Սովետական Հայաստանը՝ Հոկտեմբերի, սոցիալիզմի զավակը, բոլոր տեսակետներից բարձր զարգացած սոցիալիստական հանրապետություն է, որի ժողովուրդը, կուսակցության ղեկավարությամբ, ժողովուրդների լենինյան եղբայրության հզոր թևերով հերոսական վերելք է կատարել դեպի ժամանակակից առաջընթացի բարձունքները։



Սովետական միասնական ընտանիքը մեր ժողովրդին տվել է այն, ինչը նա չի տեսել և չի զգացել իր ողջ բազմադարյան պատմության, ազգային գոյատևման ամենահամառ պայքարի, հայոց հողի վրայով դժոխային մրրիկների պես անցած օտարերկրյա ստրկացնողների ճնշման, կողոպուտների և բռնության դեմ մղած պայքարի ընթացքում։

Սովետական ժողովուրդների եղբայրությունը նրան տվեց վստահություն, տվեց իսկական բարեկամության բերկրանքը, միշտ կողքին կանգնած հավատարիմ բարեկամների հզոր աջակցության բերկրանքը, երջանկության ու բարգավաճման, մեծ տան համատեղ կառուցման բերկրանքը։ Մեր ժողովուրդը երբեք չի մոռանա մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի հայրական հոգատարությունը, ուշադրությունը, նրա կոնկրետ օգնությունը երիտասարդ Սովետական Հայաստանին, որը հառնում էր մոխիրներից ու փլատակներից և կանգնում սոցիալական զարգացման մայրուղու վրա։ Չի մոռանա այն, թե ինչպես Սովետական Ռուսաստանը, մյուս հանրապետությունները, որոնք իրենք էլ այդ ժամանակաշրջանում անլուր դժվարություններ էին կրում, եղբայրաբար կիսում էին իրենց հացը, այն ամենը, ինչ ունեին, մեծ և անշահախնդիր օգնություն ցույց տալիս նրան՝ դարմանելու դարավոր վերքերը, ստեղծելու սոցիալիստական նոր տնտեսություն, արկանելու նոր կյանքի հիմքերը, կերպարանափոխելու հայրենի հողը։

Ավագ սերնդի մարդիկ, հենց պատմությունն ինքն էլ, հիշում են, որ մեր հանրապետությունը շատ բաներ փաստորեն զրոյից է սկսել։ Բայց մենք ունեինք ամենագլխավորը՝ կոմունիստների կուսակցության կողմից առաջնորդվող աշխատավոր մասսաների ազատագրված ստեղծարար կամքն ու եռանդը, հեղափոխական ստեղծագործությունը։

Եվ ահա այդ հզոր հեղափոխական պոտենցիալը, զուգորդված ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության մեծ ուժի հետ, արարեց այն, ինչը հետագայում շատերը ոչ առանց հիմքի անվանեցին հրաշք։ Միս ու արյուն ստացան այն տարիներին աներևակայելի թվացող հանդուգն պլաններն ու հղացումները։

Այն ժամանակ՝ 1922 թվականին, երբ արտադրության մեջ դեռ կրակը փուքսով էին թեժացնում, իրոք, դժվար էր երևակայություն չհամարել, եթե որևէ մեկը համարձակվեր կանխագուշակել, որ ընդամենը վեց տասնամյակ հետո մեր հանրապետությունը կթողարկի ավելի քան հազար անգամ շատ արդյունաբերական արտադրանք։

Հիրավի, մի՞թե վերակերտման հրաշք չէ, երբ այն երկրամասը, ուր առաջ ներմուծվում էր ամեն ինչ՝ ընդհուպ մինչև ասեղը, այսոր լայնորեն մասնակցում է երկրի արտահանման մատակարարումներին՝ աշխարհի տասնյակ երկրներ, այդ թվում զարգացած կապիտալիստական երկրներ առաքելով ամենաարդիական արդյունաբերական արտադրանքի մի շարք տեսակներ։

Մի՞թե զարմանալի վերակերտման հրաշք չէ, երբ այն հողում, որտեղ գյուղացին մշտապես տառապում էր անբերրիությունից ու սովից, այժմ հորդում է կյանքը, իրականացվել են հողի ոռոգման, պտղատու և խաղողի այգիների տարածությունների ընդարձակման խոշոր մասշտաբի աշխատանքներ, իրականացվում են ժամանակակից ինտենսիվ հողագործությունն ու անասնապահությունը, որը հնարավորություն տվեց տասն անգամ ավելացնելու գյուղատնտեսության համախառն արտադրանքը։

Այն ժամանակ միանգամայն երևակայական կհամարեին ժողովրդական կրթության, գիտության և կուլտուրայի այսօրվա մակարդակը, այն, որ այսօր մեզ մոտ գործում են ավելի քան 100 գիտահետազոտական ինստիտուտներ և հիմնարկություններ՝ գիտական աշխատողների կադրերի 20-հազարանոց բանակով։ Այն երկիրը, որտեղ պատմական հանգամանքների բերումով երկար ժամանակով ընդհատվել էր գիտական կյանքի թելը, այժմ հռչակված է իր ականավոր գիտնականների աշխատություններով և հայտնագործություններով, ժամանակակից գիտության ու տեխնիկայի շատ մարզերի զարգացման գործում նրանց ներդրած մեծ ավանդով։ Այսօր հանրապետությունում գործում են ավելի քան 1.500 հանրակրթական դպրոց, 100 պրոֆտեխնիկական ուսումնա-

րան, 13 բուհ և 66 տեխնիկում, որոնցում ավելի շատ երեխաներ, պատանիներ ու աղջիկներ են սովորում, քան հանրապետության ողջ բնակչությունն էր ՍՍՀՄ կազմավորման տարում։ Իսկ քաղաքային բնակարանային ֆոնդը 900 հազար քառակուսի մետրից հասել է 27 միլիոնի։

Իսկ մեր Երևանի ծաղկո՞ւմը։ Ո՞վ կարող էր 1922 թվականին պատկերացնել, որ նա մի փոշոտ ծայրամասային գավառաքաղաքից այդպիսի տիեզերական արագությամբ կդառնա երկրի խոշորագույն ինդուստրիալ, գիտական և կուլտուրական կենտրոններից մեկը, կդառնա անկրկնելի գեղեցկությամբ սոցիալիստական բարգավաճ քաղաք, հայկական մայրաքաղաքներից ամենաերջանիկն ու գեղեցիկը։ Անցած բոլոր վաթսուն տարիներին Երևանն ապրել ու պայքարել է որպես իսկական աշխատավոր քաղաք, շինարար քաղաք, մարտիկ քաղաք, ակնառու դեր է խաղացել Հայաստանի վերածննդի, համակողմանի պրոգրեսի բարձունքներին՝ տնտեսական և կուլտուրական շինարարության վիթխարի հաջողություններին հասնելու գործում։ Երևանի սխրանքը, թերևս այսպես կոչենք նրա պատմական մեծագործությունները, ըստ արժանվույն պսակվեց հայրենիքի բարձրագույն պարգևով՝ Լենինի շքանշանով։

Այսօր տոնելով ՍՍՀ Միության փառապանծ 60-ամյակը՝ մենք երախտագիտության խոր զգացումով ենք նշում մեր հանրապետության աշխատավորների բոլոր սերունդների, բոլոր այն իսկական հայրենասեր ինտերնացիոնալիստների հերոսական գործերն ու հիանալի իրագործումները, որոնք մասնակցել են Սովետական մեծ Միության ստեղծմանն ու կառուցմանը, իրենց ջանքերը, եռանդը, գիտելիքները նվիրաբերել են մեր բազմազգ հայրենիքի ամրապնդմանը, ովքեր պաշտպանել են նրա ազատությունը, պատիվն ու անկախությունը, ովքեր անդադրում պայքարել և պայքարում են հանուն նրա նյութական ու հոգևոր հարստությունների բազմապատկման։

Բարեկամության և եղբայրության մեծ տոնի առթիվ մենք ջերմորեն շնորհավորում ենք բանվոր դասակարգին, կոլտնտեսային դաշտերի աշխատողներին, մտավորականությանը, բոլոր աշխատավորներին, սովետական բանակի քաջարի մարտիկներին, մեր հանրապետության ողջ ժողովրդին և նրանց բոլորին ցանկանում երջանկություն, բարօրություն, հաջողություններ ստեղծարար և մարտական աշխատանքում, հանուն մեր սիրելի սովետական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման։

Ընկերնե՛ր։

Հայաստանի սոցիալիստական նորոգ կյանքը մեր ժողովրդի հերոսական ստեղծարար աշխատանքի և սովետական ժողովուրդների գործնական բարեկամության և օգնության հանրագումարն է։ Որքա՜ն իրավացի էր Գերցենը՝ գոչելով «Բարեկամությունը գործնական է. դա բարեկամության միակ տեսակն է, որ ես հասկանում եմ»։ Մեր բարեկամները ցույց էին տալիս անգնահատելի կոնկրետ օգնություն, գտնվում էին հանրապետության աշխատավորների կողքին, նրանց հետ անձնվիրաբար աշխատում էին թե՛ այն ժամանակ, երբ կառուցվում էր Հայաստանի թեթև արդյունաբերության առաջնեկը՝ Լենտեքստիլը, կականգնեցվում էին նրա ինդուստրիայի հսկաները, թե՛ այն ժամանակ, երբ կառուցվում էր Ձորագէսը՝ առաջին շրջանային հիդրոկայանը և ստեղծվում Անդրկովկասի առաջին ատոմային էլեկտրակայանը՝ Հայաստանի ԱԷԿ-ը, թե՛ այն ժամանակ, երբ գցվում էր նշանավոր Շիրկանալը, յուրացվում էին դարերով խոպան հողերը և լեռների ընդերքում փորվում էր Արփա—Սևան եզակի թունելը, թե՛ այն ժամանակ, երբ կադրեր էին պատրաստվում և զարգանում էր գիտությունը։

Հիդրոտեխնիկական վիթխարի կառուցվածքի՝ Արփա—Սևան թունելի շինարարության հերոսական էպոպեան, մի կառուցվածք, որը մատչելի կարող է լինել միայն հզոր տերությանը, Սովետական Հայաստանի տարեգրության մեջ կմնա որպես գործնական բարեկամության և հիրավի եղբայրական օգնության հուզիչ օրինակ։ Համաշխարհային թունելաշինության մեջ նմանը չունեցող այդ ստորերկրյա ջրանցքի կառուցմանն օգնում էր ամբողջ երկիրը։ Մեզ մոտ հորատողների բրիգադներ էին գալիս Ռուսաստանից, Ուկրաինայից, Վրաստանից, Ադրբեջանից, Ղազախստանից և այլ հանրապետություններից։ Օգնության



ձեռք մեկնեցին երկրի գիտական բազմաթիվ հիմնարկությունների մասնագետները։ Դժվար է նույնիսկ հաշվել, թե քանի կոլեկտիվ ու կազմակերպություն մեզ օգնեց իրագործելու այդ մեծ կառույցը՝ սովետական ժողովուրդների եղբայրության ու բարեկամության վեհասքանչ հուշարձանը։

Մեծ է սովետական գիտության գլխավոր շտաբի՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, ռուս հիանալի գիտնականների դերը Սովետական Հայաստանի գիտության կազմավորման ու զարգացման գործում։ Հայ գիտնականների շատ սերունդների ներկայացուցիչներ մեծ գիտության իրենց ուղին սկսել են Մոսկվայի, Լենինգրադի և այլ քաղաքների գիտական հիմնարկություններում։ Հանրապետության գիտական շատ հիմնարկություններ ծնունդ են առել ՍՍՀՄ ԳԱ և երկրի առաջատար գիտահետազոտական կենտրոնների անմիջական օգնությամբ։

Եղբայրության օրենքով, սրտի թելադրանքով մեր հանրապետության ներկայացուցիչներն այսօր անձնվիրաբար աշխատում են երկրի շատ անկյուններում, արժանի ներդրում կատարում ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտու զարգացման, Տյումենի հարստությունների յուրացման գործում, մասնակցում են ԲԱՄ-ի, Ատոմմաշի, Կամազի, Նադեժդինսկի մետալուրգիական կոմբինատի և այլ օբյեկտների կառուցմանը։

Կարելի է վերցնել արտադրական, հասարակական-քաղաքական, գիտական, ստեղծագործական աշխատանքի ցանկացած ոլորտը, և մենք կգտնենք իսկական եղբայրական համագործակցության բազմաթիվ այլ վառ փաստեր։ Ամենանշանակալին այն է, որ բարեկամությունն ու փոխօգնությունը, որոնց պտուղների մասին մենք այսօր խոսում ենք ուրախությամբ ու հիացմունքով, այժմ գործում է առավել մեծ թափով, դարձել է սովետական հասարակության կյանքի ամենաբնորոշ հատկանիշը։

Սովետական ժողովուրդների բարեկամության, նրանց եղբայրական փոխօգնության հետ մենք կապում ենք նաև տնտեսական ու կուլտուրական շինարարության մեր այսօրվա ակնառու հաջողությունները, այն որակական տեղաշարժերը, որոնք կատարվել են ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Դրա հետ ենք կապում համամիութենական սոցիալիստական մրցության մեջ նվաճած մեր հաղթական կարմիր դրոշները, ի բարօրություն հայրենիքի, հայրենանվեր աշխատանքում կատարած մեր բոլոր մեծագործությունները։

Այո՛, մեծ են Սովետական Սոցիալիստական Հայաստանի նվաճումները, պայծառ է նրա կերպարանքը։ Մեծ երջանկություն ու խաղաղ աշխատանքի բերկրանքն են մտել սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում գտնվող մեր հայոց օջախը։ Իսկ չէ որ ոչ շատ վաղուց, վաթսուն տարուց մի փոքր ավելի առաջ, հայ ժողովրդի գլխին կախված էր ֆիզիկական բնաջնջման սպառնալիքի չարագուշակ դամոկլյան սուրը և ասես ինքը՝ արդարությունը, երես էր դարձրել նրանից, ու թվում էր, թե ահա ուր որ է ընդմիշտ կանգ կառնի նրա կենաց ժամացույցը։ Բայց Հոկտեմբերի շնորհիվ, սովետական ժողովուրդների հզոր ընտանիքում նա ձեռք բերեց նոր բախտ, նրանց հետ միասին ըստ նոր ժամանակի՝ աշխարհի հեղափոխական նորացման լենինյան ժամանակի, ապրելու և աշխատելու երջանկություն։

Մեր հարյուրամյակի սկզբին բրիտանական գաղութատիրության սյուներից մեկը՝ Ջ. Չեմբեռլենը հայտարարեց. «Փոքր ազգերի օրը վաղուց անցել է։ Եկել է կայսրությունների օրը»։ Դա ոչ թե պարզապես ասույթ էր, դա լկտի ցինիզմի, մարդատյացության փիլիսոփայության, բազում ժողովուրդների ողբերգությունների պատճառ դարձած իմպերիալիստների քաղաքականության ու պրակտիկայի արտահայտությունն էր։ Արդյո՞ք խավարամոլության այդ գաղափարախոսությունը, պարոնայք իմպերիալիստների բացահայտ կողոպուտի և բռնության այդ քաղաքականությունը չհանգեցրեց այն բանին, որ 1915 թվականին անտարբեր ու հայեցող պաշտոնական Եվրոպայի աչքի առաջ կատարվեց մի ամբողջ ժողովրդի ցեղասպանությունը։ Արդյո՞ք նման գաղափարախոսությունն ու քաղաքականությունը չեն այսօր հնարավորություն տալիս ագրեսորներին ցեղասպանության ենթարկելու Պաղեստինի խաղաղասեր արաբ ժո-

ղովրդին, տառապանքների հորձանուտը նետելու Լիբանանը, ուրիշ շատ երկրներ։

Ո՛չ, փոքր ժողովուրդների ժամանակը չի անցել, ճիշտ հակառակը, Հոկտեմբերը, սոցիալիզմը, Լենինի գաղափարները հասցրին այն բանին, որ կայսրությունների օրը ընդմիշտ անցավ, անցավ գաղութային անպատիժ զավթումների, կողոպուտների և բռնության ժամանակը։ Մեր մեծ երկիրն այսօր ամբողջ աշխարհին ցույց է տալիս մեծ ու փոքր ազգերի ազատ զարգացման և իրավահավասար եղբայրական համագործակցության օրինակ, միասնական նպատակներով ապրող ժողովուրդների առաջընթացի ու ծաղկման ուղին։

Իր բոլոր պատմական հաղթանակներով ու նվաճումներով հայ ժողովուրդը պարտական է լենինյան մեծ կուսակցությանը։ Կոմունիստների կուսակցությունն է դաստիարակել նոր Հայաստան կառուցողների սերունդներին, իսկական հայրենասեր ինտերնացիոնալիստների, նա է ոգեշնչել նրանց, տարել և տանում է կոմունիստական շինարարության ուղիով։ Եվ այս հանդիսավոր օրը, կրկին ու կրկին խորհելով իր պատմական նվաճումների ակունքների մասին, երախտապարտ հայ ժողովուրդը խորին երախտագիտության և անմնացորդ սիրո իր ամենաջերմ, սրտի խորքից բխող խոսքերն է ուղղում կոմունիստների հերոսական կուսակցությանը, որի ղեկավարությամբ եղբայր ժողովուրդների հետ միասին նա կոփում է հայրենիքի մեծ երջանկությունը։

Մեր ժողովուրդը իր ամենաջերմ շնորհակալությունն ու երախտագիտությունն է հայտնում ռուս մեծ ժողովրդին, ինտերնացիոնալիստ ժողովրդին, մեծ ու շռայլ հոգու տեր ժողովրդին, որը վճռական աջակցություն և օգնություն է ցույց տվել մեզ թե՛ մեր պատմության ամենածանր պահերին, թե՛ մեր վերածննդի, թե՛ տնտեսական, սոցիալական և կուլտուրական պրոգրեսի բարձունքների համար մղված ոգեշունչ պայքարի օրերին։ Ռուս ժողովրդի հետ ունեցած անխզելի, դարերի խորքից եկող բարեկամությունը եղել է, է և առհավետ կլինի մեր սրբություն սրբոցը, մեր բարոյաքաղաքական, սոցիալական մեծ հասումը, ազատության համար, շահագործողների ճնշումից ազատվելու համար, սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար համատեղ պայքարի ճանապարհին ձեռք բերած գերագույն հոգևոր արժույթը։

Միասնության ու բարեկամության մեծ ու պայծառ տոնի այս հանդիսավոր ժամին մեր ժողովուրդն իր ջերմ շնորհակալությունն ու երախտագիտությունն է հայտնում իր բոլոր եղբայրներին՝ սովետական բոլոր ժողովուրդներին նրանց հսկայական օգնության համար, հայկական հողում կատարված բոլոր մեծագործություններին նրանց եռանդուն մասնակցության համար։ Նրանց հղում է իր բոցաշունչ ինտերնացիոնալ ողջույնը, կոմունիստական շինարարության նոր փառավոր հաղթանակների ամենաջերմ մաղթանքները։

Ընկերնե՛ր։

Մեր հայրենիքը վստահորեն առաջ է ընթանում Լենինի ուղիով, Հոկտեմբերի ուղիով, հենվելով իր վիթխարի ստեղծարար հզորության, նոր աշխարհը կերտողների մեր մեծ հասարակության սոցիալ-քաղաքական, տնտեսական ու հոգևոր ամուր հիմքի վրա։

Զարգացած սոցիալիզմի հասարակության առջև բացված նոր հորիզոնները, երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի նոր բնագծերը կուսակցությանն ու ժողովրդին հնարավորություն են ընձեռում իրականացնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատավորների բարեկեցության և կուլտուրայի հետագա բարձրացման, սոցիալ-դասակարգային և ազգային հարաբերությունների զարգացման, սոցիալիստական պետականության և դեմոկրատիայի կատարելագործման, նոր մարդու դաստիարակության՝ իրենց մասշտաբներով ու բարդությամբ հարաճուն խնդիրները։

Այդ խոշոր մասշտաբային խնդիրների լուծման հսկայածավալ ծրագիրն առաջադրեցին ՍՄԿԿ XXVI համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և նոյեմբերյան պլենումները։ Այդ ծրագրի իրականացումը դարձել է երկրի բոլոր ազգերի և ազգությունների, սովետական ողջ ժողովրդի կենսական գործը։ Դրա իրականացման կոնկրետ, առավել արդյունավետ ուղիները նըշ-



վեցին Կենտկոմի նոյեմբերյան պլենումում՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում։

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի և ութսունական թվականների պլանների իրականացման համար մեր երկիրն ունի անհրաժեշտ ամեն բան՝ հզոր տնտեսական պոտենցիալ, բնական վիթխարի հարստություններ, առաջավոր գիտություն, կուլտուրապես բարձր, պրոֆեսիոնալ առումով գերազանց պատրաստված բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մասնագետների բազմամիլիոնանոց բանակ, որոնց բնորոշ է քաղաքական բարձր գիտակցականությունը, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, անսահման նվիրվածությունը կուսակցության գործին։

Կուսակցությունն ամեն ինչ արել և անում է, որպեսզի սովետական մարդկանց կենսական շահերին լիովին համապատասխանող այդ պլանները անշեղորեն կատարվեն։ Եվ այսօր, հնգամյակի երրորդ տարվա նախօրեին, մենք կարող ենք ասել, որ արդեն քիչ բան չի արված, լավ հիմք է ստեղծվել տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար, որ ամենուրեք համառ պայքար է մղվում կուսակցության տնտեսական ստրատեգիայի, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, այն ինտենսիվացնելու՝ նրա վերցրած կուրսի իրականացման համար։

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրի կենսագործման պայքարում իրենց ավանդն են մուծում նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։

Նրանք հաջողությամբ կատարում են պետական պլանները և սոցիալիստական պարտավորությունները։

Ազգային եկամտի աճը հնգամյակի երկու տարում կկազմի 12 տոկոս՝ պլանով նախատեսված 11,1 տոկոսի փոխարեն։ Ընդ որում, դրա տեմպերը երկու անգամ կգերազանցեն կապիտալ ներդրումների աճի տեմպերին։ Արդյունաբերական արտադրության ծավալը հնգամյա առաջադրանքով նախատեսված 10,5 տոկոսի փոխարեն կաճի մոտ 12 տոկոսով։ Կբարելավվեն աշխատանքի որակական ցուցանիշները։

Կենսագործվում են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումները, իրականացվում է պարենային ծրագիրը։ Հետևողականորեն միջոցներ են ձեռնարկվում հնարավոր առավելագույն չափով ապահովելու հանրապետության պահանջմունքները սեփական արտադրության գյուղատնտեսական մթերքներով։

Ձնայած բնության «անակնկալներին», որոնք մեծ վնաս պատճառեցին, գյուղի աշխատավորներն ապահովում են բուսաբուծության և անասնապահության հիմնական մթերքների արտադրության և պետությանը վաճառքի տարեկան պլանների ու պարտավորությունների կատարումը։ Ընդ որում, գյուղատնտեսության համախառն արտադրանքի արտադրության ծավալների աճը հնգամյա պլանով նախատեսված 3,9 տոկոսի փոխարեն կազմեց 10 տոկոս։

Մեծ հասումների համար գյուղի աշխատավորները այս հոբելյանական տարում ևս ստացան կուսակցության բարձր գնահատականը, արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի ողջույնին։

Կապիտալ ներդրումները գերազանցապես հատկացվում են գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման և տեխնիկական վերազինման նպատակին։ Արդյունաբերական արտադրանքի ծավալների աճի 97 տոկոսն ապահովվում է այդ գործոնի հաշվին։ Շահագործման կհանձնվեն մեծ քանակությամբ բնակարաններ, դպրոցներ, նախադպրոցական հիմնարկություններ, հիվանդանոցներ և սոցիալական, կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։ Հաջողությամբ է կատարվում սոցիալական զարգացման նախատեսված ծրագիրը։

Քիչ բան չի արված, բայց պետք է ավելի շատ բան անել։

Մենք ունենք արդիական հիմքի վրա հանրապետության ժողովրդական տնտեսության, բոլոր ճյուղերի գիտության ու կուլտուրայի զարգացման լավ կշռադատված, գիտականորեն հիմնավորված ծրագիր։ Դա ռեալ ծրագիր է, որը խարսխված է մեր արտադրական ու գիտատեխնիկական պոտենցիալի մեծ

հնարավորությունների, մեր աշխատանքային և ստեղծագործական ուժերի վրա։ Այն բխում է կուսակցության հիմնարար դրույթներից, ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումներից և նպատակամղված է հանրապետության հետագա համակողմանի բարգավաճմանը, երկրի ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսում նրա ավանդի ավելացմանը։

Այժմ մեր գլխավոր խնդիրն է կենսագործել այդ ծրագիրը։ Իսկ այն հաջողությամբ կատարելու, նախատեսված նպատակներին հասնելու համար հարկավոր է, ամենից առաջ ավելի լավ, ավելի արտադրողաբար աշխատել, աշխատել համառորեն, ուժերի և եռանդի լիակատար նվիրումով, աշխատել կուսակցության, ժողովրդի, հայրենիքի հանդեպ ունեցած պարտքի ու պատասխանատվության բարձր գիտակցությամբ։

Մենք պետք է ամենուրեք բարձրացնենք կազմակերպվածությունը, ապահովենք հստակ աշխատանք արտադրության բոլոր տեղամասերում, բարձրացնենք կադրերի, աշխատողների որակավորումն ու գործիմացությունը, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում ստեղծենք բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ, ստեղծագործական որոնման, պահանջկոտության, ընկերական փոխօգնության, գիտակցական բարձր կարգապահության, հանձնարարված գործի համար, պլանների, առաջադրանքների և պարտավորությունների կատարման համար պատասխանատվության մթնոլորտ, թերությունների, բոլոր բացասական դրսևորումների նկատմամբ անհաշտվողականության իրադրություն։

Մեզ համար ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական հարցն է էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու գործի ավարտումը։ Լուծելով կուսակցության առաջադրած այդ տնտեսական ստրատեգիական խնդիրը՝ մենք պետք է ձգտենք, որպեսզի եղած արտադրատեխնիկական պոտենցիալից ստանանք առավելագույնը, որպեսզի այն օգտագործվի արդյունավետ, մշտապես կատարելագործվի, որպեսզի նվազեն արտադրանքի մեկ միավորին ընկնող աշխատանքի, նյութերի և էներգիայի ծախսումները, որպեսզի մեր արտադրած ամեն բան լինի բարձրորակ և համապատասխանի արդիական պահանջներին։

Արտադրության արդյունավետության բարձրացումը պահանջում է արագացնել ժողովրդական տնտեսության ինդուստրիալ և ագրարային սեկտորների տեխնիկական վերազինումը, ուժեղացնել խնայողության ռեժիմը նրա բոլոր ճյուղերում, ամեն ինչում՝ մեծ ու փոքր բաներում, կատարելագործել պլանավորումը, կառավարումը, տնտեսավարման մեխանիզմը, բարելավել արտադրության կազմակերպումը և բարձրացնել աշխատանքի արտադրողականությունն ու որակը։

Մենք պետք է ըստ ամենայնի արագացնենք գիտատեխնիկական առաջընթացը, արտադրության մեջ լայնորեն ու արագորեն ներդնենք գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի հասումները։

Մեր ամենաառաջնահերթ պարտքն է պարենային ծրագրի հետևողական իրագործումը։ Անհրաժեշտ է ամբողջությամբ իրականացնել նախատեսված խոշորածավալ աշխատանքները հողաբարելավման, ջրամբարների, ոռոգման սիստեմների շինարարության, ինտենսիվ պտղատու և խաղողի այգիների տնկման ասպարեզում, ավելի ակտիվորեն գործադրել դաշտերի ու ֆերմաների արտադրանքն ավելացնելու առկա ռեզերվները։ Մենք պարտավոր ենք ամենալուրջ կերպով զբաղվել բերքատվության բարձրացման պրոբլեմներով, հողագործության գիտականորեն հիմնավորված սիստեմի լայն ներդրմամբ, անասնապահական մթերքների արտադրության ավելացմամբ, աշխատատար պրոցեսների համակողմանի մեքենայացմամբ, մեքենաների ու մեխանիզմների բարձրարդյունավետ օգտագործմամբ, գյուղատնտեսական արտադրության մեջ գիտության դերի հետագա ուժեղացմամբ։

Շատ բան պետք է անել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կապիտալ շինարարությունն զգալիորեն բարելավելու համար։ Հատկապես պետք է նշել շինարարության պլանները ժամանակին կատարելու կարևորությունը։ Շինարարները պետք է միշտ հիշեն, որ տնտեսական և սոցիալական



զարգացման ծրագրի լրիվ իրականացումը մեծապես պայմանավորված է այն բանով, թե որքանով հաջող են նրանք կատարում իրենց առաջադրանքները, պայմանավորված է նրանց աշխատանքի արդյունավետությամբ և որակով, և, ուղղակի ասենք, նրանց բարեխղճությամբ։ Մենք բազմիցս նշել ենք, և այժմ անհրաժեշտ է շեշտել՝ այն ամենը, ինչ կառուցվում է, պետք է լավորակ լինի, գեղեցիկ, պետք է ուրախացնի մարդկանց, զարդարի հայրենի հողը։

Մենք պետք է տնտեսավարենք խնայողաբար, ռացիոնալ, արդյունավետ, խիկական հոգատար վերաբերմունք ցուցաբերենք ժողովրդական բարիքի նկատմամբ։

Այս կարևոր հանգամանքի վրա հարկ է հատկապես ուշադրություն սևեռել այսօր նաև այն պատճառով, որ մեզ մոտ, ցավոք, դեռևս կան ոչ քիչ թվով ձեռնարկություններ, կազմակերպություններ, աշխատավորական կոլեկտիվներ, որտեղ նախատեսված նպատակներն իրագործվում, պլանները կատարվում են մեծ ծախսումների և արտադրական ծախքերի գնով։ Տնտեսական շատ ղեկավարներ ու կադրեր դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքի ոճը կուսակցության արդի պահանջներին համապատասխան։

«Ըստ երևույթին,— ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումում ասաց կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— դեռևս շարունակում են գործել իներցիայի ուժը, հնին սովոր լինելը։ Իսկ ոմանք էլ, երևի, պարզապես չգիտեն, թե ինչպես ձեռնամուխ լինեն գործին։ Անհրաժեշտ է մտածել այն մասին, թե ինչպիսի օգնություն պետք է ցույց տրվի այդպիսի ընկերներին։ Իսկ գլխավորն է՝ արագացնել էկոնոմիկայի ղեկավարման ամբողջ ոլորտի՝ կառավարման, պլանավորման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքը։

Անհրաժեշտ է ստեղծել տնտեսական ու կազմակերպական այնպիսի պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրողական աշխատանքը, նախաձեռնությունն ու ձեռներեցությունը։ Եվ, ընդհակառակն, վատ աշխատանքը, անգործունեությունը, անպատասխանատվությունը պետք է ամենաանմիջական և անկասելի կերպով անդրադառնան թե՛ աշխատողների նյութական վարձատրության, թե՛ նրանց պաշտոնական դիրքի, թե՛ բարոյական հեղինակության վրա»։

Մեր առջև ծառացած տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման գործում գիտությունը կոչված է ծանրակշիռ ավանդ մուծելու։ Գիտությունն այսօր, ավելի քան երբևէ, արտադրողական հզոր ուժ է դարձել։ Եվ մենք իրավունք ունենք հուսալու, որ գիտությունների ակադեմիան, հանրապետության գիտահետազոտական ինստիտուտներն ու հիմնարկությունները, բուհերը, մեր բոլոր գիտնականները մեծապես կակտիվացնեն իրենց մասնակցությունը հանրային արտադրության ինտենսիվացումն արագացնելու և ժողովրդական տնտեսության արդյունավետությունը բարձրացնելու պրոբլեմների լուծմանը։ Մենք մեր գիտնականներից ակնկալում ենք ակտիվ մասնակցություն նաև արդյունաբերության կառուցվածքի հետագա կատարելագործման, նյութերի և էներգիայի խնայողության ուղղությամբ այն կողմնորոշելու, գիտատար և տեխնիկատար արտադրանքի թողարկումը ավելացնելու մեր վերցրած կուրսի իրականացմանը։

Մենք պարտավոր ենք մշակել և իրականացնել գիտության ու տեխնիկայի նորագույն ուղղությունների գիտական կադրեր պատրաստելու նպատակային ծրագիր։

Կուլտուրայի մեր վարպետները, ստեղծագործական ողջ մտավորականությունը պարտավոր են առաջիկայում ևս անդուլ կերպով ամրապնդել գրականության ու արվեստի կապը կյանքի հետ, իրենց ստեղծագործությամբ հաստատել սովետական ապրելակերպը, կոմունիստական բարոյականության նորմերը, սովետական մարդկանց ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրությունը, մեր բարոյական արժույթների գեղեցկությունն ու վեհությունը։ Իրենց տաղանդն ամբողջովին նվիրելով կոմունիզմի կառուցման մեծ գործին, նրանք կոչված են սոցիալիստական ռեալիզմի արվեստի գանձարանը հարստացնելու կուսակցականության ու ժողովրդայնության ոգով ներթափանցված վառ ըս-

տեղծագործություններով, որոնք զովերգեն մեր սոցիալիստական հայրենիքը, նոր հասարակություն կառուցողի հերոսական աշխատանքը, ժողովուրդների լենինյան անխախտ եղբայրությունը։

Ժողովրդական մասսաների դաստիարակությունը կոմունիզմի համար մղվող պայքարի կարևորագույն ճակատն է։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, գաղափարախոսական աշխատանքը կատարելագործելու վերաբերյալ կուսակցության փաստաթղթերը մեզ պարտավորեցնում են ավելի բարձրացնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության ողջ աշխատանքի մակարդակը։ Համակողմանի բարելավելով գաղափարաքաղաքական, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը, անհրաժեշտ է ապահովել մեր գաղափարախոսական գործունեության առավել հրատապությունը, այն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության խնդիրների հետ։ Այդ աշխատանքը պետք է լինի նպատակասլաց, նպաստի աշխատավորների դասակարգային կոփմանը, նրանց դաստիարակի սոցիալիստական հայրենիքի համար հպարտության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության զգացումով, ձևավորի սոցիալիզմի և կոմունիզմի գաղափարների անպարտելիության համոզմունք, քաղաքական զգոնություն, հայրենիքի, սոցիալիզմի նվաճումների պաշտպանության պատրաստակամություն։

Ինչպես տեսնում ենք, առջևում մեզ մեծ ու լարված աշխատանք է սպասում։ Այժմ կարևոր է բոլոր ուժերով ակտիվորեն ներգրավվել մեր աշխատանքում դեռևս գոյություն ունեցող դժվարությունների ու թերությունների հաղթահարման համար մղվող պայքարի մեջ, հաստատակամորեն զբաղվել հանրապետության հետագա համակողմանի առաջընթացի կենսականորեն կարևոր բոլոր խնդիրների լուծմամբ։

Անհրաժեշտ է մշտապես զարգացնել ու կատարելագործել ինչպես ողջ հասարակության, այնպես էլ նրա յուրաքանչյուր անդամի ստեղծագործական, ստեղծարար հնարավորությունները, մշտապես բարձրացնել աշխատանքի և արտադրության կուլտուրան, կենցաղի և սոցիալիստական համակեցության կուլտուրան, մեր հոգևոր կուլտուրան, մեր քաղաքական կուլտուրան։

Կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները աշխատավորների ուժի և նախաձեռնության ոգեշնչող աղբյուր են։ Մասսաների ստեղծարար ակտիվության վառ դրսևորումն է դարձել ՍՍՀՄ 60-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունը, որը պսակվեց հայրենանվեր մեծագործություններով։ Անհրաժեշտ է պահպանել նախահոբելյանական մրցության թափը, զարգացնել ձեռք բերված հաջողությունները, աշխատավորների ջանքերը նպատակամղել եկող տարվա պլանի, ողջ տասնմեկերորդ հնգամյակի արժանավայել կատարմանը։

Մենք վստահ ենք, որ մեր բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական մտավորականությունը, հանրապետության բոլոր աշխատավորները նոր բարձունքներ կնվաճեն կոմունիստական շինարարության գործում, պատվով կկատարեն այն ամենը, ինչ նախատեսված է։ Նրանց նոր նվաճումների հուսալի գրավականն է կուսակցության իմաստուն ղեկավարությունը։ Նրանք անսահման վստահում են հարազատ կոմունիստական կուսակցությանը, ամբողջ սրտով ու բանականությամբ հավանություն են տալիս նրա ներքին և արտաքին քաղաքականությանը, ավելի սերտորեն են համախմբվում նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը։

Ընկերնե՛ր։

Իրականացավ Վլադիմիր Իլյիչ Լենինի հանճարեղ կանխատեսությունը, որ դեռ հեղափոխությունից առաջ նշում էր, թե ի հակադրություն կապիտալիզմի, որն ազգերին միմյանցից օտարացնում է, սոցիալիզմը «կերտում է մարդկային համակեցության նոր, բարձր ձևեր, երբ ամեն մի ազգության աշխատավոր մասսաների օրինական պահանջմունքներն ու պրոգրեսիվ ձգտումները առաջին անգամ կբավարարվեն ինտերնացիոնալ միասնության մեջ՝ այժմյան ազգային միջնորմների ոչնչացման պայմանով»։

Սովետական Միությունը՝ մարդկային համակեցության այդպիսի բարձր



ձևի նմուշը, այսօր ողջ աշխարհի առջև հառնում է որպես համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների համերաշխ ընտանիք, որպես հզոր էկոնոմիկայի և բարձր կուլտուրայի երկիր։ Նրա ստեղծումն ու ծաղկումը միջազգային անանց նշանակություն ունեն, պատմական կարևոր բնագիծ են նշանավորում ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության, աշխարհի հեղափոխական նորացման համար առաջավոր մարդկության մեծ պայքարում։

Սովետական Միությունը, մարդկությանը ցույց տալով նոր հորիզոններ, բարոյական նոր արժեքներ և իդեալներ, մեծագույն դեր է խաղում համաշխարհային պատմության մեջ, պատվով է կատարում իր առաքելությունը աշխարհի հեղափոխական վերակերտման գործում, հարթում մոլորակի բոլոր աշխատավորների ապագայի ուղին։ Նա դեպի նվիրական նպատակն է գնում սոցիալիզմի եղբայրական երկրների հետ միասնական շարքում՝ նրանց հետ միասին կառուցելով նոր սոցիալիստական աշխարհ և հաստատելով պետությունների նոր, սոցիալիստական տիպի, իսկական արդարացի և իրավահավասար հարաբերություններ։ Մեր ժողովուրդների հետ մեծ Հոկտեմբերի ուղիով են ընթանում նաև Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի տարբեր երկրների միլիոնավոր մարդիկ։

Սովետական Միությունը աշխարհի խաղաղության և պրոգրեսի, ազատության և անկախության համար ժողովուրդների պայքարի հետևողական մարտիկն է, հուսալի պատվարը։ Նա ակտիվորեն հանդես է գալիս հեղափոխական բոլոր ուժերի համերաշխության և համախմբվածության ամրապնդման համար։ Սովետների մեր մեծ երկրի դրոշի վրա Հոկտեմբերի հաղթանակի առաջին իսկ օրվանից կողք կողքի հուրհրատում են բոլոր աշխատավոր մարդկանց համար ամենամարդասիրական, ամենակարևոր, ամենաթանկ բառերը՝ խաղաղություն և սոցիալիզմ։ Բոլոր երկրների բանվորները, ինչպես դեռ Լենինն էր ասում, մեզ ծափահարում են այն բանի համար, որ մենք ողջ աշխարհի առաջ պարզեցինք խաղաղության դրոշը, սոցիալիզմի դրոշը։ Մեր կուսակցության մշակած և իրականացվող խաղաղության ծրագիրը, սովետական պետության՝ դասակարգայնության, պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա խարսխված խաղաղասիրական քաղաքականությունը, նրա հետևողական ակտիվ գործողությունները հանուն լարվածության թուլացման, ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքի կանխման, միջազգային անվտանգության ամրապնդման, հանուն աշխարհի խաղաղության ամրապնդման ջերմ պաշտպանություն են գտնում ամբողջ առաջադեմ մարդկության, բարի կամքի բոլոր մարդկանց կողմից։ Դրանք ուղղված են ժողովուրդների ամենամեծ իրավունքի՝ ապրելու իրավունքի հաստատմանն ու պահպանությանը։

Սովետական Միությունը հզոր է ավելի, քան երբևէ, ունի հուսալի պաշտպանունակություն, բոլոր անհրաժեշտ միջոցները՝ խորտակիչ հակահարված տալու ագրեսիայի ամեն մի փորձի։ Սովետական զինված ուժերը, որոնք աչալուրջ կանգնած են Հոկտեմբերի նվաճումների, սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի պաշտպանության դիրքերում, խաղաղության և ժողովուրդների անվտանգության հզոր գործոն են։ Կուսակցության աճեցրած ու դաստիարակած աշխատավոր մարդկանց շահերի պաշտպան մեր մեծ բանակը մշտապես պատրաստ է պատվով կատարելու իր հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքը։

Մեծ ու փառավոր է Սովետական Միության անցած ուղին, վեհ ու վիթխարի են նրա ժողովուրդների պատմական նվաճումները նոր կյանքի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում։

Այն ամենը, ինչ ձեռք է բերել սովետական բազմազգ պետությունը, այն բոլորը, ինչ նա նվաճել է անցած վաթսուն տարիներին, ձեռք է բերվել ու նվաճվել լենինյան մեծագործ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։ Լինելով բանվոր դասակարգի, երկրի բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների, ողջ սովետական ժողովրդի իմաստուն ու փորձված առաջ-

*նորդը, նա հմտորեն կազմակերպում և ուղղություն է տալիս նրանց հերոսական պայքարին, հստակորեն ղեկավարում սովետների երկրի զարգացումը, լենինյան ուղիով, լենինյան կուրսով մեր ժողովրդին առաջնորդում է հաղթանակից հաղթանակ, իր անդուլ, տիտանական աշխատանքը ներդնելով սոցիալիստական և կոմունիստական շինարարության գործում, սովետական բոլոր հանրապետությունների առաջընթացի ու բարգավաճման, ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության ու բարեկամության, մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման, մոլորակի բոլոր մարդկանց խաղաղության պահպանման և ամրապնդման գործում։*

*Ժողովրդի հետ սերտորեն կապված մեր կուսակցությունը, ինքը հանդիսանալով ինտերնացիոնալիզմի մարմնավորումը, վառ կերպով մարմնավորում է ՍՍՀՄ աշխատավորների ընկերակցությունն ու բարեկամությունը, սովետական ողջ ժողովրդի անխախտ միասնությունը։ Նա չի ունեցել և չունի այլ շահեր, չունի ավելի վեհ նպատակ, քան ժողովրդի բարօրությունը։ Հենց դա է նրան հարազատացնում սովետական բոլոր մարդկանց հետ, շաղկապում ամուր, անխզելի թելերով։ Ժողովրդի հետ միասնությունը կուսակցության ուժն է, կուսակցության հետ միասնությունը, նրա ղեկավարությունը ժողովրդի ուժն է։ Կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը եղել և մնում է սովետական հասարակության անխորտակ ուժի աղբյուրը, կոմունիզմի ճանապարհին նրա պատմական նոր հաղթանակների երաշխիքը։*

*Ընկերնե՛ր։*

*Սովետական Միությունը իր յոթերորդ տասնամյակն է թևակոխում որպես ավելի քան երբևէ ուժեղ, հզոր, բարգավաճ տերություն։ Մեր երկրի ժողովուրդները, որոնք առհավետ միաձուլված են անխախտ եղբայրական ընտանիքում, լավատեսությամբ և վստահորեն են նայում ապագային, որովհետև սոցիալիզմի մեր մեծ նավը, լենինյան փորձված կուրսով ընթանում է դեպի պրոգրեսի բարձունքները, դեպի կոմունիզմ, որովհետև նա դեպի այդ նվիրական նպատակն է ընթանում իր հավատարիմ և տոկուն ղեկավարի, կոմունիստների փառապանծ կուսակցության առաջնորդությամբ։*

*Հայ ժողովուրդը երջանիկ ու հպարտ է, որ սովետների երկրի ժողովուրդների եղբայրական համաստեղության մեջ իրականացնում է այդ դյուցազնական վերելքը, նրանց հետ մեկտեղ կերտում հայրենիքի պայծառ գալիքը, իր ողջ ստեղծարար եռանդը, բանականությունն ու տաղանդը նվիրաբերում մարդկության մեծագույն երազանքի իրականացմանը՝ կոմունիստական իդեալների հաղթանակին։*

*Հայ ժողովուրդը երջանիկ ու հպարտ է իր նոր, Հոկտեմբերից ծնված բախտով։ Նա XX դար ոտք դրեց խոշտանգված, հալածված, վիրավոր սրտով, ոտք դրեց՝ առաջին երկու տասնամյակներում կրելով ահավոր թշվառություններ ու տառապանքներ, իր պատմության ամենամեծ ողբերգության՝ անագորույն ցեղասպանության սարսափները, իսկ այսօր նա դեպի XXI դարն է ընթանում ճնշումից և իրավազրկությունից, աղքատությունից և հետամնացությունից մեկընդմիշտ փրկված, ընթանում է նյութական ու հոգևոր ուժերի լիակատար ծաղկմամբ, որպես առաջադիմող սոցիալիստական ազգ, ընթանում է ոչ թե մենակ, ինչպես հարյուրամյակներ շարունակ քայլել է պատմության դժվարին ճանապարհներով, այլ եղբայր ժողովուրդների հետ ուս-ուսի ընթանում է մեծ հասարակության մեծ իդեալներով, ընթանում է դեպի ապագան խանդավառ, աշխատավոր ժողովրդի, ստեղծարար ժողովրդի, շինարար ժողովրդի վստահ քայլերով, բոցաշունչ սրտով։*

*Կանցնեն տասնամյակներ ու հարյուրամյակներ, բայց եղբայրական սովետական ժողովուրդների հետ մեկտեղ 60 տարում անցած պայքարի և կառուցման փառահեղ ճանապարհը չի մոռացվի, գալիք սերունդների հիշողության մեջ այն կմնա որպես կոմունիզմի մեծ դարաշրջանի արշալույս, որպես հերոսական մեծագործությունների, նոր աշխարհի կերտման ժամանակաշրջան, մարդկության պայծառ իդեալների՝ եղբայրության, խաղաղության, սոցիալական առաջընթացի իդեալների հաղթանակի համար պայքարող անձնվեր ու խիզախ մարտիկների ժամանակաշրջան։*

*Այդ իդեալների լիակատար հաղթանակի համար ապրելն ու պայքարելը եղել և մնում է մեր ժողովրդի ամենամեծ երջանկությունը։*

*Այսօր, երբ հայոց հինավուրց հողում որպես մեծ ու պայծառ տոն նշվում է ՍՍՀՄ փառապանծ վաթսունամյակը, Սովետական Հայաստանի աշխատավորները, ողջ ժողովուրդը հարազատ կոմունիստական կուսակցությանը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացնում են, որ իրենք, ինչպես միշտ՝ սովետական պետության ամբողջ պատմության ընթացքում, հաստատակամորեն կպայքարեն սիրելի հայրենիքի հետագա ծաղկման համար, ՍՄԿԿ XXVI համագումարի կանխանշած կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրի իրականացման համար, բարձր կպահեն Լենինի դրոշը, Հոկտեմբերի դրոշը, ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների եղբայրության ու բարեկամության դրոշը։*

*Թո՛ղ հավերժ ապրի, ամրապնդվի ու ծաղկի մեր մեծ բազմազգ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։*

*Կեցցե՛ սովետական ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունը։*

*Փա՛ռք սովետական ժողովրդի հերոսական ավանգարդին՝ Սովետական Միության լենինյան կոմունիստական կուսակցությանը։*

*Կեցցե՛ կոմունիզմը։*

**(Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը, որը լսվեց մեծ ուշադրությամբ, բազմիցս ընդհատվում էր բուռն, երկարատև ծափահարություններով):**

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

**ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոն, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությունը և **ՍՍՀՄ** Մինիստրների խորհուրդը, քննության առնելով Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության (Պրագա, 4—5 հունվարի 1983 թ.) արդյունքները, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի գլխավորած սովետական պատվիրակության գործունեությանը:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Պրագայի խորհրդակցությունը միջազգային խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն եղավ: Հաստատված ավանդույթին համապատասխան, դաշնակից սոցիալիստական պետությունների բարձրաստիճան ղեկավարները համատեղ վերլուծեցին Եվրոպայի և ամբողջությամբ վերցրած աշխարհի ներկա իրադրությունը, սահմանեցին եղբայրական երկրների հետագա համաձայնեցված գործողությունները պատերազմի սպառնալիքի դեմ, լարվածության թուլացման պրոցեսի պահպանման ու խորացման, միջազգային համագործակցության զարգացման համար մղվող պայքարում:

Աշխարհի դրությունը բնութագրվում է զգալի լարվածությամբ, որն առաջացել է աշխարհում ստեղծված ստրատեգիական հավասարակշռությունը խախտելու, համաշխարհային իրադարձությունների ընթացքը իրենց կամքին ենթարկելու նպատակով իրենց համար ռազմական գերազանցություն ապահովելու՝ իմպերիալիստական ագրեսիվ շրջանների, նախ և առաջ ԱՄՆ-ի չդադարող փորձերի հետևանքով: Նրանց կողմից սանձազերծվող միջուկային և սովորական սպառազինությունների մրցավազքի նոր փուլը կարող է հանգեցնել աշխարհում է՛լ ավելի վտանգավոր անկայունության և լրջորեն բարդացնել առանձին երկրների և ամբողջ մարդկության առջև ծառացած կենսական, տնտեսական ու սոցիալական պրոբլեմների լուծումը:

**ՍՍՀՄ**-ը, դաշնակից սոցիալիստական պետությունները իմպերիալիզմի այդ ռազմատենչ գծին հակադրում են խաղաղության, միջազգային անվտանգության և լարվածության թուլացման հետևողական կոնստրուկտիվ կուրսը: Նոր տարվա՝ 1983 թվականի տարեգրությունը Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները բացեցին մասշտաբային ելույթով՝ հօգուտ երկրագնդի քաղաքական կլիմայի առողջացման: Պրագայում ընդունված քաղաքական դեկլարացիայում նրանք առաջ քաշեցին դեպի միջուկային աղետը սահելու ռեալ այլընտրանք:

Հատուկ նշանակություն ունի սոցիալիստական երկրների նոր առաջարկությունը՝ ռազմաքաղաքական երկու խմբավորումների՝ Վարշավայի պայմանագրի և ՆԱՏՕ-ի մասնակից պետությունների միջև պայմանագիր կնքել փոխադարձաբար ռազմական ուժ չգործադրելու և խաղաղ հարաբերություններ պահպանելու մասին: Կարևոր է, որ այն պետությունները, որոնց առաջին հերթին հասցեագրված է խաղաղասիրական այս խոշոր նախաձեռնությունը, դրան վերաբերվեն ամենայն ուշադրությամբ:



Գործնական հնարավորություն է բացվում կանգնեցնելու իրադարձությունների ներկայիս վտանգավոր զարգացումը, դրանք շրջելու դեպի առողջ հուն, ամրապնդելու փոխադարձ վստահությունը, մեկը մյուսի ետևից լուծելու զենքի, հատկապես միջուկային զենքի զինանոցների սահմանափակման ու կրճատման խնդիրները:

ԱՄՆ-ից և ՆԱՏՕ-ի նրա դաշնակիցներից է այժմ կախված այն, թե արդյոք կիրացվի՞ Եվրոպայում հրթիռամիջուկային զենքի ծավալումը կանխելու հնարավորությունը, կթուլանա՞, թե՞, ընդհակառակն, խիստ կուժեղանա մայրցամաքի, ինչպես նաև ամբողջ աշխարհի ժողովուրդների վրա կախված սպառնալիքը:

Սովետական Միությունը իրենից կախված ամեն ինչ անում է, որ միջազգային գործերում հաղթանակի ողջախոհությունը: Նա այսուհետև էլ հետևողականորեն կվարի սոցիալական այլ սիստեմ ունեցող պետությունների հետ խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը, պահպանելով աչալրջությունը սոցիալիզմի և խաղաղության թշնամիների մեքենայությունների հանդեպ, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկելով երկրի անվտանգությունն ապահովելու համար:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը ցույց տվեց, որ ներկա պայմաններում աճում է սոցիալիստական պետությունների բազմակողմանի համագործակցության, համաշխարհային ասպարեզում ընդհանուր նպատակների համար նրանց համատեղ պայքարի, սոցիալիստական, կոմունիստական շինարարության փորձի փոխանակման, էկոնոմիկայում, գիտության ու տեխնիկայի բնագավառում ուժերի կոոպերացման դերը: Այդ ամենը բազմապատկում է ամբողջությամբ վերցված սոցիալիստական ընկերակցության ուժերը, օգնում լուծելու նրա բոլոր մասնակիցների առջև կանգնած ստեղծարար խնդիրները:

**ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոն, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությունը և **ՍՍՀՄ** Մինիստրների խորհուրդը անհրաժեշտ են համարում ընդգծել, որ եղբայրական երկրների հետ բարեկամությունն ու համագործակցությունը միշտ էլ առանձնահատուկ, առաջնային տեղ են գրավել և կգրավեն կուսակցության ու սովետական պետության միջազգային քաղաքականության մեջ:

---

## Տասնմեկերորդ հնգամյակի բնագծերում

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՆՇԵՂ ԱՃԸ

**Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ

*ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ կարգերի հաստատման շնորհիվ սկսվեց հայ ժողովրդի ազգային վերածննդի, սոցիալ-տնտեսական մեծ վերափոխումների, հանրապետության համակողմանի զարգացման ու աննախընթաց առաջընթացի դարաշրջանը: Դա ամենից առաջ իր արտահայտությունը գտավ հանրապետությունում բնակչության անընդհատ աճի, նրա սոցիալ-դասակարգային և պրոֆեսիոնալ-որակական հատկանիշները բնութագրող խոր տեղաշարժերում: Պատմական կարճ ժամանակամիջոցում՝ վեց տասնամյակի ընթացքում, Հայկական ՍՍՀ բնակչությունն ավելի քան քառապատկվեց: Այժմ նրա տարածքում ապրում է շուրջ 3 մլն 200 հազար մարդ:*

*Երեք միլիոնը, ինքնին վերցրած, թերևս մեծ թիվ չէ, բայց երբ խոսքը Հայաստանի մասին է, այդ երեք միլիոնն այլ իմաստ է ստանում: Բավական է ասել, որ Սովետական Հայաստանը ժառանգել էր չափազանց քիչ բնակչություն, ընդամենը 720 հազար մարդ՝ 1913 թ. նրա տարածքում ապրող 1 միլիոնի դիմաց: Վեց տասնամյակի ընթացքում բնակչության քառապատկումը հազվագյուտ երևույթ է: Այսօր զարգացած երկրներում բնակչությունն ավելանում է չնչին չափերով, իսկ Եվրոպայի մի քանի երկրներում՝ նույնիսկ նվազում:*

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման շնորհիվ ձևավորվող նոր տնտեսական, սոցիալական-քաղաքական կյանքը, բնական է, որ պետք է պայմանավորեր բնակչության վերարտադրության նոր օրինաչափությունների առաջացում: Այդ օրինաչափությունները, առաջին հերթին, դրսևորվեցին բնակչության բնական աճի՝ բավականին բարձր ծննդի և դրան ուղեկցող՝ մահացության կրճատման մեջ: 1920-ական թվականների կեսերին Սովետական Հայաստանում բնակչության 1000 շնչի հաշվով ծնվում էր 56—58 երեխա: Մյուս գործոնը ճակատագրի բերումով աշխարհով մեկ ցրված հայ բնակչության համահավաքն էր մայր հայրենիքում՝ Սովետական Հայաստանում: Հանրապետության բնակչության ավելացման հիմնական աղբյուրը եղել է նրա բնական աճը, բայց առանձին փուլերում, մանավորապես սովետական կարգերի հաստատման առաջին տարիներին, 30-ական թվականների կեսերին, և հետպատերազմյան մի քանի տարիներ, որոշիչ նշանակություն է ունեցել ինչպես արտասահմանից, այնպես էլ անդրկովկասյան և ռուսաստանյան ֆեդերատիվ հանրապետություններից կատարվող ներհոսքը: Այդ երկու գործոնների (բնական և մեխանիկական աճ) շնորհիվ, պատմական կարճ ժամանակամիջոցում բնակչության թիվը հասավ երեք միլիոնի:*

*1981 թ. տվյալներով հանրապետությունում տարեկան միջին հաշվով աշխատում են ավելի քան 1 մլն 308 հազար բանվորներ, ծառայողներ ու կոլտնտեսականներ, որոնք բազմապատկում են երկրի հարստությունը, զարգացնում գիտությունն ու կուլտուրան: Ստեղծվել է դպրոցների, բուհերի, միջ-*



*նակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության լայն ցանց, որոնցում սովորողների թիվը հասնում է շուրջ 760 հազարի: Բնակչության ավելի քան երեքից մեկը սովորում է կամ բարձրացնում որակավորումը, ձեռք բերում նոր մասնագիտություն:*

ՀՍՍՀ բնակչությունը 1920—1982 թթ. *(հազար մարդ, տարեսկզբին)*

| *Թվականները* | *Ամբողջ բնակչությունը* | *Այդ թվում* | |
|---|---|---|---|
| | | *տղամարդիկ* | *կանայք* |
| *1920* | *720,0* | *367,2* | *352,8* |
| *1939* | *1282,3* | *648,6* | *633,7* |
| *1959* | *1763,0* | *842,4* | *920,6* |
| *1970* | *2491,9* | *1217,2* | *1274,7* |
| *1979* | *3037,3* | *1477,9* | *1559,4* |
| *1982* | *3169,4* | *1543,5* | *1625,9* |

*Նոր կարգերը սկիզբ դրեցին հայրենադարձության տևական շարժմանը: Ի տարբերություն մինչ այդ եղած ներգաղթի, այն կամավոր հիմունքներով հանրապետությունում մշտական բնակություն հաստատելու ձգտումն էր: Սկզբնական շրջանում ներգաղթը դեպի Հայաստան պայմանավորված էր ոչ այնքան տնտեսական, որքան քաղաքական և ազգային հարցի լենինյան լուծման շարժառիթներով, թեև հաճախ, տնտեսական ու քաղաքական միտումները միահյուսվում էին:*

*Սովետական Հայաստանում ամեն մի գաղթական օրենքով ճանաչվեց ՍՍՀՄ լիիրավ քաղաքացի: Համառուսաստանյան ԿԳԿ-ի՝ քաղաքացիության վերաբերյալ կանոնադրության 202-րդ հոդվածի 3-րդ կետով «ՍՍՀ Միության տարածքում ապրող ամեն մի քաղաքացի ճանաչվում է ՍՍՀ Միության քաղաքացի, եթե նա չի հաստատում, որ ինքը օտարերկրյա քաղաքացի է»* («Собрание законов рабоче-крестьянского правительства Союза Советских Социалистических Республик», 1924, стр. 364):

*Կիրառվող ազգային քաղաքականությունը մեծ ազդակ հանդիսացավ մինչ այդ Հայաստանից արտագաղթած բոլոր ազգությունների զանգվածային վերադարձի համար: Այդ է վկայում Հայաստան վերադարձող բնակչության ինտերնացիոնալ կազմը: 1926 թ. հարցման միջոցով պարզվել է, որ Արևելյան Հայաստանից Ադրբեջան և Պարսկաստան արտագաղթած 234,9 հազար ադրբեջանցիների մոտ 80 տոկոսը վերադարձել և բնակություն է հաստատել իր նախկին բնակավայրում (ՀՍՍՀ Հոկտեմբերյան հեղափոխության սոցիալիստական շինարարության պետական կենտրոնական արխիվ, ֆ. 130, ց. 6, գ. 197, թ., 37, 48, 49): Նույն կարգով մուսավաթականների տիրապետության օրոք Ադրբեջանի քաղաքներից արտագաղթած հայ բնակչության մեծ մասը վերադարձավ Սովետական Ադրբեջան, մինչդեռ նրա գավառներից արտագաղթած բնակչության շուրջ 90 տոկոսը մշտական բնակություն հաստատեց Հայկական ՍՍՀ-ում (նույն տեղը, թ. 49): Հայաստան ներգաղթող բնակչության մի մասը հանրապետության հարավային գավառներից մինչ այդ Պարսկաստան արտագաղթած բնակչությունն էր (նույն տեղը, ֆ. 123, ց. 42, թ. 86,* Խորհրդային Հայաստանը 1920—1925 թթ., *Երևան, 1926, էջ 68): Սովետական Հայաստանի հեղկոմի հրատարակած դեկրետով նրանց վերապահվում էր հայրենիք վերադառնալու և նրա լիիրավ քաղաքացին դառնալու իրավունք: Սա ևս նպաստեց ներգաղթին, որի կազմակերպումը և տեղում բնակչության վերաբնակեցումը դառնում են համապետական գործ:*

*Արտասահմանից ներգաղթը բնորոշ դարձավ Հայաստանում սովետական կարգերի հաստատման հենց առաջին օրերից, մանավորապես այն բանից հե-*

տո, երբ 1923 թ. Լոզանի կոնֆերանսում, ի լուր աշխարհի հայտարարվեց Սովետական Հայաստանում 300 հազար հայերի ընդունելու պատրաստակամության մասին։ Դրա հիման վրա ՍՍՀՄ-ում Ժողկոմխորհի աշխատանքի և պաշտպանության խորհուրդը որոշում է կազմակերպել արտասահմանից 15 հազար հայերի ներգաղթը։ 1922—1929 թթ. արտասահմանից հայրենիք վերադարձան 20,3 հազար հայեր։ Դա տեղի էր ունենում Սովետական Հայաստանի համար մի այնպիսի դժվարին պայմաններում, երբ գյուղերում առկա էր ագրարային գերբնակչությունը, իսկ քաղաքում՝ գործազրկությունը, այն էլ ավելի արտահայտիչ չափերով, քան Սովետական Միության որևէ այլ հանրապետությունում։

Մինչև 1940 թ. հայրենադարձ հայերի ընդհանուր թիվը հասավ շուրջ 75 հազարի։ Այսինքն, 1926—1939 թթ. ժամանակաշրջանում հանրապետությունում ավելացող բնակչության 10 տոկոսը հայրենադարձներն էին։ Հայրենական մեծ պատերազմից դեռևս նոր դուրս եկած երկիրը նյութական ու ֆինանսական միջոցներ չխնայեց զանգվածային ներգաղթ կազմակերպելու համար։ Կարճ ժամանակամիջոցում, 1946 թ. հունիս—հոկտեմբեր ամիսներին, Հայաստանում հանգրվանեցին 18.801, 1947-ին՝ ևս 8.521 ընտանիք։ Մինչև 1947 թ. վերջը հայրենիք վերադարձավ 86,5 հազար մարդ։ Դա հանրապետության այն ժամանակվա բնակչության 7 տոկոսն էր։ Հայրենադարձությունն ընդգրկում էր հիմնականում Սիրիայի, Լիբանանի, Հունաստանի, Ֆրանսիայի, Բուլղարիայի, Ռումինիայի, Իրանի, Եգիպտոսի և մի քանի այլ երկրների հայ բնակչությունը։ Հայրենադարձների բնակարանային հարցերի լուծման հետ մեկտեղ, նրանք անմիջապես ապահովվեցին համապատասխան աշխատանքով, արտադրական ձեռնարկություններում կազմակերպվեց նրանց մասնագիտական ուսուցումը։ Միաժամանակ լուրջ միջոցներ ձեռնարկվեցին երեխաների ուսուցումը կազմակերպելու, տարիքավորների անգրագիտությունը վերացնելու նպատակով։

1920—50-ական թթ. հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացումը և իրականացվող սոցիալ-տնտեսական վերափոխումները մայր հայրենիքում աշխահով մեկ սփռված հայ բնակչության որոշակի զանգվածների համահավաքի հետ մեկտեղ բարենպաստ պայմաններ ստեղծեցին նաև բարձր բնական աճի համար։

1920—40-ական թվականների Հայաստանը երկրում ուներ բնական աճի ամենաբարձր ցուցանիշը։ Օրինակ, եթե 1940 թ. Միությունում բնակչության միջին բնական աճը 1000 շնչի հաշվով 13,2 մարդ էր, ապա մեր հանրապետությունում՝ 27,4։ Հայտնի է, որ ինչպես աշխարհի շատ երկրներում, այնպես էլ մեզ մոտ, բնակչությունը բուռն կերպով աճեց հետպատերազմյան տարիներին։

Մեր հանրապետությունում դեմոգրաֆիական բռնկումը տեղի ունեցավ երկու փուլով։ Առաջինն ընդգրկեց հետպատերազմյան շրջանը և ավարտվեց 50-ական թվականների սկզբին։ Դա բացատրվում էր պատերազմի ավարտով և զորացրումով։ Երկրորդ շրջանն սկսվեց հիսունական թվականների կեսերից և տևեց մեկ տասնամյակ։ Դեմոգրաֆիական բռնկման այս շրջանին հատուկ բնական աճը պայմանավորված էր ոչ միայն ծնվող երեխաների բացարձակ թվի անընդհատ ավելացման, այլև մահացության, մասնավորապես, մանկամահացության խիստ կրճատման փաստով։ Տարեցտարի ավելացող ծնունդը և բնական աճը 1960 թ. հասան իրենց ամենաբարձր սահմանին։ Այդ տարի ծնվեց շուրջ 75 հազար երեխա։ Դրանից հետո, շուրջ երկու-երեք տարի, ծնվող երեխաների բացարձակ թվի գրեթե կայուն մակարդակը նվազեց։ Սակայն մահացության նվազման հաշվին բնակչության բնական աճը պահպանվեց ընդհուպ մինչև 1970 թվականների սկիզբը։ Բայց 1970 թ. ծնվեց շուրջ 19,1 հազարով ավելի քիչ երեխա, քան 1960 թ., այն դեպքում, երբ 1959—1970 թթ. ՀՍՍՀ բնակչությունն ավելացել էր 763,4 հազար մարդով։ Ներքոհիշյալ աղյուսակը բնութագրում է ՀՍՍՀ բնակչության բնական աճի ընթացքը։

1970-ական թվականների սկզբներին ծնվող երեխաների բացարձակ թվի նվազումը, ուստի և բնական աճի դանդաղումը, ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում բացատրվում է հիմնականում երկու կարգի



գործոններով։ Դրանցից առաջինը պայմանավորված էր Հայրենական պատերազմով։ Պատերազմների հասցրած տնտեսական վնասները հաղթահարվում են ավելի կարճ ժամանակամիջոցում, քան դեմոգրաֆիականը։ Պատերազմը բնակչության թվի նվազման և հատկապես նրա տարիքային (ինչպես նաև սեռային) կազմի վրա ներգործում է ոչ միայն այդ պահին, այլև պարբերաբար և տևականորեն։

ՀՍՍՀ բնակչության բնական աճը

| Տարեթիվը | 1000 բնակչի հաշվով | | | Ծնված 1000 երեխայից մինչև 1 տարեկան դառնալը մահացել է |
|---|---|---|---|---|
| | ծնունդը | մահը | բնական աճը | |
| 1913 | 46,3 | 23,9 | 22,4 | 204 |
| 1925 | 51,5 | 16,2 | 35,3 | — |
| 1928 | 56,0 | 17,0 | 39,0 | — |
| 1940 | 41,2 | 13,8 | 27,4 | 119 |
| 1950 | 32,1 | 8,5 | 23,6 | 69 |
| 1960 | 40,3 | 6,8 | 33,5 | 50 |
| 1970 | 22,1 | 5,1 | 17,0 | 25 |
| 1979 | 22,9 | 5,6 | 17,3 | — |
| 1982 | 22,7 | 5,5 | 17,2 | — |

60-ական թվականների սկզբներից ծնվող երեխաների բացարձակ թիվը սկսեց նվազել նախ այն պատճառով, որ ամուսնության տարիք սկսեցին թևակոխել պատերազմի տարիներին ծնվածները, իսկ այդ տարիներին ծնվել էին շատ քիչ երեխաներ։ Դրա հետևանքով Հայկական ՍՍՀ-ում 20—29 տարեկանների բացարձակ թիվը 1970 թ. 17 տոկոսով ավելի քիչ էր, քան 1959 թվականին։ Ըստ որում 25—29 տարեկանների թիվը պակասել էր 24, իսկ գյուղական վայրերում՝ 50 տոկոսով։ Վերջին ցուցանիշով ՀՍՍՀ-ն զիջում էր միայն ՌՍՖՍՀ-ին։ Հենց այս պատճառով էլ այդ տարիներին խստորեն կրճատվեց ամուսնությունը (մանավանդ գյուղական վայրերում)։ Բավական է ասել, որ եթե ՀՍՍՀ բնակչության 1000 շնչի հաշվով 1958 թ. գրանցվում էր 14,8 ամուսնություն, ապա 1969 թ.՝ ընդամենը 7։

Հայկական ՍՍՀ-ում ծնվող երեխաների բացարձակ թվի նվազումը բացատրվում է նաև սոցիալ-տնտեսական գործոններով, որոնք հանգեցնում են ընտանիքի փոքրացմանը, այսինքն՝ ընտանիքում ծնվող երեխաների թվի նվազմանը։ Զարգացման ներկա պայմաններում ընտանիքի փոքրանալուն նպաստող գործոններից ավելի ու ավելի որոշիչ են դառնում հասարակական արտադրություն մուտք գործելու համար երիտասարդությանը ներկայացվող հարաճուն պահանջները, կանանց զբաղվածության աստիճանը, քաղաքային բնակչության տեսակարար կշիռ, բնակչության կուլտուր-կրթական մակարդակի բարձրացումը, կենցաղային պայմանների բարելավումը։ Փոքր դեր չեն խաղում նաև բժշկական սպասարկման բարելավումը, մահացության կրճատումը, ընտանիքի անդամների թվի ներընտանեկան կարգավորման հնարավորությունները, ընտանիքի բյուջեի կազմավորման գործում կնոջ մասնակցության աստիճանը, երեխաների դաստիարակության, խնամքի, ուսուցման նրկատմամբ պահանջների աճը։ Այս գործոններն իրենց որոշակի ազդեցությունն են ունենում բնակչության բնական աճի վրա, ի հաշիվ ծննդի նվազեցման։

Հայկական ՍՍՀ-ում ծննդի նվազումը բացատրվում է նաև բժշկական սպասարկման և, ընդհանրապես, նյութակուլտուրական ու կենցաղային պայմանների բարելավմամբ։ Դա այլ գործոնների հետ մեկտեղ հանգեցնում է մահացության կրճատմանը։ Երեխաների կենդանի մնալու հավանականությունը ընտանիքի միջին չափի կայունացման և նրա ներընտանեկան մեծությունը գիտակցորեն կարգավորելու երաշխիք է։ Մանկական մահացության

մշտական նվազումը հնարավորություն է ընձեռել ընտանիքում ունենալու երեխաների ցանկացած թիվը: Ծննդի ցածր մակարդակը չէր կարող ապահովել բնակչության ոչ միայն ընդլայնված, այլ նույնիսկ պարզ վերարտադրությունը: Բավական է ասել, որ 1913 թ. մինչև 15—20 տարեկան էր դառնում ծնվածների կեսը: Մեր հաշվարկներով, նույնիսկ 1939 թ., որպեսզի ամեն մի 100 ընտանիք կարողանար ապահովել ընտանիքի պարզ վերարտադրությունը (այսինքն՝ 2 երեխա դարձնել մինչև 30 տարեկան), միջին հաշվով պետք է ունենար 281 երեխա, 1950 թ.՝ 238, իսկ 1970 թ.՝ 213 երեխա: Դա տեղի է ունեցել մանկամահացության խիստ կրճատման շնորհիվ: Օրինակ, եթե 1913 թ. Հայաստանում յուրաքանչյուր 1000 ծնված երեխայից մեկ տարեկան էր դառնում միայն 80 տոկոսը, ապա 1970 թ. արդեն 97,5 տոկոսը: Դրա շնորհիվ 1970 թ. Հայկական ՍՍՀ-ում ծնված 55,7 հազար երեխայից մեկ տարեկան դարձավ 54,4 հազարը:

Մահացության այդպիսի կրճատումը հանգեցրել է մարդկանց կյանքի միջին տևողության ավելացմանը, որի շնորհիվ բնակչության բնական աճն ավելի դանդաղ է իջել, քան ծննդի մակարդակը: Ուստի մինչև 1970-ական թվականների սկիզբը ՀՍՍՀ բնակչության աճի կարևորագույն գործոններից մեկը եղել է մահացության կրճատումը: Բավական է ասել, որ 1940—1970 թթ. այս գործոնի հաշվին բնակչության բնական աճը 10.000 շնչի հաշվով ավելացավ 87, իսկ 1913 թ. նկատմամբ՝ 135 մարդով (տե՛ս աղյուսակ 2): Սոցիալական բնագավառում դա մեր հանրապետության ամենանշանակալից նվաճումներից է, որ ձեռք է բերվել եղբայրական ժողովուրդների ընտանքում: Այլ պարագաներում Հայաստանը դրան հասնել չէր կարող: Մեր հանրապետությունում վերջին տարիների ընթացքում բնակչության 1000 շնչի հաշվով մահանում է 5,5 մարդ. Միության միջինից կրկնակի անգամ պակաս:

ՀՍՍՀ-ում բնակչության մահացության ցածր մակարդակը պայմանավորված է երկու գործոնով: Նախ, զարգացած երկրների և մեր երկրի եվրոպական մասի համեմատությամբ, Հայկական ՍՍՀ-ն ունի խիստ երիտասարդ բնակչության կազմ, որտեղ ցածր է «ծեր» բնակչության տոկոսը: Մինչդեռ զարգացած երկրները բնութագրվում են «ծեր» բնակչությամբ, որի հետևանքով ցածր է ոչ միայն ծնունդը, այլև բարձր է ընդհանուր մահացությունը՝ մանուկների խիստ պակաս մահացության պայմաններում: Վաղուց ի վեր բնակչության «ծերացման» բավականին բարձր ցուցանիշներ ունեն Ֆրանսիան, Շվեդիան, Շվեյցարիան, Բելգիան, Դանիան, Անգլիան, ԱՄՆ-ը, ԳՖՀ-ն, ԳԴՀ-ն և այլ երկրներ: «Ծերացման» ուղու վրա են Իտալիան, Ֆինլանդիան, Հյուսիսային Իռլանդիան, Հոլանդիան, Կանադան, ինչպես նաև մի շարք եվրոպական սոցիալիստական երկրներ:

Զարգացող երկրների համեմատությամբ Հայկական ՍՍՀ-ն ունի տարիքավոր մարդկանց ավելի բարձր տեսակարար կշիռ և, դրանով հանդերձ, մանուկների խիստ նվազ մահացություն: Այդ երկրներում մինչև մեկ տարեկան դառնալը 1000 ծնվածից մեռնում է 120—150 երեխա, իսկ Հայաստանում՝ 5—6 անգամ պակաս:

Երեխաների մահացության նվազումը, որը հանգեցնում է կյանքի տևողության երկարացմանը, որոշակի ժամանակի ընթացքում պայմանավորում է բնակչության տարիքային կազմի փոփոխությունը, հօգուտ մեծահասակների: Արտադրաուժերի ցածր մակարդակ ունեցող երկրներում, ուր բացակայում է բժշկական պատշաճ սպասարկումը, մանուկների մահացությունը բարձր է, իսկ ծննդաբերության, ինչպես նաև մահացության բարձր մակարդակը «նոսրացնում է մարդկանց շարքերը՝ դեռևս ծերության տարիքին չհասած»: Դա է պատճառը, որ այդ երկրներում բնակչության (հետևապես մահացությունների) ընդհանուր թվի մեջ նվազում է տարեց մարդկանց տեսակարար կշիռը: Այդպիսի երկրներում տարեց մարդկանց թիվը շատ քիչ է, ցածր՝ կյանքի տևողությունը: Մինչդեռ երեխաների մահացության նվազման շնորհիվ կյանքի տևողության ավելանալը հանգեցնում է մեծահասակների, ուստի և մահացածների ընդհանուր թվում տարեց մարդկանց տեսակարար կշռի բարձրացմանը: 1980 թ. բնակչության 1000 շնչի հաշվով ԳԴՀ-ում և Հունգարիայում մահացել



է 13,6—14,2, Ավստրիայում, Անգլիայում, ԳՖՀ-ում, Չեխոսլովակիայում, Բելգիայում՝ 11,4—12,2, Դանիայում, Բուլղարիայում, Ռումինիայում, Ֆրանսիայում, Նորվեգիայում՝ 10—11 մարդ: 1940 թ. մինչև օրս Շվեդիայում, բնակչության 1000 շնչի հաշվով, մեռնում է 10—11 մարդ: Մինչդեռ մի շարք տարիների ընթացքում մինչև մեկ տարեկան երեխաների մահացությունն անընդհատ նվազում է: Ավելին, Շվեդիան աշխարհում բնութագրվում է այդ տարիքի երեխաների մահացության ամենացածր գործակցով, ինչպես նաև բնակչության կյանքի բավականին երկար տևողությամբ:

ՍՍՀՄ-ի բոլոր այն հանրապետություններում, որտեղ բնակչության տարիքային կազմում բարձր է երեխաների տեսակարար կշիռը, համեմատաբար բարձր է նաև բնակչության կրթական, կուլտուրական և ընդհանրապես սպասարկման մակարդակը, իսկ մանկամահացության ցուցանիշը շատ ավելի ցածր է՝ մահացության ընդհանուր բարձր մակարդակի պայմաններում: Օրինակ, ընդհանուր մահացության մակարդակը ՍՍՀՄ-ում միջինից բարձր է մերձբալթյան հանրապետություններում, ՌՍՖՍՀ-ում, Ուկրաինայում, Մոլդավիայում, մինչդեռ անդրկովկասյան և միջինասիական հանրապետություններում այն ՍՍՀՄ միջինից ցածր է, այնինչ մանուկների մահացությունը վերջիններում ավելի բարձր է: 70-ական թվականների սկզբին Հայկական ՍՍՀ-ում նկատվում է մահացության ընդհանուր գործակցի նվազում, որը ուղեկցվում է մանկական և պատանեկան տարիքի բնակչության մահվան գործակիցների ավելի արագ իջեցմամբ: Այսինքն՝ բնակչության բնական աճն ավելացել է ոչ միայն մահացության ընդհանուր գործակցի նվազման համեմատ, այլև կյանքի միջին տևողությունը ավելանալու չափով: Այդ ընթացքում ՍՍՀՄ-ում, եթե բնակչության մահվան ընդհանուր ցուցանիշը կայունացել է և, նույնիսկ, բարձրանալու միտում է դրսևորել, ապա ՀՍՍՀ-ում մինչև 1970 թ.՝ իջել է: ՍՍՀՄ-ում մանկական և պատանեկան տարիքում մահացության նվազումը ուղեկցվում է մեծահասակների խմբում մահացությունը բարձրանալու հետ՝ բնակչության ընդհանուր թվի մեջ «ծերերի» տեսակարար կշռի ավելանալու կապակցությամբ: 1980 թ. կեսերից և հետագայում հենց այդ նույն գործոնի հաշվին մահացությունը կշարունակի բարձրանալ նաև Հայկական ՍՍՀ-ում: Այսպիսով, Հայաստանում նույնպես կսկսի գործել զարգացած երկրներին հատուկ այն օրինաչափությունը, որ տարիքային խմբի ծայրաթևերից մեկում մահացության նվազումը կկանխորոշի նրա աճը մյուս ծայրաթևում:

Սովետական Հայաստանը բազմազգ հանրապետություն է: Թեև Հայկական ՍՍՀ-ն մյուս հանրապետությունների շարքում ունի տվյալ հանրապետության հիմնական ազգությունը ներկայացնող բնակչության ամենաբարձր ցուցանիշը (1979 թ. հայերը կազմում էին հանրապետության բնակչության 89,7 տոկոսը), այնուամենայնիվ ՍՍՀՄ-ում բնակվող հայ բնակչության 34,6 տոկոսն ապրում է հանրապետության սահմաններից դուրս: Սովետական Հայաստանում բնակվում են նաև ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր, ուկրաինացիներ, ասորիներ, վրացիներ, հույներ և այլ ազգեր ու ազգություններ (տե՛ս ստորև բերվող աղյուսակը): Ամենաբարձր բնական աճով աչքի են ընկնում ադրբեջանցիներն ու քրդերը:

Աղյուսակ 3

Հայկական ՍՍՀ բնակչության ազգային կազմը (հազար մարդ, մարդահամարների տվյալներով)

| Ազգությունները | 1926 | 1939 | 1959 | 1970 | 1979 | 1979 թ. 1959 թ. նկատմամբ |
|---|---|---|---|---|---|---|
| Ամբողջ բնակչությունը | 881,3 | 1282,3 | 1763,0 | 2491,9 | 3037,3 | 172,3 |
| հայեր | 743,6 | 1069,0 | 1551,6 | 2208,3 | 2725,0 | 175,6 |
| ադրբեջանցիներ | 84,0 | 130,9 | 107,7 | 148,2 | 160,8 | 149,3 |
| ռուսներ | 19,5 | 51,5 | 56,5 | 66,1 | 70,3 | 124,4 |
| քրդեր | 15,3 | 20,5 | 25,6 | 37,5 | 50,8 | 198,4 |
| այլ ազգություններ | | | | 31,8 | 30,4 | — |

# ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Լ. Պ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական
կրթության մինիստր

*ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՊԱՆԾԱԼԻ 60-ամյակը մեր հանրապետության աշխատավորները դիմավորեցին նյութական և հոգևոր կյանքի բոլոր ասպարեզներում ձեռք բերած խոշոր հաջողություններով։*

*Շատ դժվարին է եղել մեր հանրապետության անցած ճանապարհը։ Սովետական իշխանությունը Հայաստանում շատ ծանր ժառանգություն էր ստացել։ Արդյունաբերական արտադրանքը 1920 թվականին 1913 թվականի առանց այն էլ ցածր մակարդակի համեմատությամբ կրճատվել էր 12 անգամ։ Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ ներկայումս Հայաստանը վերածնվել, կերպարանափոխվել ու դարձել է զարգացած արդյունաբերության ու գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու մշակույթի երկիր։ Ընդամենը քսան տարում հանրապետության արդյունաբերական արտադրանքն աճեց ավելի քան 32 անգամ, իսկ այսօր արդեն Հայաստանը տալիս է 40 անգամ ավելի շատ արտադրանք, քան նախապատերազմյան 1940 թվականին։ Մեծ չափերով զարգացել է գյուղատնտեսությունը, անճանաչելիորեն փոխվել են հայ գյուղը, գյուղացու ապրելակերպը։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքն աճել է 5,3 անգամ։*

*Հատկապես մեծ են հասումները կրթության, գիտության, գրականության, արվեստի և մշակույթի այլ բնագավառներում։*

*Անառարկելի փաստ է, օրինակ, որ գրի, գրականության, մշակույթի փառավոր ավանդույթներ ունեցող մեր ժողովուրդը, օտար զավթիչների կողմից անասելի արհավիրքների ենթարկվելով, հասել էր այն վիճակին, որ 1920 թ. Հայաստանի բնակչության 84,7 տոկոսն անգրագետ էր։ Սովետական Հայաստանը վաղուց արդեն համատարած գրագիտության երկիր է։ Մեծ է այն ավանդը, որ մուծել և մուծում են հայ գիտնականները սովետական և համաշխարհային գիտության մեջ։ Հայաստանը 1940 թվականին ուներ ընդամենը 37 գիտական հիմնարկություն՝ 430 գիտաշխատողներով։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական մասնաճյուղի 10 հիմնարկություններում աշխատում էին ընդամենը 145 հոգի։ Այսօր Հայաստանի 100-ից ավելի գիտահետազոտական հիմնարկություններում աշխատում են մոտ 20.000 գիտաշխատողներ։ Հայաստանն ունի գիտությունների ավելի քան 700 դոկտորներ, մոտ 6.000 թեկնածուներ։ Միայն ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի համակարգի 33 հիմնարկություններում աշխատում են մոտ 4.000 գիտաշխատողներ։*

*Սովետական Հայաստանի այս հասումների, նրա տնտեսության զարգացման, հոգևոր կյանքի առաջընթացի գործում շատ մեծ է հայ մտավորականության դերը, որի ստեղծմանը մեծապես նպաստել է Հայաստանի բարձրագույն դպրոցը։ Սովետական Հայաստանի ամենամեծ նվաճումներից մեկն է բարձրագույն կրթության հիմնադրումն ու զարգացումը, որն իր հերթին խթանել է մեր հանրապետության առաջընթացը։ Հանրապետության վերելքին համըն-*



*թաց, ժողովրդական տնտեսության, գիտության ու մշակույթի պահանջմունքներին համապատասխան բացվել են նոր բուհեր, ֆակուլտետներ, ստեղծվել նոր մասնագիտություններ։*

*Բեղուն ուղի է անցել Հայաստանի բարձրագույն դպրոցը։ Ճիշտ է, հայ ժողովուրդը մշակութային, այդ թվում կրթության հարուստ պատմություն ունի, նույնիսկ միջին դարերում մենք ունեցել ենք բարձր տիպի դպրոցներ՝ համալսարաններ Անիում, Գլաձորում (որի 700-ամյակը, ի դեպ նշվելու է 1983 թ.), Տաթևում և այլուր, որոնցում ուսանել ու աշխատել են ժամանակի մեծագույն մտածող-գիտնականները, սակայն, դառը ճակատագրի բերումով, շատ վաղ զրկվել ենք ոչ միայն պետականությունից, այլև հետագայում նաև կրթական այդ օջախներից և մինչև սովետական կարգերի հաստատումը փաստորեն բարձրագույն դպրոց չենք ունեցել։ Ռուսաստանի 105 բուհերը, որտեղ սովորում էին ընդամենը 127,4 հազար ուսանողներ, գտնվում էին միայն Ռուսաստանի կենտրոնական քաղաքներում։*

*Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից հետո կուսակցությունն ու կառավարությունը հատուկ ուշադրություն նվիրեցին Ռուսաստանի նախկին ծայրամասերում՝ ազգային հանրապետություններում, բարձրագույն կրթության զարգացմանը։ Գործունեության ասպարեզ չունենալու պատճառով նախասովետական Ռուսաստանում և եվրոպական երկրներում բարձրագույն կրթություն ստացած շատ փոքրաթիվ երիտասարդներ են ժամանակին վերադարձել Հայաստան։ Դրա հետևանքով էր, որ 1922 թվականին՝ Սովետական Միության կազմավորման տարում, Հայաստանում աշխատում էին բարձրագույն կրթությամբ ընդամենը 12 գյուղատնտես, 73 բժիշկ, 107 ուսուցիչ և մի քանի ինժեներ։*

*Հայ առաջադեմ գործիչների՝ Խաչատուր Աբովյանի, Ստեփանոս Նազարյանցի, Միքայել Նալբանդյանի, Սմբատ Շահազիզի, Հովհաննես Թումանյանի և այլոց երազանքն է եղել հայերեն լեզվով բարձրագույն դպրոց ունենալը, որը կենսագործվեց միայն սովետական իշխանության օրոք։ Սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրերից Հայաստանի կոմկուսը և կառավարությունը մեծ ջանքեր գործադրեցին քայքայված տնտեսությունը վերականգնելու հետ մեկտեղ կրթական գործի բարելավման, մշակույթի զարգացման նպատակով։*

*Հայ ժողովրդի հոգևոր կյանքի զարգացման համար էական նշանակություն ունեցան սովետական նորաստեղծ իշխանության երեք շատ կարևոր դեկրետները։ Դրանցից մեկը 1920 թ. դեկտեմբերի 6-ի դեկրետն էր, որով հանրապետության սահմաններում հայոց լեզուն ճանաչվեց որպես պետական լեզու։ Այդ փաստը կոմունիստական կուսակցության լենինյան ազգային ճիշտ քաղաքականության առաջին վառ դրսևորումներից մեկն էր։ Երկրորդը՝ նույն թվականի դեկտեմբերի 17-ի դեկրետն էր, որով եկեղեցին անջատվեց պետությունից, իսկ դպրոցը՝ եկեղեցուց, և ժողովրդական կրթության գործն առաջին անգամ դրվեց նոր, պետական-գիտական հիմքերի վրա։ Երրորդը՝ 1920 թ. դեկտեմբերի 28-ի որոշումն էր Երևանի ժողովրդական համալսարանի հիմնադրման մասին։*

*Քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման, ժողովրդական կրթության ծավալման համար անհրաժեշտ էին բարձրորակ մասնագետներ, որոնք կարող էին պատրաստվել միայն բարձրագույն դպրոցում։ 1922 թ. Հայաստանում գործում էր միայն մեկ բուհ՝ Երևանի ժողովրդական համալսարանն իր վեց ֆակուլտետներով, 490 ուսանողներով և 23 դասախոսներով։ Համալսարանն իր ուրույն տեղն ունի բարձրագույն կրթության սիստեմում։ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Երևանի պետական համալսարանն այսօր ունի 17 ֆակուլտետ, որոնցում 19 մասնագիտություններով կրթություն է ստանում մոտ 8.000 ուսանող։ Դասախոսների թիվն այստեղ կազմում է 939 հոգի, որոնցից ԳԱ ակադեմիկոսներ ու թղթակից-անդամներ են 29-ը, դոկտորներ ու պրոֆեսորներ՝ 96-ը, գիտությունների թեկնածուներ ու դոցենտներ՝ 518-ը։ Համալսարանն իր գոյության տարիներին պատրաստել է մոտ 40.000 բարձրորակ մասնագետներ։*

Անցած տարիներին Հայաստանում ընդլայնվել է բարձրագույն ուսումնական հաստատությունների ցանցը: Արդյունաբերության բազմազան ճյուղերի, շինարարության բնագավառի համար բարձրորակ ինժեներական կադրերի պատրաստման ու տեխնիկական գիտությունների զարգացման կարևոր կենտրոն է դարձել Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը, որը բոլորում է իր գոյության 50-ամյակը: Պոլիտեխնիկական ինստիտուտը ժողովրդական տնտեսության համար պատրաստել է մոտ 50.000 ինժեներական կադրեր: Դա շատ մեծ ավանդ է երկրի ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում: Ինստիտուտը մասնաճյուղեր ունի Լենինական և Կիրովական քաղաքներում: Ուսուցչական կադրերի պատրաստման շատ շնորհակալ գործը մեր հանրապետությունում իրականացնում են 4 մանկավարժական բուհեր՝ Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական, Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների, Լենինականի և Կիրովականի մանկավարժական ինստիտուտները: Մանկավարժական կադրեր պատրաստում է նաև համալսարանը:

Հայաստանում այժմ գործում են գյուղատնտեսական երկու բուհ՝ հայկական գյուղատնտեսական (հիմնադրվել է 1930 թ.) և անասնաբուժական-անասնաբուժական (հիմնադրվել է 1928 թ.) ինստիտուտները, որոնք մեծ գործ են կատարում գյուղատնտեսության մասնագետների պատրաստման և գիտության այդ ճյուղի զարգացման ասպարեզում:

Ժողովրդական առողջապահության կադրերի պատրաստման դարբնոցն է Երևանի բժշկական ինստիտուտը (հիմնադրվել է 1930 թ.): Դպրոցների համար ֆիզկուլտուրայի դասատուներ և մարզիկներ է պատրաստում ֆիզկուլտուրայի ինստիտուտը: Մեր հանրապետությունում գործում են արվեստի երկու բուհ՝ Կոմիտասի անվան կոնսերվատորիան (հիմնադրվել է 1923 թ.) և գեղարվեստաթատերական ինստիտուտը (հիմնադրվել է 1944—1945 թթ.), որոնք կարևոր դեր ունեն արվեստի բնագավառը բարձրորակ մասնագետներով ապահովելու գործում:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թ. ապրիլի 16-ի որոշմամբ համալսարանի տնտեսագիտական և ապրանքագիտության ֆակուլտետների և Մոսկվայի կոոպերատիվ ինստիտուտի ֆակուլտետի մասնաճյուղի հիման վրա ստեղծվեց մեր հանրապետության 13-րդ բուհը՝ Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտը: Այսպիսով, 1922 թվականի միայն մեկ բուհի՝ Երևանի ժողովրդական համալսարանի փոխարեն այսօր մեր հանրապետությունն ունի 13 բուհ, որոնցում սովորում են մոտ 59.000 ուսանողներ:

Բարձրագույն կրթության զարգացման կարևոր ցուցանիշներից մեկը բուհերում ուսանողների թվական աճն է: 1920 թվականին այն կազմել է 255 հոգի, 1940-ին՝ 11.700, 1960-ին՝ 20.165, այսօր՝ 58.780: 10.000 բնակչին ընկնող ուսանողների թվով (191) միութենական հանրապետությունների մեջ Հայաստանը գրավում է երրորդ տեղը Ռուսաստանի Ֆեդերացիայից և Լիտվայից հետո և գերազանցում է զարգացած կապիտալիստական այնպիսի երկրների, ինչպիսիք են Անգլիան, Ֆրանսիան, ԳՖՀ-ն, Ավստրիան, Իտալիան, Ճապոնիան և այլն:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և կառավարության հանձնարարությամբ հանրապետության պետպլանը և բարձրագույն կրթության մինիստրությունն արդեն մի քանի տարի է՝ ուսումնասիրում են ժողովրդական տնտեսության, գիտության, մշակույթի տարբեր ճյուղերի բարձրագույն կրթությամբ կադրերի պահանջարկը և դրանց հիման վրա կոնկրետ ճշգրտումներ մտցնում բուհերի ընդունելության պլաններում: Ընթացիկ հնգամյակում Հայաստանի բուհերի ուսանողների թիվն ավելանալու է շատ աննշան չափով, նկատի առնելով ժողովրդական տնտեսության հագեցվածությունը բարձրագույն կրթությամբ մասնագետներով: Տեղի են ունենալու կառուցվածքային որոշ փոփոխություններ: Շարունակվելու է որոշ չափով պակասեցվել ինժեներաշինարարական և մանկավարժական առանձին մասնագիտությունների կադրերի պատրաստումը և, ընդհակառակն, ավելացվելու են ռադիոտեխնիկական, բժշկական, տնտեսագիտական մասնագիտությունների կադրերի պատրաստումը՝ ելնելով դրանց մեծ պահանջարկից:



Հայաստանի բուհերում այսօր կարելի է ձեռք բերել 156 տարբեր մասնագիտություններ (1922 թ.՝ 6): Դրանք հիմնականում բավարարում են հանրապետության ժողովրդական տնտեսության, գիտության ու մշակույթի պահանջները: Բայց կան մի շարք մասնագիտություններ (դրանք Հայաստանի բուհերում բացակայում են), որոնց կադրերի պահանջարկը բավարարելու համար հանրապետությանն ամեն տարի արտամրցութային ընդունելության տեղեր են հատկացվում երկրի կենտրոնական բուհերում, ուր Հայաստանի հիմնական բնակիչ հանդիսացող պատանիներ ու աղջիկներ գործուղվում են սովորելու: Ավարտելուց հետո նրանք վերադառնում ու աշխատում են մեր հանրապետությունում:

Այդպիսի մասնագիտություններից են, օրինակ, պոլիգրաֆ, փայտամշակման արդյունաբերության ինժեներների, երկաթուղային տրանսպորտի շահագործման, կապի, արվեստի պատմության, բժշկական կիբեռնետիկայի և շատ այլ կարևոր մասնագիտություններ: 1982 թվականին երկրի 9 քաղաքների 28 բուհեր 44 մասնագիտություններով սովորելու են ուղարկվել 84 պատանիներ ու աղջիկներ, իսկ կոոպերացված հիմունքներով Թբիլիսիի և Բաքվի բուհերում 13 մասնագիտություններով սովորելու՝ 56 հոգի:

ՀԿԿ Կենտկոմն ու կառավարությունը միշտ էլ մեծ հոգատարություն են ցուցաբերել մեր հանրապետության առաջընթացին համապատասխան բարձրագույն դպրոցի զարգացումն ապահովելու նկատմամբ: Հայաստանի բարձրագույն դպրոցը երկրի զարգացման բոլոր փուլերում պատվով է կատարել բարձրորակ մասնագետներ պատրաստելու վերաբերյալ կուսակցության առաջադրանքը: Ուսանողական շատ սերունդներ են կրթվել ու դաստիարակվել այստեղ: Մեր բուհերը երկրին տվել են 212 հազարից ավելի մասնագետներ՝ ինժեներներ, գյուղատնտեսներ, մանկավարժներ, բժիշկներ, տնտեսագետներ, իրավաբաններ, բանասերներ, պատմաբաններ, արվեստի աշխատողներ և այլն, որոնք հաջողությամբ աշխատում են ինչպես մեր հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս:

Բարձրագույն դպրոցի զարգացումն արտացոլում է հանրապետության բուռն վերելքը: Եթե մինչև 1960 թ. անցած 40 տարիների ընթացքում մեր բուհերը պատրաստել էին շուրջ 47.000 մասնագետներ, ապա դրանից հետո անցած 22 տարում՝ ավելի քան 165 հազար (3,5 անգամ ավելի):

Ժողովրդական տնտեսության արագ զարգացումը նոր, ավելի բարձր պահանջներ առաջադրեց բարձրագույն դպրոցին հատկապես իններորդ, տասներորդ հնգամյակների տարիներին: Միայն 1971—1982 թթ. բուհերում պատրաստվել են մոտ 122 հազար մասնագետներ կամ սովետական իշխանության բոլոր տարիներին Հայաստանի բուհերի պատրաստած կադրերի ավելի քան 57 տոկոսը: Այդ թվում՝ մոտ 38 հազար ինժեներներ, 12.000-ից ավելի գյուղատնտեսության մասնագետներ, մոտ 53.000 մանկավարժներ, 6.500-ից ավելի տնտեսագետներ, մոտ 10.000 բժիշկներ և ֆիզկուլտուրայի մասնագետներ, ավելի քան 3.000 արվեստի աշխատողներ և այլն: 1939 թվականի 45-ի դիմաց, մեր հանրապետության քաղաքային վայրերում այսօր 1.000 աշխատողից 186-ը (1979 թ. մարդահամարի տվյալներով) ունեն բարձրագույն կրթություն:

Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում են իրենց կրթությունն ստացել մեր գրողների 86 տոկոսը, կոմպոզիտորների՝ 93, ճարտարապետների՝ 92, նկարիչների՝ 66, բուհերի պրոֆեսորների ու դասախոսների՝ 90, գիտնականների՝ 89 տոկոսը: Այսօր ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի 93 ակադեմիկոսների ու թղթակից-անդամների կազմում 72-ը (77,4 տոկոսը), իսկ նախագահության 14 անդամներից 10-ը (71,4 տոկոսը) Հայաստանի բուհերի նախկին սաներն են: Հայաստանի «Նաիրիտ» գիտաարտադրական խոշոր միավորումում բարձրագույն կրթությամբ ավելի քան 1.000 աշխատողներից 806-ը (80,2 տոկոսը), «Հայէլեկտրամեքենա» միավորումում աշխատող 868-ից 707-ը (81,4 տոկոսը) կրթություն են ստացել Հայաստանում:

Բարձրագույն կրթության զարգացումը մեր կառավարությանը հնարավորություն ընձեռեց 1958 թվականից սկսած Հայաստանի բուհերում մասնա-

գետներ պատրաստելու նաև արտասահմանյան երկրների համար։ Հանրապետության բուհերն արտասահմանյան երկրների համար արդեն պատրաստել են մոտ 1.200 մասնագետներ, որոնք հաջողությամբ աշխատում են իրենց երկըրներում։

Երևանի համալսարանի արտասահմանյան քաղաքացիների նախապատրաստական ֆակուլտետը մոտ 2.400 պատանիների ու աղջիկների համապատասխան գիտելիքներ է տվել երկրի տարբեր բուհերում իրենց կրթությունը շարունակելու համար։

Այսօր Սովետական Հայաստանը դարձել է սփյուռքահայ երիտասարդներից բարձրագույն կրթությամբ մասնագետների պատրաստման հիմնական կենտրոնը, որտեղ նրանց հնարավորություն է ընձեռվում կրթություն ստանալու մայրենի լեզվով, առանց ուսման վարձի։ Անցած տարիներին հանրապետության բարձրագույն դպրոցներում 32 երկրներից սովորել, ավարտել և արդեն աշխատում են 980 սփյուռքահայեր. Սիրիայից՝ 347, Լիբանանից՝ 248, Հորդանանից՝ 69, Իրաքից՝ 61, ԱՄՆ-ից՝ 32, Ֆրանսիայից՝ 20 հոգի և այլն։ Այս փաստով մենք իրավունք ունենք հպարտանալու, որովհետև ընդամենը 63 տարի առաջ էր, երբ հայ ժողովրդի միայն հատուկենտ զավակներն էին, որ, հաղթահարելով անասելի դժվարություններ, կարողանում էին մեկնել Ռուսաստան կամ եվրոպական երկրներ՝ բարձրագույն կրթություն ստանալու։

Կուսակցությունը բարձրագույն դպրոցներից պահանջում է ժողովրդական տնտեսությունն ապահովել ոչ միայն անհրաժեշտ թվով կադրերով, այլև անընդհատ բարձրացնել նրանց մասնագիտական որակը։ ՍՍՀՄ բարձրագույն կրթության մինիստրությունը գիտության ու տեխնիկայի արդի մակարդակին համապատասխան կրկին վերանայել է բուհերի ուսումնական պլանները, որոնք առաջիկայում ներդրվելու են ուսումնական պրոցեսում։ Ուսումնական նոր պլանների ներդրումը պահանջում է նաև կատարելագործել ուսուցման մեթոդներն ու ձևերը, որոնց համակարգում, ինչպես միշտ, առաջնայինը մնում են դասախոսությունը, դրա որակը, գիտական մակարդակը։ Դասախոսության ընթացքում պետք է գիտականորեն և հստակ պարզաբանվեն արծարծվող պրոբլեմները՝ միաժամանակ հետապնդելով ուսանողների իմացական-հետազոտական կարողությունները զարգացնելու նպատակ։ Անհրաժեշտ է արմատապես բարելավել նաև սեմինար-պրակտիկ պարապմունքների կազմակերպումն ու մեթոդիկան, պայմաններ ստեղծել ուսանողների ինքնուրույն ստեղծագործական հակումների զարգացման համար։

Ուսուցման որակի բարձրացման գործում շատ մեծ է ամբիոնների դերը, որոնցում դեռևս դժբախտաբար կան այնպիսիները, որոնք թույլ են վերահսկում ուսումնական պրոցեսը, պատշաճ ուշադրություն չեն նվիրում դասալսումներին, դրանց բարեկամական-ստեղծագործական քննարկմանը։

Բուհերի գործունեության բարելավման համար կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հունիսի 29-ի «Բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և մասնագետների որակի բարձրացման մասին» որոշումը, որով նոր, պատասխանատու խնդիրներ դրըվեցին սովետական բարձրագույն դպրոցի առջև։ Մեր գլխավոր խնդիրն է կազմակերպել այդ որոշման անթերի իրականացումը։

Բուհերում ուսուցման որակի բարձրացման ամենակարևոր պայմաններից մեկը պրոֆեսորադասախոսական կազմի գիտական-որակական մակարդակի անընդհատ բարձրացումն է։ Այդ ասպարեզում կան լուրջ հաջողություններ։ Եթե 1972 թ. հունվարի 1-ի դրությամբ հանրապետության բուհերում աշխատող 3.810 պրոֆեսորներից ու դասախոսներից ակադեմիկոսներ, թղթակից-անդամներ, դոկտոր-պրոֆեսորներ էին 233-ը (6,1 տոկոս), գիտության թեկնածուներ-դոցենտներ՝ 1.315-ը (34,5 տոկոս), ապա 1982 թվականի հունվարի 1-ի դրությամբ արդեն 5.383 հոգուց դոկտոր-պրոֆեսորներ են 373-ը (7,0 տոկոս), գիտության թեկնածուներ-դոցենտներ՝ 2.328-ը (43,2 տոկոս)։ Այսպիսով գիտական աստիճան և կոչում ունեցող դասախոսների թիվն աճել է 9,5 տոկոսով։ 1971—1981 թվականների ընթացքում մեր բուհերի դասախոսներից դոկ-



տորական դիսերտացիաներ են պաշտպանել 160-ը, իսկ թեկնածուական՝ 1.035-ը։

Դասախոսական կադրերի պատրաստման գործում մեծ է ասպիրանտուրայի դերը։ 1928 թվականին Հայաստանում հիմնադրված համալսարանի առաջին ասպիրանտուրան ընդունեց ընդամենը 7 հոգի, որոնք հետագայում դարձան ճանաչված գիտնականներ, գործիչներ։ Այնուհետև ասպիրանտուրաներ հիմնադրվեցին նաև այլ բուհերում։ Դրանք հսկայական դեր են կատարել գիտական ու դասախոսական կադրերի պատրաստման գործում։ Այսօր արդեն 9 բուհերին կից գործող ասպիրանտուրաներում սովորում են ավելի քան 450 հոգի։ Միայն տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակների մեկ տարվա ընթացքում մեր հանրապետության բուհերում ասպիրանտուրա են ավարտել 590 հոգի։ Նրանցից 260-ը (44 տոկոս) պաշտպանել կամ ներկայացրել են իրենց դիսերտացիաները։ Ինչպես երևում է ցուցանիշներից, ասպիրանտուրայի արդյունավետությունը ցածր է, որը հետևանք է այն բանի, որ դեռևս բավարար չէ ասպիրանտների, երբեմն նաև նրանց գիտական ղեկավարների ընտրությունը։ Բուհերի ռեկտորատները պետք է վճռական միջոցներ ձեռնարկեն ասպիրանտական ուսուցման արդյունավետությունը բարձրացնելու համար։ Անհրաժեշտ է արմատապես բարելավել նաև գիտությունների դոկտորների պատրաստման գործը, ավելի ակտիվորեն օգտագործել գիտությունների թեկնածու դասախոսներից ավագ գիտական աշխատողի հաստիքի տեղափոխելու իրավունքը և նրանց հնարավորություն ընձեռել ավարտելու դոկտորական դիսերտացիաները։

Գիտահետազոտական աշխատանքը մեր բուհերում սկսել է զարգանալ դրանց հիմնադրման առաջին օրերից։ Այսօր, ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի տոնակատարության առնչությամբ հարկ է հիշել մեր անցյալի հայ մտավորականության այնպիսի կարկառուն ներկայացուցիչների, ովքեր, անվարան անցնելով սովետական իշխանության կողմը, ծանրակշիռ ավանդ մուծեցին սովետական գիտության զարգացման գործում։ Նրանցից են անվանի հայագետներ Հակոբ Մանանդյանը, Մանուկ Աբեղյանը, Հրաչյա Աճառյանը, Գրիգոր Ղափանցյանը, Արսեն Տերտերյանը, քիմիկոսներ Ստեփան Ղամբարյանը, Լևոն Ռոտինյանցը, Հակոբ Հովհաննիսյանը, բնագետներ Պապա Քալանթարյանը, Ավետիք Տեր-Պողոսյանը, բժիշկներ Համբարձում Քեչեկը, Վահան Արծրունին և մյուսները։

Մեր բուհերում աշխատող գիտնականները տասնամյակներ շարունակ պահպանել ու բազմապատկել են ավագ սերնդի ստեղծած լավագույն ավանդույթները։ Նրանցից են այնպիսի անվանի գիտնականներ, ինչպիսիք են ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը, որը տասնամյակներ շարունակ ղեկավարում է համալսարանի աստղաֆիզիկայի ամբիոնը, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ, մաթեմատիկոսներ Մխիթար Ջրբաշյանը, Սերգեյ Մերգելյանը, համալսարանի ռեկտոր Սերգեյ Համբարձումյանը, պատմաբաններ Ծատուր Աղայանը, Գևորգ Ղարիբջանյանը, լեզվաբաններ Էդվարդ Աղայանը, Գևորգ Ջահուկյանը, գրականագետ Էդվարդ Ջրբաշյանը, երկրաբան Արշալույս Գաբրիելյանը, ֆիզիկոս Գուրգեն Սահակյանը, փիլիսոփա Գևորգ Բրուտյանը և ուրիշներ։

Հայաստանի բուհերում եթե մինչև 1940-ական թվականները հիմնականում արժեքավոր գիտական հետազոտություններ էին կատարվում հումանիտար գիտությունների, մասնավորապես հայագիտության բնագավառում, ապա հետագայում սկսվել և այժմ էլ շարունակվում են բարձրարժեք հետազոտությունները հասարակական գիտությունների, մաթեմատիկայի, ֆիզիկայի, մեխանիկայի, կենսաբանության, քիմիայի, տնտեսագիտության, արվեստագիտության, մանկավարժության, տեխնիկական, բժշկական, գյուղատնտեսական և այլ գիտությունների ամենատարբեր մարզերում։ 40-ական թվականների վերջերից համալսարանում, օրինակ, պրոֆեսոր Արտաշես Շահինյանի ջանքերով ձևավորվեց մաթեմատիկոսների գիտական դպրոցը, որը շատ լայն ճանաչում գտավ։ Բուհերում կատարվում են ինչպես հիմնարար, այնպես էլ կիրառական մեծ նշանակություն ունեցող հետազոտություններ։

Դրվատանքի արժանի աշխատանք է կատարվում Երևանի պետական հա-

մալսարանի հայագիտության կենտրոնում, որը հիմնականում զբաղվում է հայ, ռուս և եղբայրական ժողովուրդների պատմության ու մշակույթի փոխադարձ կապերի ու փոխազդեցության ուսումնասիրությամբ։ Հայագիտության կենտրոնը և գրականության ամբիոնները սերտ կապի մեջ են ՍՍՀՄ գրողների միության և Ա. Մ. Գորկու անվան համաշխարհային գրականության ինստիտուտի հետ, համատեղ կազմակերպել են մի շարք գիտական կոնֆերանսներ, հրատարակել դրանց շատ արժեքավոր նյութերը՝ «Պուշկինը և ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունը», «Լերմոնտովը և ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունը», «Տոլստոյը և ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունը», «Չեխովը և ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունը» և այլ աշխատություններ։ Համալսարանում քվանտային էլեկտրոնիկայի և ոչ գծային օպտիկայի ճանաչված օջախ է դարձել խիտ միջավայրի ֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտը։ Այստեղ կարևոր արդյունքներ են ստացվել բյուրեղների հետազոտության և դրանց աճեցման պրոբլեմների, ոչ գծային օպտիկական երևույթների ուսումնասիրության և նոր լազերների ստեղծման ասպարեզում։ Այս ինստիտուտը գիտական սերտ կապի մեջ է ՍՍՀՄ ԳԱ սպեկտրոսկոպիայի, Լեբեդևի անվան ֆիզիկայի և Իոֆեյի անվան ֆիզիկատեխնիկական ինստիտուտների հետ։ Այդ համագործակցությունն զգալի արդյունքներ է տալիս։

Հետաքրքրական աշխատանքներ են տարվում պինդ մարմնի ֆիզիկայի ամբիոնում և համանուն պրոբլեմային լաբորատորիայում, որտեղ ռենտգենակառուցվածքային անալիզի բնագավառում ստացված արդյունքներն արժանացան հանրապետության պետական մրցանակի։ Համալսարանում կատարվող գիտական աշխատանքն ըստ արժանվույն գնահատվեց. ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1978 թ. ապրիլի 6-ի որոշմամբ Երևանի պետական համալսարանը դասվեց գիտության առումով երկրի առաջատար բուհերի շարքը։

Տեխնիկական գիտությունների զարգացման, դրանց որոշ արդյունքները ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու գործում զգալի աշխատանքներ են կատարվում Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում։ Այստեղ ճշգրիտ գեոդեզիական չափումների ավտոմատացման պրոբլեմային լաբորատորիայում մշակվել, նախագծվել ու պատրաստվել են հիդրոստատիկ և հիդրոդինամիկ հարթաչափման և հեռաչափման սիստեմներ, որոնք արդեն կիրառվում են երկրում։ Արդյունավետ աշխատանքներ են կատարվում նաև էլեկտրամոբիլաշինարարության, մեքենաշինության, շինարարության, քիմիական տեխնոլոգիայի, սարքաշինության և այլ բնագավառներում։ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի դեռևս 1977 թ. հունիսի 29-ի որոշմամբ հիմնադրվել է պոլիտեխնիկական ինստիտուտի փորձարարական գործարանը, որը պատրաստում է ինստիտուտի գիտնականների ստեղծած սարքերի փորձնական նմուշները։

Երևանի բժշկական ինստիտուտում գիտահետազոտական աշխատանքներ են կատարվում շրջապատող միջավայրի հիգիենայի, շնչառական օրգանների հիվանդությունների, ֆարմակոլոգիայի և այլ բնագավառներում։ Հայկական գյուղատնտեսական ինստիտուտում ստեղծվել են խաղողի բարձրորակ ու բարձր բերքատու նոր տեսակներ, գյուղատնտեսական վնասատուների դեմ արդյունավետ պայքարի նոր միջոցներ՝ պեստիցիդներ և այլն։

Հայկական մանկավարժական ինստիտուտի գյուղատնտեսության հիմունքների ամբիոնի երկարամյա սելեկցիոն աշխատանքի հիման վրա ստացվել է եգիպտացորենի նոր, ավելի բարձր բերքատու տեսակ, որը երաշխավորվել է արտադրության մեջ ներդնելու համար։ Այստեղ պատրաստվել է Հայաստանի գյուղատնտեսական քարտեզը։ Հետաքրքրական աշխատանքներ են կատարվել նաև մանկավարժության և այլ գիտությունների բնագավառում։

Եթե մինչև 70-ական թվականներն ընկած ժամանակահատվածը եղել է բուհերում գիտական ուղղությունների ձևավորման և հիմնավորման շրջան, իսկ գիտական արտադրանքներն արտահայտվել են առանձին ականավոր գիտնականների աշխատությունների ձևով, ապա վերջին տասնամյակը բնորոշվում է հետազոտությունների ծավալների զգալի աճով, խոշոր գիտական կոլեկտիվների ձևավորմամբ, որոնք ունակ են լուծելու ավելի խոշոր գիտական պրոբլեմ-



ներ՝ սկսած պրակտիկ ու տեսական խնդիրների հետազոտումից մինչև կոնկրետ սարքերի ու սարքավորումների նմուշների արտադրության կազմակերպումը։

Այսպես, եթե մինիստրությանը ենթակա բուհերում 1970 թ. գիտական հետազոտությունների ընդհանուր ծավալը կազմել է ընդամենը 2,5 մլն ռուբլի (1,6 մլն-ը՝ տնտեսական պայմանագրով), ապա 1982 թ. այն աճել է 4,4 անգամ և անցել 11 մլն-ից (8,8 մլն-ը՝ տնտեսական պայմանագրով)։ Միայն վերջին վեց տարում գիտական հետազոտությունների ծավալը մեր բուհերում կազմել է ավելի քան 50 մլն ռուբլի կամ 3 անգամ ավելի, քան իններորդ հնգամյակում։ Այս տարիներին մեր բուհերի գիտնականները հրատարակել են ավելի քան 300 մենագրություն, գիտական աշխատությունների շուրջ 120 ժողովածուներ, ավելի քան 8,2 հազար հոդվածներ, ստացվել է 252 հեղինակային իրավունքի վկայական, 2 պատենտ։ Պաշտպանվել են 23 դոկտորական և 333 թեկնածուական դիսերտացիաներ։

Բուհերի գիտական պոտենցիալի ավելի արդյունավետ օգտագործման նպատակով վերջերս հանգամանորեն վերլուծվեց և գնահատվեց դրանց գիտական հիմնարկությունների գործունեությունը։ ՍՄԿԿ XXVI և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարների որոշումների հիման վրա անհրաժեշտ փոփոխություններ են ենթարկվել դրանց աշխատանքի ուղղությունները, արդիականացվել թեմատիկան, վերացվել են փոքրիկ խմբերը։ ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունն ընդունեց և հաստատեց մինիստրությանը ենթակա բուհերի գիտական հիմնարկությունների ցանցի կարգավորման և դրանց գործունեության բարելավման վերաբերյալ հանրապետության առաջարկները։

Բուհերում հետազոտական աշխատանքն ունի նաև այլ կարևոր միտում, այն է՝ դրանցում ստեղծել գիտական այնպիսի մթնոլորտ, որում ուսանողության մասնագիտական կրթությունը հաջողությամբ զուգակցվի նրանց ինքնուրույն աշխատանքի, հետազոտական ունակությունների զարգացման հետ։ Այդ նպատակով էլ 1920-ական թվականներին բուհերում ստեղծվել են ուսանողական գիտական խմբակներ։ Այդպիսի առաջին գիտական խմբակները, որոնցում ընդգրկված էին, ճիշտ է, ոչ մեծ թվով ուսանողներ, ստեղծվել են համալսարանում դեռևս 1923—1924 թթ., որոնք ղեկավարում էին համալսարանի անվանի գիտնականները։

Բուհերում ուսանողական գիտական աշխատանքներն այսօր լայն թափ են ստացել։ Հետազոտական աշխատանքներում արդեն ընդգրկված են ցերեկային բաժինների ավելի քան 23 հազար ուսանողներ (ուսանողության 83 տոկոսը), որը մեծապես նպաստում է բուհերում պատրաստվող մասնագետների որակի բարձրացմանը։ Բուհերի կուսակցական կազմակերպություններն ու ռեկտորատները պարտավոր են առավել ակտիվացնել աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1978 թ. ապրիլի 6-ի «Բարձրագույն ուսումնական հաստատություններում գիտահետազոտական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու մասին» որոշումը կենսագործելու նպատակով և միջոցներ ձեռնարկել հիմնարար և կիրառական նշանակություն ունեցող գիտական հետազոտությունների արդյունավետությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։

Անցած 60 տարիներին Հայաստանի կոմկուսի և կառավարության ուշադրության կենտրոնում են եղել մեր բուհերի ուսումնանյութական բազայի ամրապնդման հարցերը։ Այսօր Հայաստանի բուհերը հիմնականում ապահովված են այն ամենով, ինչ անհրաժեշտ է բարձրորակ մասնագետների պատրաստումն ապահովելու համար։

Համալսարանը Աբովյան փողոցի վրա գտնվող փոքրիկ շենքից տեղափոխվել է իր շենքերի նոր համալիրը, երկու տարի առաջ շահագործման հանձնվեց նրա բանասիրական ֆակուլտետի մասնաշենքը, վերջերս՝ մարզական հարմարավետ ու գեղեցիկ համալիրը, կառուցվում է համալսարանի խիտ միջավայրի ֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտի շենքը, շուտով կըսկըսվի գրադարանի առանձին շենքի կառուցումը։

Շահագործման հանձնվեցին նաև պոլիտեխնիկական ինստիտուտի ռադիոտեխնիկական ֆակուլտետի 14 հարկանի շենքը Երևանում, նրա Լենինականի ու Կիրովականի մասնաճյուղերի շենքերն ու մարզական համալիրները։ Երկրորդ տարին է, ինչ սկսվել է պոլիտեխնիկական ինստիտուտի նոր համալիրի շինարարությունը, որի նախագծային արժեքը կազմում է 80 մլն ռուբլի։ Դրա ավարտից հետո Երևանում կստեղծվի երկրորդ տեխնիկական բուհը։ Պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի մասնաճյուղում ևս ստեղծվել են բոլոր նախադրյալները, որպեսզի տասնմեկերորդ հնգամյակում այստեղ ստեղծվի ինքնուրույն տեխնոլոգիական բուհ՝ թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունների համար ինժեներական կադրեր պատրաստելու նպատակով։

Ավարտվել է գյուղատնտեսական ինստիտուտի շենքերի շինարարությունը, ընթացքի մեջ է գեղարվեստաթատերական ինստիտուտի շենքերի շինարարությունը։ Երևանում կառուցվել են ուսանողական հանրակացարաններ՝ ավելի քան 15.000 տեղով, այդպիսիք կառուցվում են նաև Լենինականում ու Կիրովականում։

Ամեն տարի մեր բուհերի աշխատանքը կազմակերպելու համար կառավարությունը հատկացնում է ավելի քան 70 մլն ռուբլի։ Հատկանշական է, որ այդ գումարից մոտ 20 մլն-ը հատկացվում է կրթաթոշակ տալու նպատակով։ Հսկայական գումարներ են ծախսվում բուհերի լաբորատորիաներն ու կաբինետները ժամանակակից սարքավորումներով ապահովելու, դրանց գրքային ֆոնդը հարստացնելու համար։

Բուհերի դասախոսական կոլեկտիվների, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը եղել և մնում է ուսանողության գաղափարաքաղաքական դաստիարակության կազմակերպումը։ Վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարվել հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը կենսագործելու նպատակով։ Զգալի գործ է կատարվել ուսումնական պրոցեսի դաստիարակչական բնույթն ապահովելու առնչությամբ։

Բուհերի ռեկտորատները, կուսակցական կազմակերպություններն ամեն ինչ անում են կրթության ու դաստիարակության միասնությունն ապահովելու համար։ Ուսանող երիտասարդության դաստիարակության գործում շատ մեծ է հասարակագիտական առարկաների դերը, որոնց դասավանդման որակի բարձրացման բնագավառում զգալի գործ է կատարվել հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի «Մոսկվայի Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանում և Սարատովի Չերնիշևսկու անվան պետական համալսարանում հասարակական գիտությունների դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացման ասպարեզում կատարած աշխատանքի մասին» որոշումից հետո։ Ապագա մասնագետների կոմունիստական դաստիարակության գործի հաջողության համար շատ կարևոր է, որ բոլոր պրոֆեսորներն ու դասախոսները, անկախ մասնագիտությունից, զբաղվեն նաև ուսանողների դաստիարակությամբ և՛ դասի պրոցեսում, և՛ դրանից դուրս։

Բուհերում ուշադրության կենտրոնում է եղել նաև ուսանողության աշխատանքային դաստիարակությունը։ Այդ շարժման առաջին տարիներից սկսած հանրապետության բուհերի ուսանողական շինարարական ջոկատները երրորդ աշխատանքային քննաշրջանում ակտիվորեն մասնակցել են ոչ միայն Հայաստանի ժողովրդատնտեսական կարևոր օբյեկտների շինարարությանը, այլև աշխատել մեր երկրի շատ ու շատ կառույցներում։ Միայն 1982 թ. ամռանը մեր ուսանողական շինջոկատը կատարել է մոտ 40 մլն ռուբլու աշխատանք։

Բուհերի գործունեության մեջ տասնամյակներ շարունակ կարևորվում են արտաքին կապերը՝ համագործակցությունը Մոսկվայի, Լենինգրադի, Անդրկովկասի, Սովետական Միության մյուս հանրապետությունների, սոցիալիստական և այլ երկրների ուսումնական ու գիտական հիմնարկությունների հետ։ Վերջին տարիներս դրանք ավելի ընդլայնվել ու ամրապնդվել են։ Հանրապետության բուհերը գիտական կապերի մեջ են Սովետական Միության ավելի քան 120 ուսումնական հաստատությունների գիտական հիմնարկությունների ու կազմակերպությունների հետ։ Դրանք մեծ մասամբ հիմնված են ստեղծագործական փոխադարձ պայմանագրերի վրա, որոնցում նախատեսվում են միջոցառումների ամբողջ կոմպլեքս՝ համատեղ գիտահետազոտական աշխատանք, կադրերի պատրաստում, գիտական համաժողովների հրավիրում, փորձի փոխանակություն, ինքնատիպ գիտական սարքավորումների օգտագործում և այլն։ Առավել սերտ են կապերը Անդրկովկասի բուհերի միջև։ Հաճախ են կազմակերպվում համատեղ գիտական կոնֆերանսներ, գիտական պրոբլեմների մշակումներ, կոոպերացված հիմունքներով ուսանողների փոխանակություն և այլն։ Վերջերս ավարտվեց, օրինակ, Անդրկովկասի տեխնիկական բուհերի գիտատեխնիկական XXI կոնֆերանսը Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում։

Երևանի պետական համալսարանի գեոմորֆոլոգիայի և քարտեզագրության ամբիոնը, ՍՍՀՄ, Վրացական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների երկրաբանության ինստիտուտների հետ համատեղ, պատրաստում է «Կովկասի երկրաբանություն» մենագրությունը և Կովկասի գեոմորֆոլոգիական քարտեզը։ Օրգանական քիմիայի ամբիոնը Տաշքենդի տեքստիլ և թեթև արդյունաբերության ինստիտուտի հետ աշխատում է նոր, ավելի հեռանկարային պոլիմերների սինթեզման պրոբլեմի վրա։ Համալսարանը Մոսկվայի, Դնեպրոպետրովսկի, Ռոստովի, Թբիլիսիի, Բաքվի և մի շարք այլ համալսարաններից բացի սերտ կապեր ունի նաև մի շարք երկրների՝ Բրատիսլավայի Յա. Կամենսկու անվան (ՉՍՍՀ), Լյուբլինի Մարի Սկլոդովսկայայի անվան (ԼԺՀ), Ենայի (ԳԴՀ) համալսարանների հետ։ Հետզհետե ավելի են սերտանում գիտական կապերը ՀՍՍՀ ԳԱ և ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների հետ։

Մեր մի շարք բուհեր ակտիվորեն մասնակցում են միութենական մասշտաբով մշակվող բազմաթիվ նպատակային կոմպլեքսային թեմաների կատարմանը, որոնք դասվում են կարևորագույն պրոբլեմների շարքը և կոորդինացվում են ՍՍՀՄ ԳԱ կողմից։ Դրանց մասնակցում են նաև այլ հանրապետությունների գիտական հիմնարկություններն ու բուհերը։

ՍՍՀՄ ԳԱ և բժշկական գիտությունների ակադեմիայի հաստատած «Հիմնարար գիտությունները՝ բժշկությանը» կոմպլեքսային ծրագրով սպիտակուցների և նուկլեինային թթուների բիոօրգանական քիմիայի հետ կապված պրոբլեմի մշակմանը Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Էստոնիայի գիտնականների հետ միասին մասնակցում են նաև Երևանի պետական համալսարանի գիտնականները։

Այս ամենին պետք է ավելացնել նաև, որ միայն տասներորդ հնգամյակի տարիներին մեր բուհերից գիտական աշխատանքի, ստաժավորման, դասախոսություններ կարդալու, գիտական կոնգրեսների, կոնֆերանսների մասնակցելու և այլ նպատակներով արտասահմանյան երկրներ են գործուղվել մոտ 550 հոգի։ Մեծ թվով արտասահմանյան գիտնականներ են ընդունել մեր բուհերը։ Այդ կապերը մեծապես օգնում են նաև բուհական կոլեկտիվների ինտերնացիոնալ դաստիարակությանը։

Սովետական Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունների կոլեկտիվները ՍՍՀՄ կազմավորման 60-ամյա հոբելյանը դիմավորեցին մեծ հաջողություններով, իրենց առջև ծառացած պրոբլեմների գիտակցմամբ և լի են ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների լուծման վճռականությամբ։

---

# ԿԵՆՑԱՂԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄԸ ԵՎ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Կ. Հ. ՂԱՀՐԱՄԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

Կենցաղն ապրելակերպի ոչ արտադրական բնագավառն է, մարդու անմիջական գոյության սոցիալ-տնտեսական այն միջավայրը, որտեղ իրականացվում է նյութական և հոգևոր բարիքների սպառումը, վերարտադրվում կենսական ուժերը։ Դա գործունեության այնպիսի ոլորտ է, որը կապված է աշխատանքից ազատ ժամերին մարդու կողմից սննդի ու հագուստի, բնակարանի ու հանգստի, առողջության պահպանման, հաղորդակցման ու ժամանցի և այլ պահանջմունքների բավարարման հետ։ Այն հարուստ է բազմաթիվ ավանդույթներով, սովորույթներով, որոնք հաճախ կարգավորիչ նշանակություն են ունենում մարդու կենցաղային գործունեության համար։ Պահպանելով իր անհատական բնույթը, այն միաժամանակ պայմանավորված է սոցիալապես, ունի հստակ դասակարգային ու կոնկրետ պատմական բնույթ և չի կարող դիտվել որպես զուտ անձնական գործ։

Կ. Մարքսը ցույց է տվել, որ «միլիոնավոր ընտանիքներ ապրում են այնպիսի տնտեսական պայմաններում, որոնք տարբերում և թշնամաբար հակադրում են նրանց կենցաղի եղանակը, շահերն ու կրթությունը ուրիշ դասակարգերի կենցաղի եղանակին, շահերին ու կրթությանը» (Կ. Մարքս և Ֆ. էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972, էջ 652)։ Այդ հակադրության հիմքերը վերացվում են միայն սոցիալիստական հասարակարգում, երբ սկսվում է կենցաղի հետևողական ու պլանաչափ զարգացումը։ Կենցաղի պլանաչափ բարելավումը սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման կարևոր ուղղություններից է։ Այն սերտորեն առնչվում է կոմունիզմի կառուցման հիմնական խնդիրներից մեկի՝ նոր մարդու ձևավորման հետ։

Դարեր շարունակ կենցաղը խլել է աշխատավորության համարյա ողջ ազատ ժամանակը։ Ամենօրյա ոչ արտադրական կենցաղային գործունեությունը ծանր բեռ էր, մանավանդ կանանց համար և հնարավորություն չէր ընձեռում նրանց ակտիվ մասնակցելու հասարակական կյանքին։ Ահա ինչու Վ. Ի. Լենինը վճռական նշանակություն էր տալիս կենցաղի սոցիալիստական վերակառուցմանը։ «Իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ,— գրել է Վ. Ի. Լենինը,— որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքար (պետական իշխանությանը տիրապետող պրոլետարիատի ղեկավարությամբ) տնային այդ մանր տնտեսության դեմ, կամ, ավելի ճիշտ՝ նրա մասսայական վերակառուցումը որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն» (ԵԼԺ, հ. 39, էջ 28—29)։

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության հետագա սոցիալ-տնտեսական ողջ քաղաքականությունը խարսխվել է լենինյան այդ դրույթի վրա։ Կենցաղի բարելավմանը մեծ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ XXVI համագումարը, որը տասնմեկերորդ հնգամյակի և ամբողջ 80-ական թվականների համար առաջադրեց ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի ծավալուն ծրագիր։ Այն ներառում է կյանքի բոլոր կողմերը՝ սպառումը և



բնակարանը, կուլտուրան, հանգիստը, աշխատանքի ու կենցաղի պայմանները։ Համագումարի որոշումներում կարևոր տեղ է տրված բնակարանների հարմարավետությանը, դրանց բարեկարգմանը, տնային տնտեսության մեջ աշխատանքը դյուրացնելու արդյունավետ միջոցներին։ Հնգամյակի տարիներին կկառուցվեն 530—540 միլիոն քմ ընդհանուր մակերեսով բնակելի տներ, առավել ուշադրություն կնվիրվի քաղաքների ու ավանների կոմպլեքսային կառուցապատման հարցերին։ Որոշված է կենցաղային սպասարկումների իրացման ծավալը մեծացնել մոտ 1,4—1,5 անգամ, բարձրացնել պատվերների կատարման որակն ու սպասարկման կուլտուրան։ Կընդլայնվի կենցաղի ծառայության ձեռնարկությունների ցանցը, դրանք կապահովվեն ժամանակակից տեխնիկայով։ Այս ամենից բխում է, որ 80-ական թվականների համար բնորոշ է անցումը կենցաղի հիմքը կազմող առանձին գործոնների կառավարումից դեպի ամբողջ կենցաղի կոմպլեքսային կառավարումը։

Սոցիալիստական հասարակության մեջ մարդկանց կենցաղը բնութագրվում է միասնական տնտեսական հիմքով, իրավահավասարության, փոխադարձ օգնության ու համագործակցության հարաբերություններով, բարոյական ընդհանուր նորմերով։ Այդուհանդերձ, դեռևս գոյություն ունեցող սոցիալ-դասակարգային էական տարբերությունները դրսևորվում են նաև կենցաղում։ Դրանք խանգարում են հասարակության անդամներին՝ ունենալու սոցիալ-տնտեսական ու կուլտուրական առաջընթացի հավասար հնարավորություններ։ Հասարակության սոցիալ-դասակարգային և ազգային կառուցվածքի զարգացման հարցերի լուծման հետ մեկտեղ կհաղթահարվեն և այդ տարբերությունները, կհաստատվի միասնական կոմունիստական կենցաղ։

Հասուն սոցիալիզմի պայմաններում ավելի ու ավելի է սերտանում էկոնոմիկայի զարգացման և հասարակության սոցիալ-դասակարգային ու հոգևոր առաջընթացի փոխադարձ կապը։ Եվ, կենցաղային տարբերությունների վերացման հարցերը քննարկելիս, պետք է հիմք ընդունել այդ օրինաչափությունը։ Ընդ որում պետք է հաշվի առնել, որ կենցաղն ուղղակի և անուղղակի բազում թելերով կապված է հասարակական կյանքի համարյա բոլոր ասպարեզների, մարդու կենսագործունեության թերևս բոլոր ոլորտների հետ։ Ի տարբերություն կյանքի մյուս բնագավառների ու կենսագործունեության մյուս ձևերի, կենցաղն ունի այն առանձնահատկությունը, որ դրա շատ կողմեր, կենցաղային շատ հարաբերություններ իրենց էությամբ, շարժառիթներով դժվարությամբ են ենթարկվում սոցիոլոգիական հետազոտության ու վերլուծության։ Որոշ իմաստով դրանք ներփակ բնույթ ունեն։ Մինչդեռ կենցաղի բարելավման ու կատարելագործման համար անհրաժեշտ է առաջին հերթին ճիշտ պատկերացում կազմել այդ ասպարեզում գոյություն ունեցող տարբերությունների և դրանց սոցիալական արմատների մասին, որից հետո միայն կարելի է որոնել ու գտնել կենցաղի բարելավման արդյունավետ ուղիներ։

Ելնելով կենցաղի հետագա բարելավման նպատակով ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրներից՝ կարելի է նշել կենցաղային էական տարբերությունների երեք առանձին մակարդակներ տարբեր դասակարգերի ու խավերի կենցաղի միջև, տերիտորիալ իմաստով տարբերություններ՝ քաղաքի և գյուղի, երկրի ազգային ու տնտեսական տարբեր շրջանների միջև, և, վերջապես, միևնույն ընտանիքի շրջանակներում։

Տարբեր դասակարգերի ու խավերի, ինչպես և ներդասակարգային տարբերությունները կենցաղի բնագավառում բխում են սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի առկայությունից, արտադրաուժերի զարգացման մակարդակից։ Էական ներգործություն են ունենում ֆիզիկական և մտավոր աշխատանքների, արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության, ինչպես և վարձատրության միջև եղած տարբերությունները։ Դրանց վերացման հիմնական ուղիներն են՝ արտադրաուժերի հետագա զարգացումը, միասնական համաժողովրդական սեփականության հաստատումը, գյուղատնտեսական աշխատանքի վերածումը արդյունաբերականի տարատեսակի, աշխատանքի տարբեր տեսակների ստեղծագործական բնույթի խորացումը, աշխա-

տանքի վերածումը կենսական պահանջմունքի, հոգևոր և նյութական բարիքների առատությունը, սպառման հասարակական ֆոնդերի մեծացումը։

Սովետական հասարակության կյանքում վերջին տարիներին տեղի ունեցող փոփոխությունները հենց այդ բնույթի են։ Ամրապնդվում է բանվոր դասակարգի առաջատար դերը հասարակության կյանքում, աճում է նրա թիվը, գաղափարաքաղաքական զարգացման մակարդակը, ընդհանուր կրթական և պրոֆեսիոնալ որակավորման աստիճանը։ Այդ ամենի հետ մեկտեղ բարելավվում է բանվորների կենցաղը, բարձրանում կենցաղային կուլտուրան։

Գյուղատնտեսական արտադրության ինդուստրացման համեմատ խոր փոփոխություններ են տեղի ունենում կոլտնտեսային գյուղացիության կյանքում. կոլտնտեսականների աշխատանքն աստիճանաբար մերձենում է բանվորների աշխատանքին։ Գյուղում ավելի ու ավելի է մեծանում մեխանիզատորների, տեխնիկայի հետ կապված մյուս աշխատողների թիվը, բարձրանում գյուղացիության կրթական մակարդակը։ Կարևոր նշանակություն ունեն նաև կոլտնտեսականների աշխատանքի կազմակերպման, վարձատրության ձևերի փոփոխությունները, նրանց վրա բանվորների ու ծառայողների համար սահմանված սոցիալական ապահովության սիստեմի տարածումը։ Այդ ամենն արմատապես բարեփոխում է գյուղացիության կենցաղի հիմքերը։

Էական փոփոխություններ են տեղի ունենում նաև մտավորականության կյանքում։ Արագ աճում է նրա թիվը, բարձրանում նրա դերը ոչ միայն գիտության, կրթության ու կուլտուրայի, այլև նյութական արտադրության ոլորտում, հասարակության ողջ կյանքում։ Մյուս կողմից՝ բանվորների, կոլտնտեսականների աշխատանքի պրոցեսում ավելի ու ավելի են միահյուսվում ֆիզիկական ու մտավոր գործունեությունը։ Դասակարգային այս բոլոր փոփոխությունները հիմք են դառնում կենցաղում արտահայտվող դասակարգային տարբերությունների վերացման համար։

Առավել ակնբախ, քան դասակարգերի ու խավերի միջև, դրսևորվում են տերիտորիալ իմաստով կենցաղային տարբերությունները։ Ընդհանուր առմամբ քաղաքային կենցաղի մակարդակն ավելի բարձր է՝ էլեկտրիֆիկացման ու գազիֆիկացման, տնային տնտեսության մեքենայացման, կոմունալ-կենցաղային հարմարությունների, ընտանիքում պարտականությունների բաշխման առումով։ Այստեղ ավելի զարգացած են կենցաղային սպասարկման ծառայությունները, ավելի լայնորեն են արմատավորվում առաջավոր կենցաղային սովորույթները։ Սակայն քաղաքային կենցաղը ևս ունի չլուծված շատ խնդիրներ։ Դրանք կապված են բնակարանային հարցի ոչ լրիվ լուծման, կենցաղային սպասարկման ոչ բարձր մակարդակի հետ։ Խնդիրը բարդանում է նրանով, որ արդյունաբերության վիթխարի աճին զուգընթաց տեղի է ունենում բնակչության հոսք դեպի քաղաքները, վերջիններս աճում են աննախադեպ տեմպերով, հիմնվում են նոր քաղաքներ։ Քաղաքային կենցաղը դառնում է ավելի խայտաբղետ, տարբեր վայրերից եկած բնակչությունը միանգամից չի կարող յուրացնել քաղաքային կենցաղը։ Քաղաքում բոլորը չէ, որ կարողանում են ինչպես հարկն է օգտվել իրենց տրամադրված կոմունալ հարմարություններից, կենցաղի ծառայություններից, հանգիստն արդյունավետ անցկացնելու միջոցներից։

Կենցաղի բարելավման՝ առկա տարբերությունների հաղթահարման գործում մեծ դեր կարող են խաղալ հիմնարկ-ձեռնարկությունները, աշխատանքային կոլեկտիվները, համապատասխան այլ կազմակերպությունները՝ զարգացնելով կենցաղի, այսպես կոչված, հասարակական ձևերը։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում խնդիր է դրված. «Հոգատարություն ցուցաբերել աշխատողների աշխատանքի ու կենցաղի պայմանները բարելավելու, յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծագործական իրադրություն և սոցիալ-հոգեբանական առողջ մթնոլորտ ստեղծելու, միավորումներում, ձեռնարկություններում, հիմնարկություններում և մյուս կազմակերպություններում պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու, կուլտուրական պահանջմունքները բավարարելու, ֆիզկուլտուրան և սպորտը զարգացնելու նկատմամբ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 224—225)։



Որոշ ձեռնարկություններ իրենց աշխատողների համար կառուցում են հատուկ կուլտուր-կենցաղային մասնաշենքեր, բացում պատվերների խանութներ։ Աշխատավայրերում ստեղծվում են հանգստի սենյակներ, աստիճանաբար ավելի մեծ թվով մարդիկ են օգտվում հանգստյան տներից, մարզադաշտերից, կուլտուրայի ու հանգստի զանազան օջախներից։ Այդ ճանապարհով միանգամայն տարբեր մարդիկ ծավալում են համատեղ կենցաղային գործունեություն, որի ընթացքում փոխանցվում, ստեղծվում ու յուրացվում են կենցաղային առաջավոր հարաբերություններ, սովորույթներ։

ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ մեզ մոտ դեռևս կան տնտեսական այնպիսի ղեկավարներ, որոնք նման հարցերը համարում են ոչ կարևոր, երկրորդական։ Մինչդեռ «բոլորին հասկանալի է, որ մարդիկ ավելի լավ, ավելի սիրով են աշխատում այնտեղ, որտեղ մշտական հոգատարություն են զգում իրենց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման նկատմամբ։ Գործարանը, ֆերման նույն տունն են, որտեղ մարդն անցկացնում է իր կյանքի առնվազն մեկ երրորդը» (Նույն տեղը, էջ 94)։ Բևեռելով ուշադրությունը սոցիալական զարգացման հարցերի վրա՝ համագումարը խնդիր դրեց արդյունաբերական նոր օբյեկտների գործարկման մասին տրվող զեկույցներն իրական համարել միայն այն դեպքում, երբ կատարվում են նաև օբյեկտում բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարարության՝ պլանով նախատեսված ծրագրերը։

Յուրահատուկ բարդություններ ունի գյուղական կենցաղի բարելավումը։ Նախ՝ գյուղական կենցաղի վրա իր կնիքն է դնում օժանդակ տնտեսության առկայությունը, բնակչության կուլտուր-կրթական համեմատաբար ոչ շատ բարձր մակարդակը։ Եվ հետո, լինելով շատ ավելի փոքր բնակավայր, գյուղը կուլտուր-կենցաղային շինարարության, կենցաղային ծառայությունների ծավալման քիչ հնարավորություններ ունի, այստեղ համեմատաբար դանդաղ են ներթափանցում ու արմատավորվում կենցաղավարության արդի ձևերը։

Դեռևս քիչ չեն այն գյուղերը, որոնք կարիք ունեն վերակառուցման, նորացման, բարեկարգման, կուլտուր-կենդաղային պայմանների բարելավման։ Իսկ առանց այդ հարցերի լուծման դժվար է կազմավորել աշխատավորական կայուն կոլեկտիվներ, արդյունավետ օգտագործել գյուղում ստեղծված արտադրական պոտենցիալը։ Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում շեշտվել է հատկապես գյուղական բնակչության բնակարանային ու կենցաղային պայմանների բարելավման, տնային տնտեսության մեջ աշխատանքի դյուրացման, սպասարկման բոլոր տեսակների կուլտուրայի բարձրացման անհրաժեշտությունը։

Այսօր արդեն հանրապետության գյուղական բնակավայրերն ունեն բարետես, լուսավոր ու ընդարձակ տներ, որտեղ հաճախ քաղաքային կենցաղային հարմարությունները զուգորդվում են գյուղական կյանքի առանձնահատկությունների, գյուղաբնակների պահանջմունքների հետ, կան կուլտուրայի ու հանգստի օջախներ, տնային գործածության ժամանակակից շատ իրեր իրենց հաստատուն տեղն են գտել գյուղական կենցաղում։

Գյուղական կենցաղի բարելավման հիմքը գյուղատնտեսական արտադրության զարգացումն է։ Սակայն կապն այստեղ միակողմանի չէ։ Կենցաղի բարելավումն իր հերթին նպաստում է գյուղատնտեսության առաջընթացին։ Սպասարկման ոլորտի զարգացումը, բնակարանային շինարարությունը, կուլտուր-կենցաղային օբյեկտների կոմպլեքսները նպաստում են գյուղերում կադրերի ամրապնդմանը։ Լավ կենցաղը լավ տրամադրության, առողջության, մարդու մտավոր ու ֆիզիկական կարողությունների զարգացման գրավականն է, բարձր աշխատունակության նախապայմանը։ Հոգածությունը կենցաղի մասին հոգածություն է նաև արտադրության մասին։ ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացման հիմնական ուղղություններից մեկը համարվում է կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների բարելավումը գյուղում։

«Տասնամյակի ընթացքում գյուղական վայրերում կրկնապատկել կենցաղային սպասարկումների իրացման ծավալը։ Բարձրացնել բնակչության սպասարկման որակն ու կուլտուրան, ընդլայնել կենցաղային սպասարկումների

վսեմ իդեալների ձևավորման և այդ իդեալների համար պայքարելու պատրաստակամության հետ:

Պետք է միշտ հիշել, որ «կենցաղային մանրուք» կոչվածը բնավ էլ այն մանրուքը չէ, որի կողքից կարելի լինի անտարբերությամբ անցնել: Հարկավոր է ուշի-ուշով դիտել, հայտնաբերել այն նորն ու դրականը, որոնք այս կամ այն օղակում կարող են թեկուզև աննշան չափով բարելավել սպասարկման որակը:

Հայտնի է, օրինակ, որ մարդիկ շատ ժամանակ են կորցնում կենցաղային սպասարկման օբյեկտներում— վարսավիրանոցներում, լվացքատներում և այլուր: Մինչդեռ մարդու, նրա ընտանիքի ու երեխաների համար անիմաստ վատնված ժամանակը կորված է նաև հասարակության համար: Կենցաղի ծառայության մարմինները պետք է կարողանան իրենց օբյեկտների համար ընտրել աշխատանքի օպտիմալ ռեժիմ՝ ելնելով բնակչության համար առավել հարմարավետության սկզբունքից:

Չափազանց կարևոր է սպասարկման ձևերի կատարելագործումը: Երկրի որոշ քաղաքներում, օրինակ, գործում է տներից սպիտակեղենի ընդունման և լվացքի աբոնեմենտային ծառայություն, վարսավիրանոցային ծառայություններ, հագուստի անհատական պատվերների նախնական գրանցում, պատվերների ընդունում հիմնարկ-ձեռնարկությունների միջոցով: Այս գործում կարևոր դեր ունեն նաև մասսայական ինֆորմացիայի միջոցները, որոնք պետք է բնակչությանն իրազեկ պահեն կենցաղի ծառայության նոր տեսակներին, պրոպագանդեն նորը, առաջավորն այդ ասպարեզում:

Ընտանեկան-կենցաղային հարաբերությունների կատարելագործմանը, առաջավոր սովորությունների արմատավորմանը նպաստում են բնակչության կրթական մակարդակի աճը, մասսայական ինֆորմացիայի միջոցների մուտքը միլիոնավոր ընտանիքներ: Խոսելով կուլտուրայի մասին, Վ. Ի. Լենինը գրտնում էր, որ «այս գործերում միայն ա՛յն պետք է համարել նվաճված, ինչ որ մտել է կուլտուրայի մեջ, կենցաղի, սովորությունների մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 580):

Հասարակական կազմակերպությունները, մասսայական ինֆորմացիայի միջոցները, հասարակական սննդի, մշակույթի և հանգստի օջախները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն կենցաղային կուլտուրայի բարձրացման հարցերին: Այս առումով օգտակար ավանդույթ կա «Երևաննախագիծ» ինստիտուտում: Այստեղ պարբերաբար կազմակերպվում է կոլեկտիվի անդամների երեխաների ստեղծագործությունների ցուցահանդես: Աշխատանքից ազատ ժամերին այցելում են ընտանիքներով, ծանոթներով, բարեկամներով: Ստեղծվում է մի մեծ ընտանիք, որի ներսում կապերն աստիճանաբար ամրանում են, փոխանցվում իրար կենցաղային լավագույն սովորույթները:

Կենցաղային հարաբերությունների կատարելագործմանը կարող են նպաստել երևանյան կաթնատների տիպի սրճարանները (բարեփոխելով իրենց գործունեության բովանդակությունը), կենտրոնական և հայկական հեռուստատեսությունների որոշ հաղորդաշարեր և այլ միջոցներ:

Սոցիալիստական կենցաղի կատարելագործումը կոմունիստական կուսակցության սոցիալական քաղաքականության առաջնահերթ խնդիրներից է, նոր մարդու դաստիարակության կարևոր բնագավառներից մեկը:

---

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ԳՅՈՒՂԸ

**ԳՅՈՒՂԸ ՀԻՄԱ ԿՈՉՎՈՒՄ Է** Հոկտեմբեր: Հնամենի Սարդարապատն է դա, որի մերձակա դաշտում, 1918-ի մայիսին հայկական միացյալ ուժերը գլխովին ջախջախեցին թուրքական հրոսակներին: Դա մահու և կենաց ճերոսամարտ էր հայ ժողովրդի համար, ու այդ հաղթանակը բախտորոշ նշանակություն ունեցավ նրա գոյատևման և բուն իսկ ապրելու իրավունքի հաստատման համար:

Սակայն հայ ժողովրդի համար ամենաբախտորոշ դերը խաղաց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Դարակազմիկ այդ իրադարձության արձագանքները հասան Հայաստան: Հայ ժողովուրդը, 11-րդ կարմիր բանակի աջակցությամբ, մեկընդմիշտ թոթափեց բախտախնդիր դաշնակցության լուծը և հեղափոխական ավյունով ձեռնամուխ եղավ նոր կյանքի կառուցմանը: Հոկտեմբերով վերածնված Սարդարապատը վերակոչվեց Հոկտեմբեր:

Տարեցները հիշում, իսկ վավերագրերը վկայում են, որ նախասովետական Սարդարապատ գյուղն ուներ սոսկ հողաշեն, գետնամած խղճուկ խրճիթներ: Ջուրը չի բավել՝ հագեցնելու դարավոր անապատի արևախանձ հողի ծարավը:

Արտադրության հիմնական միջոցները եզը, արորն ու սայլն էին, մանգաղն ու գերանդին: Առանց ջրի, արտադրության խղճուկ միջոցներով անհնար էր մշակել ամլացած-լքված անապատը: Հողի մշակը, հայացքը հառած երկնքին, անձրև ու բարիք է հայցել արարչից, սակայն, ավա՜ղ, մնացել անարձագանք: Հանապազօրյա հացը դառնել անչափ դժվարին գործ ու նաև տառապանք է եղել նրա համար...

Այն օրերի մասին դառը հիշողություններ են պահպանել տարեցները, որոնք գրեթե մանկություն ու պատանեկություն չեն ունեցել, իսկ հետագա ողջ կյանքը նվիրել են նոր հասարակարգի կառուցմանը: Ահա նրանցից մեկը՝ 78-ամյա Սեդրակ Քալաշյանը: Հաղթանդամ, իր եռանդով տարիքից անհամեմատ ջահել երևացող այր է, թեև դեմքն ու ճակատը ակոսված են բազում կնճիռներով, գլուխը՝ զարդարված ձյունաթույր մազերով: Դյուրին չի եղել կյանքի ընթացքը. գաղթի ճամփան, բատրակի անմխիթար ճակատագիրն են բաժին ընկել նրան, բայց տոկացել է. հոգում անհատնում կրակ կար, բազուկներում՝ ուժ: Դարձավ կոմերիտական ու կուսակցական ակտիվիստ, եղավ կոլտնտեսության հիմնադիրներից մեկը ու հող մշակեց: Բրիգադ, կուսկազմակերպություն, գյուղական սովետ ու կոլտնտեսություն ղեկավարեց: Կրթությունը՝ լիկկայան, կոլխոզկազմակերպիչների երկամյա դպրոց: Հիշողությունը պայծառ է: Գյուղը,— ասում է,— Սարդարի բերդի պարսպի ներսում էր և շատ հետամնաց: Գյուղացին խեղճ էր ապրում, հազիվ էր ծայրը ծայրին հասցնում:

**...ԺԱՄԱՆԱԿՆԵՐԸ ՓՈԽՎԵՑԻՆ** Հայաստան աշխարհում, ու Մեծ հոկտեմբերի հրակարմիր դրոշը փողփողաց նաև Սարդարապատի վրա:

Ժամանակի ընթացքում Սարդարապատն անցավ հուշերի գիրկը, ու արևախանձ անապատում ծնունդ առած կանաչ օազիսում հառնեց այսօրվա Հոկտեմբերը: Վաղնջական ամուլ անապատի ու խառնիճաղանջ խղճուկ խրճիթների հետքն անգամ չի մնացել:

...Գյուղի վերելքն ունի իր խոսուն պատմությունը: Առաջընթացը պայմանավորված է նրա սոցիալիստական վերակառուցմամբ: Հողի աշխատավորները ճիշտ ընկալեցին գյուղատնտեսության կոոպերացման լենինյան գաղափարը և 1928-ին միավորեցին իրենց սակավ ինչքն ու անսպառ եռանդը, հիմնադրեցին Սովետական Հայաստանի առաջին կոլտնտեսություններից մեկը:

...Ամեն ինչ ջրից սկսվեց: Եվ ջուրն էլ վերափոխեց անապատի կյանքը: Մի իսկական հեղափոխություն էր Սարդարապատի ջրանցքների կառուցումը: Փոքրի ծնունդը՝ 1926-ին, մեծինը՝ 1932-ին: Հարյուրավոր հեկտարներով հողեր հարսնացան ու աշխատավոր մարդուն շռայլորեն պարգևեցին իրենց բարիքները:

Եվ ծաղկեց անապատը, կանաչ խնդություն

փռվեց չորս դին: Ընդարձակվեցին ցանքադաշտերը, ներդրվեցին գյուղատնտեսական նոր կուլտուրաներ, հիմնվեցին խաղողի ու պտղատու այգիներ: Հիմա Հոկտեմբերի կոլտնտեսությունն ունի 900 հեկտար վարելահող:

...ԵՐԵՍՆԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ վերջերին արդեն Հոկտեմբերի բոլոր ծխերը անդամագրվել էին կոլեկտիվ տնտեսությանը: Երբ ընկըռվեց Հայրենական մեծ պատերազմը, տընտեսությունը, ինչպես ասում են, ամուր հող ուներ ոտքերի տակ. կանգուն էր, առաջընթացի առաջին քայլերն էր անում: Ու թեև հարյուրավոր հոկտեմբերցիներ, հրաժեշտ տալով գյուղին, մեկնեցին ռազմաճակատ, այնուամենայնիվ, Հոկտեմբերը տոկաց, շարունակեց բերք ու բարիքի արարման հայրենաշահ գործը, հացահատիկ ու զանազան այլ մթերքներ ճամփեց հայրենին պաշտպանող մարտիկների համար, իր սուղ միջոցներից բաժին հանեց երկրի պաշտպանության ֆոնդին, իր համեստ նպաստը բերեց Մեծ հաղթանակի կոփման գործին...

Հետպատերազմյան տարիներ: Երկիրը բուժում էր պատերազմի հարուցած ծանր վերքերը: Հայրենի օջախը ոտք դրեցին պատերազմի քառուղիներով անցած հոկտեմբերցիները, ու նրանցից շատերը վերադարձան տըկար ու վիրավոր: Ինը տասնյակից ավելի հայորդիներ չտեսան տունդարձի ճամփան ու հիմա, քարակոփ արձան դարձած, անմահացել են ողջերի սրտերում:

Ողջերի համար հետպատերազմյան տարիները լուրջ քննաշրջան էին. տեխնիկան ու պարարտանյութերը պակաս էին, առաջընթացի քայլերը՝ վեհերոտ: Տնտեսության ընդհանուր վիճակն ու ձեռք բերվող վերջնարդյունքները չէին համապատասխանում ժամանակի հարահուն պահանջներին: Ահա տնտեսության ընդհանուր վիճակի չափանիշը. հիսունական թըվականներին և վաթսունականի սկզբներին տարեկան դրամական եկամուտները չէին գերազանցում 150 հազար ռուբլուց, ցածր էր և մեկ աշխօրի արժեքը: Հետո լուրջ տեղաշարժեր կատարվեցին, և արդեն 1981-ին դրամական համախառն եկամուտը կազմեց 3.670 հազար ռուբլի, իսկ մեկ աշխօրի արժեքը՝ 9 ռուբլի 17 կոպեկ: Տնտեսությունը տարին փակեց ավելի քան 560 հազար ռուբլու օգուտով: Անցած տարում՝ նույնչափ կամ ավելի բարձր մակարդակ...

Որո՞նք են հաջողությունների գաղտնիքը, գործոնները, գումարելիները: Չէ՛ որ ամեն մի թիվ ու արդյունք ինչ-որ իմաստ ունեն, դրանք մարդկանց մեծ եռանդի, տևական ջանքերի, ազնիվ տքնանքի ու անմնացորդ նվիրումի արգասիք են: Այդ ամենը պարզելու համար առաջին հերթին հարկ է հետադարձ հայացք ձգել կոլտնտեսության ու նրա մարդկանց անցած ճանապարհին: Շրջանի ամենախոշոր գյուղի ու տնտեսության բախտն ու վիճակը, ինչ խոսք, հետաքրքրում էին շրջանային կուսակցական ու սովետական մարմիններին: Հարկավոր էր բանիմաց ղեկավար: Թեկնածուն կար՝ Ջրաշենի անհամեմատ փոքր կոլտնտեսության նախագահ Սերյոժա Խաչատրյանը, որն արտադրության հմուտ ղեկավարի լավ համբավ էր վայելում: Կուսակցության Հոկտեմբերյանի շրջկոմի բյուրոն երաշխավորեց, իսկ հոկտեմբերցիները մեծ սիրով իրենց տնտեսության ղեկը հանձնեցին նրա ձեռքը: Հաշվի առան, որ տեղացի է, միջնակարգին հրաժեշտ է տվել և իսկույն բարեկամացել հողին, բրիգադավարություն արել, հետո կուսակցական ու հումանիտար բարձրագույն կրթություն ընտացել, կուսակցական աշխատանքի փորձ ձեռք բերել շրջանային կոմիտեում: Մի խոսքով, ինքը մարդկանց, կադրերին լավ գիտի, վերջիններս՝ նրան:

Տարիները, գործելակերպն ու արդյունքները եղան այն բանի անվիճելի հավաստումը, որ նախագահի թեկնածուի ընտրությունը ճիշտ է եղել: Շրջանի ղեկավարների հետ զրուցելիս, առաջին բանը, որ նկատեցի, նրանց տածած խորին հարգանքն ու մեծ վստահությունն էր Սերյոժա Խաչատրյանի նկատմամբ: «Հեղինակավոր անձնավորություն է,— ասաց կուսշրջկոմի առաջին քարտուղար Ռ. Գրիգորյանը,— ամենակարևորը՝ ստեղծել է առողջ կոլեկտիվ և նպաստավոր պայմաններ՝ արտադրության վերելքի համար. տնտեսությունը մեզ հոգսեր չի պատճառում, կադրերը բանիմաց են, աշխատում ու ղեկավարում են բարեխըղճորեն»:

Եվ արդեն տասնյոթ տարի Ս. Խաչատրյանը ղեկավարում է շրջանի ամենախոշոր տընտեսությունը: Մեկուկես տասնամյակից ավելի ժամանակամիջոցում նախագահը փորձ ու հմտություն է ձեռք բերել, շահել արտադրության մարդկանց սերն ու համակրանքը:

Անվիճելի են Հոկտեմբերի Լենինի անվան կոլտնտեսության աննախադեպ հաջողությունները: Նախագահն այդ ամենը համարում է կոլեկտիվ ջանքերի արգասիք: Հպարտությամբ է արտահայտվում արտադրության ճյուղերի ղեկավարների և նյութական բարիքներ արարող մարդկանց մասին: Իսկ առաջավորները շատ-շատ են: Ահա բրիգադավարներ Սուրեն Մեսրոպյանն ու Վարդան Վարդանյանը՝ ուսերին աշխատանքային քսան տարվա բեռ, կրծքներին՝ երկուական շքանշան, մեդալներ, անունների դիմաց՝ ամենաբարձր ցուցանիշները: Կառավարական պարգևներով է



նշվել նաև բրիգադավարներ Գրիգոր Սարգըսյանի ու Աղասի Մնացականյանի, Բաբկեն Պետրոսյանի ու Հովհաննես Սարգսյանի վաստակը: «Միշտ բարձր բերք են ստանում, գերակատարում են առաջադրանքները, հողը սիրող ու գործին նվիրված մարդիկ են»— նախագահի գնահատականն է նրանց հասցեին:

Բրիգադավար Սուրեն Մեսրոպյանին հանդիպում եմ դաշտը երիզող առվի մոտ: Հետեվում էր ձմերուկի սերմը զատող մեքենայի աշխատանքին և ցուցում-խորհուրդ էր տալիս այն սպասարկող կանանց: Բրիգադավարն այն կարծիքին է, որ՝ «Վատ հող չկա, վատ սերմացու չկա, միայն վատ մշակություն կա, լավ մշակեցիր, արդյունք կստանաս»: Եվ ստանում է... հեկտարից 200 ցենտներից ավելի խաղող, 50 ցենտներից ավելի հացահատիկ, 590 ցենտներ ձմերուկ, 700 ցենտներից ավելի պոմիդոր: Սակայն այս ցուցանիշները վերջին սահմանը չի համարում ու գտնում է, որ հեկտարից կարելի է ստանալ նաև 1000 ցենտներ բանջարեղեն, եթե «հողը լավ մշակվի, բույսերը լավ մշակվեն, ժամանակին սնուցվեն ու ջրվեն»: Եվ վստահեցնում է, որ իր բրիգադը դրան կհասնի ու պարենային ծրագրի կապակցությամբ որոշել է տարեկան առնվազն տասը ցենտներով ավելացնել բերքատվությունը:

Հոկտեմբերցիները մի անմեկնելի ու սերտ բարեկամություն են հաստատել հողի, բնության հետ: «Հողին տալ հարկավոր ամեն ինչ ու հողից ստանալ առավելագույնը»— այսպես են մտածում նրանք: «Բոլոր պայմաններն ընտեղծում ենք հողը ռացիոնալ օգտագործելու համար»— ասում է նախագահը: Աշնանացան բոլոր կուլտուրաների և կարտոֆիլի ազատված ցանքադաշտերը հողագործին պարգևում են երկրորդ բերքը՝ սիլոսացու եգիպտացորեն ու վարունգ: Այսինքն՝ կերի առատ պաշար և դրամական զգալի եկամուտ: Հիշում եմ բրիգադավար Սուրեն Մեսրոպյանի խոսքը. «Վերջին տարիներին միջնակների ու առվափոսերի հաշվին 30 հեկտար հող ենք յուրացրել»: Արտաքուստ չնչին թիվ է, բայց Արարատյան դաշտի ոռոգման պայմաններում դա հարըստություն է: Հիշեցի աշխատանքի վետերան Սեդրակ Քալաշյանի խոսքը: «Ուժեր ու միջոցներ չկային և հողերը մշակում էինք երեքչորս տարին մեկ անգամ: Հիմա մի քառակուսի մետր ազատ տեղ չկա, լրիվ մշակում ենք»: Ու այդ խոսքի առնչությամբ կուսբյուրոյի քարտուղար, մեխանիզատոր Գրիգոր Գալըստյանն ավելացրեց. «Ֆերմաների մոտ ավազուտ էր, մշակեցինք, որքան քարքարուտներ, ավազուտներ կային, մշակեցինք, հիմա մի թիզ անմշակ հող չկա: Կրկնակի բերք ենք ստանում մեկ հեկտարից»:

Ու նոր հողահատվածները խաղողի այգիներ են դարձել, ցանովի խոտհարքներ, բանջարանոց ու բոստան: Տասնյոթ տարի առաջ, երբ Ս. Խաչատրյանն ստանձնեց նախագահությունը, տնտեսությունն ուներ 150 հեկտար խաղողի այգի: Այժմ այդ թիվը հասել է՝ 330-ի:

Ժողովրդական իմաստությունն ասում է՝ խոսքը խոսք է բերում: 1965-ին ընդամենը կար 50—60 հեկտար բանջարանոց և 20 հեկտար՝ բոստան: Այժմ՝ չորս-հինգ անգամ ավելի: Նույնքան անգամ էլ աճել է հեկտարի բերքատվությունը: Դեռ ավելին՝ «Կանգուն» սորտի պոմիդորը հեկտարից 800, իսկ «Արաքսը»՝ 600 ցենտներից ավելի բերք է տալիս: «Եկող տարի միայն «Կանգուն» կցանենք»— ասում է նախագահը:

Փորձիր Հոկտեմբերի դաշտերում լինել ամռանը կամ աշնանամուտին: Ավելի քան 100 հեկտարի (1965-ին ուղիղ դրա կեսը) վրա քեզ կթովեն խորդենու կանաչ բույսերի կապտածփիտ ծաղիկները, կարբեցնի անխորժելի բուրմունքը: Հացահատիկի արտերի ոսկեդեղին ցոլքերը, կերաբույսերի կանաչ թավիշը, բանջարանոցի ու բոստանի համերաշխ մարգերը տևական հաճույքի զգացումով կհամակեն քեզ: Քեզ կթվա, թե ըմպում ես խաղողի ոսկեզօծված ողկույզներում հունցվող արևահամ գինին...

Ու երբ դաշտ ու այգի կբերքաթափվեն, հաշվեմատյանները, նախագահի ծոցատետրը ու մարդկանց հիշողությունը կհարստանան հողագործի ու այգեգործի զույլալ քրտինքով շաղախված, նրանց արևախանձ օրերի մեղվաջան արարումն արտացոլող թվերով: Պլանի՞ հետ համեմատենք, պարտավորությա՞ն, անշուշտ, կգերազանցեն 10—20 տոկոսով: Մեկուկես-երկու տասնամյակ ետ նահանջենք ու արևերես հանենք այն տարիների թվե՞րը, անշուշտ, կգերազանցեն չորս-հինգ և ավելի անգամ:

Եվ այս գոհացուցիչ արդյունքներում վճռական է ոչ միայն հողօգտագործումը: Բրիգադավար Սուրեն Մեսրոպյանի արտահայտության մեջ պարզապես մանկան հրճվանք եմ զգում. «Էն ժամանակ խմելու ջուր չէինք ճարում, հիմի ամեն մի դաշտում ջուր կա. արտեզյան 25 ջրհոր ենք փորել: Լաբորատոր ստուգմամբ պարզվել է, որ խմելու համար պիտանի են»: Երբ այս հարցի շուրջ խոսք եղավ նախագահի մոտ, նա ասաց, որ արտեզյան ջրհորները մեկ վայրկյանում տալիս են երկու հազար լիտր ջուր, որը լիովի բավարարում է և՛ բնակչության խմելու ջրի պահանջը, և՛ լրացնում է ոռոգման պակասը: Սակայն,— ավելացրեց,— մենք պայքարում ենք ջրի շռայլումների դեմ, սահմանում ենք

24-ժամյա հերթապահություն, կանխում հողերի գերխոնավությունն ու չորությունը:

«Գյուղատնտեսության մեջ սերմնաբուծությունը եկամտի լրացուցիչ աղբյուր է»: Նախագահի՝ փորձից ծնունդ առած հետևությունն է: «Նախկինում,— ասում է նա,— ստանում էինք քիչ քանակի պոմիդորի ու եգիպտացորենի սերմացու, իսկ հիմա զբաղվում ենք նաև ձմերուկի, սեխի, դդմիկի, պոմիդորի, պղպեղի, բադրիջանի, վարունգի, ռեհանի և բանջարեղենի այլ տեսակների սերմնաբուծությամբ»: Շրջանի ղեկավար մարմիններն ընդառաջեցին, ու տնտեսությունը դարձավ սերմնաբուծական: Կատակ չէ՝ ձմերուկի տասը և, ասենք, վարունգի չորս-հինգ տոննա սերմացու ստանալ: Իսկ ողջ սերմնաբուծության արգասիքը՝ ավելի քան 350 հազար ռուբլու դրամական եկամուտ: Նշանակում է՝ մի կարևոր ռեզերվ է կիրառվել, այն էլ հիմնավորապես:

Մի քանի տարի էր, ինչ վարում էր տնտեսության գործերը և իր համար պարզեց մի լուրջ պրոբլեմ. ձմռանը աշխատող ձեռքի մի մասը ազատ է մնում: Նախագահն սկսեց խորհել... Ու միտք հղացավ ստեղծել ջերմոցային տնտեսություն: Շրջանային ղեկավար մարմինները հավանություն տվեցին: Շուտով կազմվեցին նախագծեր ու նախահաշիվներ, և կոլտնտեսության միջոցներով ծնունդ առան ութ ջերմոցներ՝ ամեն մեկը հազար քառակուսի մետր տարածությամբ: Ձմռանն ստացվող պոմիդորից ու վարունգից՝ ավելի քան 70 հազար ռուբլու դրամական եկամուտ: Եվ, այսպես, երևան եկավ արտադրության աճի ևս մեկ լրացուցիչ, թաքնված ռեզերվ:

Գաղտնիք չէ. ծանր աշխատանք է խաղողագործությունը: Առանց մեքենայացման այս ասպարեզում ցանկալի արդյունքի հասնել չես կարող: Դա քաջ հայտնի էր նաև նախագահին ու մասնագետներին, և նրանց ջանքերը արդյունավետ եղան. մեքենայացվեցին 150 հեկտար լարային այգիների մշակությունն ու բուժումը: Նույնքան թմբային այգիները հարմարեցվեցին մեքենայական բուժման: Իսկ դա նշանակում է՝ երկու ամսվա ընթացքում օրական ազատել 60 աշխատող ձեռք, տնտեսել հսկայական միջոցներ:

«Այժմ բոստանային կուլտուրաները ցանում, մշակում ենք մեքենայով, բուժումն ու քաղհանը կատարում, բերքը հավաքում մեքենայով»: Բրիգադավար Սուրեն Մեսրոպյանի վկայությունն են: Նա ասում է, որ նախագահի նախաձեռնությամբ բոստանի շարքերը հարմարեցրել են մեքենայական հավաքին. մեքենան անցնում է շարքերի միջով, մնում է ձմերուկը կամ սեխը լցնել թափքը: Եվ խնայում են նյութական միջոցներ:

Գլխավոր հաշվապահ, կոմունիստ Արամայիս Գեղամյանը, որը երեք տասնամյակ հաշվային աշխատանքում է, պրպտող միտք ունի: Դրա մասին է վկայում նրա առաջարկը. լրացուցիչ վարձատրության ժամանակ խուսափել համահարթման սխալ մեթոդից: Չնայած գործը ծանր է ու բարդ, նա սկսեց ամսեամիս հաշվարկել, թե ամեն մի բրիգադ որքան, ինչպիսի որակի և ինչ արժեքով մթերքներ է հանձնել մթերակայան: Նպատակը՝ շահագրգռության բարձրացումը, բերքի կորուստների կանխումը, որակական ցուցանիշների լավացումը: Նախաձեռնությունն արժանացավ կոլտնտեսության վարչության հավանությանը: Տասնմեկերորդ հնգամյակի մեկնարկային տարվա բարձր արդյունքների համար կոլտնտեսականներին լրացուցիչ վարձատրության կարգով բաշխվեց 795 հազար ռուբլի կամ մեկ ռուբլու արտադրանքի՝ հաշվով՝ 50 կոպեկ: Լավ աշխատանքը լավ էլ գնահատվեց. №№ 4, 6, 7 այգեբանջարաբուծական բրիգադների մարդկանց՝ 65—70 կոպեկ: Մինչդեռ №№ 1 և 2 բրիգադներին՝ ոչ ավել, ոչ պակաս 30 կոպեկ:

Եվ դա խրախուսման միակ ձևը չէ: Դրամական պարգևներ են ստանում անհատական ու կոլեկտիվ մրցության հաղթողները: «Եռամսյակը մեկ,— տեղեկացնում է կուսբյուրոյի քարտուղարը,— ամփոփում ենք միջբրիգադային մրցության արդյունքները: Հաշվի ենք առնում մշակության որակն ու կուլտուրան, բույսերի վիճակը, իսկ բերքահավաքից հետո՝ կոնկրետ արդյունքները: Տարվա վերջում էլ փոխանցիկ դրոշներ ու դրամական մրցանակներ ենք տալիս խաղողի, բանջարեղենի, հացահատիկի, խորդենու արտադրության և կերի կուտակման գործում աչքի ընկած բրիգադներին: Միջֆերմային մրցության արդյունքները ևս ամփոփում ենք յուրաքանչյուր եռամսյակի վերջում»:

ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ առաջընթացին զուգընթաց հսկայական վերելք է ունեցել նաև գյուղի սոցիալ-կուլտուրական կյանքը: Մեծ Միության կազմավորումը խորացրել է մարդկանց ինտերնացիոնալ կապերը, Հոկտեմբերում ապրում են նաև տասնյակ քուրդ աշխատավորական ընտանիքներ, որոնք նույնպես իրենց ավանդն են մուծում գյուղի ու կոլտնտեսության առաջընթացի ապահովման գործում:

Ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Մաջիդ Ջավոյան՝ բարձրագույն կրթությամբ անասնաբույծ, ՍՄԿԿ անդամ, շրջանային սովետի ժողովրդական դեպուտատ, Հոկտեմբերյան հեղափոխության ու Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր: Անցած տարի ֆերման յուրաքանչյուր 100 մայր ոչխարից 105 գառ է ստացել, իսկ 1981 թվականը փակել է 10.520 ռուբլի օգուտով: Դհար Հասոյան՝ նույն ֆերմայում բրիգադավար: Նվաճել է շրջանում ամենաբարձր բնագծերը. 100 ոչխարից՝ 110 գառ և ամեն մի գլխից՝ 5,2 կգ բուրդ: Այգեգործներ Գյուլնազ Շամոյան և Ջեմմա Հաջիյան: Առաջինը՝ տասնհինգ, երկրորդը՝ հինգ տարի երկրագործ են ու մրցության առաջավորներ...

Գյուղի սոցիալական վերափոխման պրոցեսը ծայր առավ երեսնականների վերջերից: Լավ է խոսքը տանք այն տարիների կոլտնտեսության նախագահ Սեդրակ Քալաշյանին: «Երբ կոլեկտիվ տնտեսությունն ամուր կանգնեց ոտքի վրա, ծագեց գյուղի վերակառուցման խնդիրը: Կազմվեց նախագիծ, որը քննարկվեց հանրապետության Ժողկոմխորհի նիստում ու հավանության արժանացավ: Նախագծին համապատասխան՝ ձևավորվեցին փողոցները, սկսեցին նոր տներ կառուցել. սակայն պատերը՝ ցեխի հում աղյուսով: Դպրոց էլ կառուցեցինք. 37 թվին շահագործման հանձնեցինք, շինարարությունը ծանր էր, միջոցներ չկային, բայց անհրաժեշտ էր ու արեցինք: Սակայն գյուղը կենդանացավ Հայրենական մեծ պատերազմից հետո...»: Հարցնում եմ կենցաղից: Ծիծաղում է ու՝ «Մոտենում ենք քաղաքատիպ պայմաններին, իմ տունը քեզ օրինակ. հեռախոսն ու էլեկտրականություն ունենք, ջուրը կա, բաղնիքը կա, բնական գազը կա, սենյակներում էլ, ամեն ինչ՝ նոր ու ժամանակակից»:

Եվ դա պիտի համարել ոչ միայն բնավեր եղած ու նոր օջախ հիմնած մարդու, այլև ուրիշ շատ, տասնյակ ու հարյուրավոր հոկտեմբերցի աշխատավորների պատասխանը: Աչքի եմ անցկացնում ծերունազարդ Սեդրակ պապի երկհարկանի տունը ու հիշում նրա խոսքը. «Մեկ տնտեսությունով եկել ենք, հիմա տասներկու ընտանիք ենք, իսկ Հոկտեմբեր գյուղի կեսը Արևմտահայաստանից փախածներ են»: Ծյուղավորված ընտանիքներից մանուկների մի երամ փարվում է պապի ծնկներին, և պապը երանությամբ ժպտում է. «Թոռներիս մի խումբը գնացել է, մի խումբն էլ վաղը կգա»: «Իսկ Կարլենս, Արմենս, Միքայելս, Ռաֆիկս, Ալիկս,— ասում է,— պոլիտեխնիկական ինստիտուտ են ավարտել. ինժեներներ են, Մարինես՝ մանկավարժական. ուսուցչուհի է»:

Գյուղի միջնակարգ դպրոցում եմ: Զրուցակիցներս՝ դիրեկտորը, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Միհրան Հովսեփյանը, ուսմասվարներ Անգին Սաֆարյանն ու Վլադիմիր Մովսիսյանը: Զրույցը համառոտագրում եմ:

Մ. Հովսեփյան. «Դպրոցը հիմնադրվել է դարասկզբին, ծխական է եղել, ապա՝ երկդասյա, դասավանդումը՝ ռուսերեն: Այն ժամանակ երկու տասնյակի չափ աշակերտներ են եղել, հիմնականում՝ ունևորների երեխաները»: Վ. Մովսիսյան. «Ընդամենը մեկ ուսուցիչ կար, իսկ հիմա շրջանում գրեթե չկա դպրոց, որտեղ մեր շրջանավարտներից աշխատելիս չլինեն, մոտ 200 մարդ ուսուցչությամբ է զբաղվում: Թեկուզև մեր դպրոցը. 63 ուսուցիչների կեսից ավելին մեր շրջանավարտներն են»: Ա. Սաֆարյան. «Մինչև այժմ դպրոցն ավարտել են 2.500 պատանի ու աղջիկ, որոնցից մոտ հազարը ԲՈՒՀ-ի դիպլոմ են ստացել: Նրանց թվում կան դասախոսներ, բժիշկներ, ինժեներներ, գյուղատնտեսներ: Կոլտնտեսության ղեկավար ու միջին օղակի կադրերը, մասնագետները, հարյուրավոր այգեգործներ ու բանջարաբույծներ, մեխանիզատորների մեծ մասը մեր դպրոցի նախկին սաներ են»:

Ահա և մսուր-մանկապարտեզի նորակառույց շենքը՝ տուֆակերտ, երկհարկանի, բոլոր հարմարություններով: Նախագահի մտահղացման արգասիք է: Գործի բերումով հաճախ էր անցնում մանկապարտեզի մոտով, որ տեղավորված էր հին ու նոր գրասենյակների առաջի հարկերում: Տեսնում էր մանուկներին ու թվում էր՝ կշտամբում են պապիկին: Շուտով վարչության նիստում քննարկվեց մանկապարտեզի նոր շենք կառուցելու հարցը, ու ծնունդ առավ մանուկների դաստիարակության նոր օջախը:

Եվ մեծերի մասին հոգ տարվեց: Ֆերման գյուղին այնքան էլ մոտ չէ, հատկապես ձմռան և նաև մյուս ամիսներին անասնապահները զուրկ էին հանգստի պայմաններից: Ի՞նչ անել— մտածեց նախագահն ու առաջադրեց ակումբ կառուցելու հարցը: Այն կառուցվեց 1978-ին՝ 100 տեղանոց դահլիճով: Այնտեղ կան գրադարան, խաղամիջոցներ, հեռուստացույց, ցուցադրվում են կինոնկարներ, տրվում են համերգներ:

Մասնագիտությամբ նկարիչ է կուլտուրայի տան դիրեկտոր Սարգիս Սարգսյանը: Սիրում է իր գործը, բարեխղճորեն կատարում պարտականությունները: Մշակույթի օջախում գործում են պարային անսամբլը, մեծահասակների ու մանկական վոկալ-գործիքային անսամբլները, փողային նվագախումբը: Գեղարվեստական ինքնագործունեության մեջ ներգրավված են առաջավոր շատ բանջարաբույծներ ու այգեգործներ: Ո՞ր մեկին թվես: Պարային անսամբլի 40 անդամներն էլ կոլտնտեսականներ են: Համերգներ՝ նաև դաշտում, ֆերմայում, ամառանոցում, հարևան գյուղերում, ակտիվ մասնակցություն՝ Սարդարապա-

տի հուշահամալիրում կազմակերպվող միջոցառումներին:

Հոկտեմբեր: Ոչ միայն շրջանի ամենախոշոր, այլև հանրապետության խոշորագույն գյուղական բնակավայրերից է այն, ըստ էության, թերևս գյուղ չէ, այլ՝ քաղաքատիպ ավան: Անծանոթ այցելուին հոկտեմբերցին կուղեկցի ուղղաձիգ փողոցներով ու հպարտությամբ կծանոթացնի. ահա մեր հանրախանութը, ունենք առևտրի և այլ օբյեկտներ, կենցաղսպասարկման տաղավարը՝ իր զանազան ծառայություններով: Գրադարանը՝ 24 հազար կտոր գրականությամբ, կապի բաժանմունքը. ստացվում են 122 անուն, ամսական 70 հազար օրինակ թերթ ու ամսագիր: Ունենք և մեր տպագիր «Այգեգործ» թերթը: Խնայդրամարկղում վերջին երկու տարում ավանդատուների թիվն ավելացել է 300 մարդով:

Այժմյան Հոկտեմբերյանի շրջանն ընդգրկող տարածքում եղել է ընդամենը մեկ բժիշ, իսկ հիմա մեր գյուղում գործում են բուժարան, ծննդատուն, դեղատուն, ուր աշխատում են մի քանի բժիշկ, տասից ավելի բուժքույրեր ու սանիտարուհիներ: Եվ գյուղի սոցիալական զարգացմանն առնչվող ուրիշ շատ բաների, շրջկենտրոնի հետ ավտոբուսային մշտական կապի և այլնի մասին կպատմի... Ապա ցույց կտա ֆուտբոլի դաշտը, մարզական դահլիճն ու հրապարակները: Եվ կեզրափակի՝ մեր գյուղացին ընդհուպ մոտեցել է քաղաքաբնակի կենցաղավարության մակարդակին, երկու ընտանիքից մեկն էլ ունի անձնական օգտագործման ավտոմեքենա:

Ու այդ ամենով հանդերձ հոկտեմբերցիներն ամուր կապված են իրենց հող ու ջրին: Ապացույց՝ հիշենք թեկուզ կոլտնտեսության նախագահի խոսքը. «Բանվորական ձեռքի հարցը մեզ համար պրոբլեմ չէ»: Կծանոթացնի գյուղական սովետի գործկոմի գրանցումներին. տարեկան 150-ից ավելի ծնունդ, 60—70 ամուսնություն: Վերջին չորս տարում 115 նորաստեղծ ընտանիքի հողամաս է հատկացվել մենատներ կառուցելու համար: Եվ անելիքը կամփոփի. «Մեր գյուղն ունի 1.150 ընտանիք, 5.300 բնակիչ»: Նաև կպարծենա՝ տարիներ շարունակ գյուղում հանցագործություն կամ հասարակական կարգի լուրջ խախտումներ չեն արձանագրվել...

Տո՞ւն է կառուցում կոլտնտեսականը, կոլտնտեսության վարչությունը փոխադրամիջոցներ է տրամադրում, հարկ եղած դեպքում օգնում շինանյութերով: Բազմանդա՞մ է ընտանիքը կամ պայմաններն այնքան էլ լա՞վ չեն, տունը կառուցվում է տնտեսության հաշվին: Վերջին տասնհինգ տարում քսան ընտանիքի մենատուն է պարգևվել: Այսպես, Աղասի Եսայանը ծանր հիվանդ էր, ուներ յոթ անչափահաս երեխա, ապրում էր հողաշեն, անբարետես բնակարանում: Վարչության նիստում քննարկվեց այդ ընտանիքին բնակարանով ապահովելու հարցը: Եվ տնտեսության միջոցներով հառնեց քարակոփ տունը: Հիմա ծխի մեծը չկա, բայց երեխաները մեծացել ու վայելում են տունը, հողամաս են ստացել, ևս երկու տուն կառուցել՝ արդեն իրենց ուժերով: Ասել է, թե երկու ծուխ էլ ավելացել է: Տնտեսության միջոցներով մենատուն կառուցվեց նաև Թամար Աբգարյանի համար, որի ամուսինը զոհվել էր Մեծ հայրենականում, այրիացած Փարիշան Պողոսյանի ու Վարդուշ Հարությունյանի և ուրիշների համար: Տասնմեկ երեխա ուներ Նահապետ Աթոյանը ու նրանցից երեքին՝ Ռաֆիկին, Սամվելին ու Էդիկին, տնամերձ հողամաս հատկացվեց: Ու նրանք իրենց սեփական օջախը կազմեցին, ամուր կապվեցին գյուղին, հողին ու ջրին: Չորս մենատուն էլ կառուցեցին Վաչագան Պողոսյանի բազմանդամ ընտանիքի չորս տղաները, իրենց հոր նման դարձան հողի անխոնջ աշխատողներ:

Հոգատարություն է ցուցաբերվում արտադրության մարդու նկատմամբ, լուծվում են նրան հուզող սոցիալական հարցերը, բարելավվում է նրա կենցաղը: Այդ նշանակում է ստեղծվում է այն հիմքը, որի շնորհիվ նա ամուր կապվում է հայրենի օրրանին: Մեխանիզատոր Աղասի Ղազարյանն ու նրա որդիներ Յուրիկն ու Սամվելը, որ ժառանգել են հոր մասնագիտությունը, բարի համբավ են վայելում: Աշխատավորական այս ընտանիքը տարին բոլոր բանում է, տարվա վաստակն էլ՝ ավելի քան 12 հազար 500 ռուբլի: Եվ գյուղում շատ են այն ընտանիքները, որոնց բոլոր անդամները դաշտում ու այգում են կամ ֆերմաներում, և տարեկան տասը հազար ռուբլուց ավելի դրամական եկամուտ են ստանում:

ՀՈԳՍԱՇԱՏ Է ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ նախագահ Սերյոժա Խաչատրյանի օրը: Հիսունհինգ գարուն է բոլորել, մազերն արծաթվել են, երեքուկես տասնամյակի աշխատանքային բեռ է կրում ուսերին, բայց առույգ է, լի երիտասարդական ավյունով ու հաջողությամբ շարունակում է վարել տնտեսության ղեկը: Տարիների վաստակը գնահատվել է Լենինի շքանշանով, մեդալներով, պատվոգրերով:

Եվ նախագահի խոսքը տոգորված է վաղվա օրվա մտահոգությամբ, պարենային ծրագրից բխող առօրյա և հեռանկարային խնդիրների ու պրոբլեմների անվերապահ լուծման մտահոգությամբ:



Տակավին մայիսի վերջերին կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության ժողովում կոմունիստները, ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների լույսի ներքո, քննարկեցին պարենային ծրագրի կատարման գործում իրենց անելիքները և տնտեսության ձեռնարկելիք խնդիրները: Որոշվեց առաջին հերթին գերազանցել հնգամյակի համար նախատեսված պլանները, ամեն տարի ապահովել գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության և պետական մթերումների զգալի աճ:

Երբ խոսք եղավ պարենային ծրագրի կատարման մասին, նախագահն ասաց. «Ջրի կորուստը բերքի կորուստ է»: Ապա ավելացրեց. «Սա ես չեմ ասում, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի դրույթն է: Մենք այդ դրույթից լուրջ հետևություն ենք արել: Որոշել ենք վերակառուցել ոռոգման համակարգը՝ երեսպատել առուները: Դա հնարավորություն կտա ռացիոնալ օգտագործել ջուրը և այն գրեթե կիսով չափ խնայել, բարձրացնել բերքատվությունը: Մեկուկես միլիոն ռուբլու նախագիծ-նախահաշիվ է կազմված. 26 կիլոմետրի չափ կիսախողովակներ ենք տեղադրելու»: Հետո ասաց, որ հողերի ընդարձակման հնարավորություն չունենք և պետք է բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Դրա համար ռեզերվներ կան՝ հողերի ճիշտ և լիարժեք օգտագործումը, մշակության կուլտուրայի բարձրացումը: Նախագահը հրապարակում է թվեր, որոնք մեծ չափերով գերազանցում են այժմյան մակարդակը, ապա ցածր ձայնով ավելացնում. «Կաթնապրանքային ֆերմայի արդյունքները մեզ չեն գոհացնում: Վիճակը շտկելու համար ձըգտում ենք հիմնովին բարելավել կովերի ցեղային կազմը, ավելացնել գլխաքանակը, արդեն ձեռք ենք բերել 87 գլուխ տափաստանային կարմիր ցեղի երինջներ: Թեև բավականաչափ կեր ենք կուտակում, նույնիսկ պլանը կատարում, սակայն եղածն իր որակական ցուցանիշներով չի բավարարում անասնապահության աճող պահանջները: Պարենային ծըրագիրը կենսագործելու համար, որոշել ենք ավելացնել առվույտի արտադրությունը, էապես բարձրացնել սիլոսացու եգիպտացորենի ու կերի ճակնդեղի բերքատվությունը: Անասնապահության մյուս ճյուղերը՝ ոչխարաբուծությունը, խոզաբուծությունը և թռչնաբուծությունը, ճիշտ է, հոգսեր չեն պատճառում, կատարում են պլանները, սակայն նախատեսել ենք զգալիորեն ավելացնել նաև դրանց արտադրությունը:

Ինչ մնում է սոցիալական զարգացմանը, ապա այդ ասպարեզում ևս անելիքները շատ են: Չէ՛ որ պարենային ծրագրով պահանջվում է արմատապես բարելավել գյուղի մարդկանց կուլտուր-կենցաղային սպասարկումը, հարստացնել նրանց հոգևոր աշխարհը: Արդեն կազմվել են նախագծեր, նախահաշիվներ՝ գյուղում կոյուղի անցկացնելու, հազար համարանոց ավտոմատ հեռախոսակայան, հանրախանութ ու ճաշարան կառուցելու համար: Կըբացվի նաև երաժշտական դպրոց: Վաթսուն ընտանիքի տնամերձ հողամաս ենք հատկացրել, ուրեմն՝ այդքան նոր բնակարան կկառուցվի: Ընթացիկ հնգամյակում լրիվ կավարտենք գյուղի գազիֆիկացումը, փողոցների բարեկարգումն ու ասֆալտապատումը, գիշերային լուսավորության անցկացումը»:

Հոկտեմբերցիները երախտագիտությամբ նըշում են, որ իրենց բարեկեցիկ կյանքի, տնտեսական ու սոցիալական առաջընթացի համար պարտական են սովետական կարգերին: Ահա ինչու ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը նրանք դիմավորեցին մեծ ոգևորությամբ և նշանավորեցին արտադրական նվաճումներով ու նոր, ավելի լավ գործեր կատարելու վճռականությամբ: Նրանց համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի այն հարցադրումը, որ, ճիշտ է, պարենային ծրագրի իրականացումը մեկ տարվա գործ չէ, բայց դրա կատարումը չի էլ կարելի ձգձգել, և այն պահանջը, որ օրավուր պետք է մեծացնել ջանքերը, աշխատել այնպես, որ այդ խնդրի լուծմանը հատկացվող միջոցները փոխհատուցում տան արդեն այսօր և է՛լ ավելի մեծ փոխհատուցում՝ վաղը:

ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆ

# ԵՐԵՎԵԼԻ ՏԱՂԱՆԴ

ԱՇՈՏ ԱՐՁՈՒՄԱՆՅԱՆ

ՄԵՆՔ ՊԵՏՔ Է ԵՐԱԽՏԱՊԱՐՏ լինենք ֆոտո և կինոարվեստի այն էնտուզիաստներին, որոնք սերունդների համար պահպանեցին աշխատավոր մարդկության մեծ առաջնորդի՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի կերպարը:

Հիշարժան իրադարձություններից պետք է համարել Մոսկվայում 1920 թվականին՝ ցրտի ու սովի դժվարին տարում «Ազատագրված աշխատանք» հուշարձանի համար հայտարարված մրցույթը: Սովետական երկիրը նոր կյանքի հիմքերն էր արկանում:

1920 թվականի մայիսին այդ հուշարձանի հանդիսավոր հիմնադրման ժամանակ ճառով հանդես եկավ Վ. Ի. Լենինը: Կինոժապավենը պատմության համար պահպանել է այդ բացառիկ կադրը— Վլադիմիր Իլյիչը «Ազատագրված աշխատանք» հուշարձանի հիմքի արկանման պահին: Առաջնորդի ձախ կողմում երիտասարդ մի մարդ է: Ո՞վ է նա... Բազմիցս հրապարակվել է այս կինոփաստաթուղթը, սակայն հարցը մնացել է անպատասխան: Եվ միայն մի շարք ժուռնալիստների ջանքերի շնորհիվ, տարիներ անց հաջողվել է պարզել Վ. Ի. Լենինի կողքին կանգնած մարդու անձնավորությունը. Հակոբ Գյուրջյանն է նա:

Ինչպե՞ս է եղել, որ փարիզաբնակ քանդակագործ Հակոբ Մարգարի Գյուրջյանը գտնվել է Մոսկվայում, տոնական Կարմիր հրապարակում և այն էլ Վլադիմիր Իլյիչի կողքին...



1982 թվականի մայիսին Մոսկվայից թռչում էի Փարիզ, նպատակ ունենալով վերականգնել յոթնամյա վաղեմություն ունեցող տպավորություններս, գտնելու աշխարհահռչակ քանդակագործ Հակոբ Գյուրջյանի կյանքի ու գործունեության վրա լույս սփռող նոր նյութեր: Այն աստանդական հայերից մեկն է նա, որոնց պատմության փոթորիկը քշել տարել է օտար երկրներ: Բնորոշ է, որ, նույնիսկ հայրենիքից հեռու, նրանցից շատերը չեն կորցրել ինքնատիպությունը, իսկ լավագույնները իրենց անկրկնելի տաղանդի պայծառ լույսով փայլատակել են երկնակամարում, ամենևին չզիջելով այն երկրի աստղերին, ուր նրանք գտել են օթևան, ապրելու և ստեղծագործելու հնարավորություն: Նրանցից առավել տաղանդավորները, ինչպես, օրինակ, ճանաչված երգիչ Շարլ Ազնավուրը, Ֆրանսիայի արվեստների ակադեմիայի իսկական անդամ նկարիչ Գառզուն (Գառնիկ Զուլումյան), ականավոր քանդակագործ Հակոբ Գյուրջյանը բուրժուական Ֆրանսիայի դժվարին պայմաններում, մեր անհանգիստ դարում, չկորան, ինչպես ավազահատիկը անապատում, այլ վաստակեցին համընդհանուր ճանաչում:

Երբեք չեն մոռացվում առաջին հանդիպումները հետաքրքիր մարդկանց հետ: Ցավոք, մեր օրերում իրադարձությունները շատ արագ են հաջորդում իրար, և միշտ չէ, որ հասցնում ես իրականացնել մտադրությունդ:

1975 թվականի փետրվարի կեսին թողեցի Փարիզը, համոզված, որ շուտով ակնարկ կըգրեմ իմ այդ ուղևորության մասին: Սակայն գրական և այլ անհետաձգելի հոգսերը զրկեցին ինձ այդ մտադրությունս իրագործելու հնարավորությունից: Եվ միայն այժմ, կրկին գտնվելով Փարիզում, որոշեցի գրել: Չգիտեմ, կկարողանա՞մ արդյոք պատշաճ ձևով ներկայացնել Հակոբ Գյուրջյանի մերձավոր բարեկամի՝ Հակոբ Առաքելյանի հյուրընկալ օջախում ունեցածս անմոռաց հանդիպումներն ու զրույցները: 1975 թվականի հունվարին, երբ առաջին անգամ եկա Փարիզ, մեկ ամիս հյուրընկալվեցի նրա տանը, որ գտնվում է Բուլոնյան անտառի մոտ. հասցեն՝ Յուժենետ Էկոլի փողոց, տուն 20:

Առաքելյան ամուսինները՝ Ելենա Պավլովնան և Հակոբը՝ Ֆրանսիայում կինոգրիմի արվեստի հիմնադիրներից մեկը, Սովետական Հայաստանի, Սովետական Միության հավատարիմ բարեկամներն են: Նրանք բազմիցս եղել են Մոսկվայում, Լենինգրադում, Երևանում: Առաքելյանների բազմաթիվ հրավերներից հետո ես մեկնեցի Փարիզ:

Իրական Փարիզը և ֆրանսիական գրականության, կերպարվեստի, փաստագրական կինոնկարների շնորհիվ երևակայությանս մեջ ըստեղծված Փարիզը շատ քիչ էին տարբերվում իրարից: Պարզապես ինձ թվաց, թե ես Փարիզ եմ վերադարձել երկար բաժանումից հետո:

Հակոբ Առաքելյանի հետ զբոսնում էինք Փարիզում և՛ վաղ Արշալույսին, և՛ ուշ գիշերին, և՛ անձրևային, և՛ արևոտ օրերին: Փարիզը միշտ հարմարավետ էր, բազմազան: Փարիզի անկրկնելի հմայքների մասին շատ է գրվել:

Ուզում եմ խոսել մի մարդու մասին, որին լավ գիտեի, վայելել եմ նրա առկայծող, նուրբ հումորի ջերմությունը: Դժվար է ինձ համար խոսել Հակոբ Առաքելյանի մասին հիմա, երբ նա արդեն չկա...

Բուլոնյան գերեզմանատուն. Ելենա Պավլովնայի հետ լուռ կանգնած ենք Առաքելյանի շիրմի մոտ: Ծաղիկներ դրինք երկու դրկից շիրիմների վրա: Երկու Հակոբների՝ փարիզյան կյանքի երկու բազմամյա բարեկամների, որ հիմա հանգչում են կողք-կողքի: Դեռևս 1975-ին Հակոբ Առաքելյանի հետ այցի եկա Հակոբ Գյուրջյանի շիրմին: Իմ հայրենակիցն էր նա, Լեռնային Ղարաբաղից, ծնված Շուշի քաղաքում, որը նախահեղափոխական ժամանակներում Թիֆլիսից հետո կովկասցիների կուլտուրական կյանքի երկրորդ կենտրոնն էր: Այն ժամանակ էլ մենք ծաղիկներ էինք բերել: Այն ժամանակ էլ մենք լուռ էինք, ինչպես հիմա:

Մտովի վերադարձա 1975 թվականը, իմ առաջին հանդիպմանը Առաքելյանի հետ, Փարիզում: Երբ վերելակը մեզ հասցրեց հինգերորդ հարկ, և մենք հայտնվեցինք նրանց հարմարավետ բնակարանում, ես մի փոքր շփոթվեցի: Ասեմ ինչու: Գրական գործունեությանս բերումով հաճախ եմ ուղևորություններ կատարում ու միշտ իջևանում եմ հյուրանոցներում: Իսկ այժմ պետք է ապրեմ մի ընտանիքում, որն իր սովորություններն ունի, իր կարգ ու կանոնը: Ասես գուշակելով իմ մտքերը, Հակոբը թփթփացնելով ուսս, ասաց.

— Թանկագին Աշոտ, ես և Լյոլյան հյուրեր շատ ենք սիրում, բայց ոչ այն աստիճան, որ նրանք մեզ մոտ մնան: Ինչ վերաբերում է քեզ, առանց ասելու էլ դու լավ գիտես, թե որքան ուրախ ենք քո գալստյամբ: Մեր բնակարանը երկու սենյականոց է, չհաշված նախասենյակը: Տեղավորվիր հյուրասենյակում, ինչպես քեզ հարմար է: Զգա քեզ, ինչպես քո տանը: Վերցրու մեր բնակարանի բանալին: «Մեր» ասածս այնքան էլ ճիշտ չէ...

— Ի՞նչը նկատի ունես:

— Միայն այս հարցի պատասխանն ստանալու համար արժեր, որ Փարիզ գայիր,— պատասխանեց Հակոբը:

— Բորբոքեցիր հետաքրքրասիրությունս: Մի կարգին բացատրիր:

մահվան մասին, Գյուրջյանը որոշեց հավերժացնել հանճարի հիշատակը: Եվ նրա մտքերն ու զգացմունքները համակված էին Տոլստոյի քանդակային կերպարի որոնումներով: Երեք տարի անց գործն ավարտված էր: Մարմարինից հառնող, խոհերի մեջ խորասույզ գլուխը խոնարհված է և աջ թեքված: Կերտողին հաջողվել է լույսի և ստվերի խաղի գեղանկարչական խնդիրը լուծել, չաղարտելով արձանի ծավալը: Աշխարհին է նայում **Պատերազմ և խաղաղության** հեղինակը:

Հետագայում Գյուրջյանը կգրի... «Շնորհակալություն Տոլստոյին: Կյանքիս երեք տարիներն ապարդյուն չեն անցել: Ոգեշնչման դերը առաջնային է: Այդ զգացմանն էր ենթարկված իմ հատիչը»:

Հակոբ Առաքելյանը կատարեց և Գյուրջյանի մյուս կտակը: Լև Տոլստոյի մարմարյա կիսանդրին նա նվիրեց Փարիզին, իբրև քանդակագործի երախտագիտության արտահայտություն այն բանի համար, որ ֆրանսիական հողում այնպես ջերմորեն ընդունեցին հայ գաղթականներին:

Փարիզի գրոսայգիներից մեկում Լև Տոլստոյի հուշարձանի հանդիսավոր բացման ժամանակ Անդրե Մորուան այսպես սկսեց իր ելույթը.

«Տարիներ առաջ, Փարիզի պատմության մեջ առաջին անգամ, Ալմա հրապարակում կանգնեցվեց լեհ գրող Սենկևիչի հուշարձանը: Այսօր՝ 1955 թվականի մայիսի 25-ին, երբ մեր մայրաքաղաքը կանաչ է հագել, մենք բացում ենք երկրորդ օտարերկրացու՝ Լև Տոլստոյի հուշարձանը, որի կերտողը նույնպես օտարերկրացի է, փարիզաբնակ, տաղանդավոր քանդակագործ, հանգուցյալ Հակոբ Գյուրջյանը: Ռուսաստանի մեծ գրողի այս սքանչելի արձանը թող դառնա մեր ժողովուրդների բարեկամության խորհրդանիշը»:

...Անցան տարիներ:

Հիշենք Ֆրանսիայի նախկին պրեզիդենտ Ժիսկար դ'Էստենի խոսքերը՝ ասված 1974 թվականին. «Այժմ ես իմ բոլոր երեկոներն ավարտում եմ ռուսական սքանչելի գրքերից մեկի ընթերցմամբ: Փոխվել են դարաշրջանը, հանգամանքները, տնտեսական ու սոցիալական պայմանները: Բայց ռուս ժողովուրդը՝ «Պատերազմ և խաղաղության» իսկական հերոսը, մնացել է նույնը, նրա մարդկային ջերմությունը շահել է ֆրանսիական ժողովրդի բարեկամությունն ու հարգանքը»:

...Հակոբ Գյուրջյանն ինձ համար միայն քանդակագործ չէ: Ամեն ինչ նրա մեջ ներդաշնակ է: Հատկապես առինքնող է նրա մի հատկանիշը— հայրենասիրությունը: Նրա առանձին գործեր գտնվում են Եվրոպայի տարբեր թանգարաններում, իսկ մնացած համարյա ողջ գեղարվեստական ժառանգությունը Երևանի պատկերասրահում է:

Քչերն են օժտված հոգու շռայլությամբ: Գյուրջյանը երբեք հարուստ չի եղել: Ավելին, նա տեսել է և՛ կարիք, և՛ անհաջողություն... Բայց նրա հոգին միշտ հարուստ է եղել: Այդ տարիներին էլ նա այցելել է Ռոդենին, ճանաչել Բուրդելին, Մայոլին: Մասնակցել է ռուս և հայ նկարիչների ցուցահանդեսներին: Նրա գործերը մեծ հաջողությամբ են ցուցադրվել Նյու Յորքում, Փարիզում, Բրյուսելում, Բելգրադում, Պրագայում: Բայց նա երբեք չի կորցրել իրեն հաջողություններից: Նա ներքին պայքար է ապրել, տեսնելով, թե ինչպե՛ս մեր դարասկզբին որոշ արվեստագետներ, չկարողանալով դիմագրավել, լուծվել են ֆրանսիական արվեստի հզոր կոհակներում: Չնայած Փարիզի հետ է կապված նրա ողջ գեղարվեստական գործունեությունը, նա կարողացել է իր ստեղծագործություններում պահպանել ազգային ինքնատիպությունը: Հատկապես այդ նկատի ունենալով է, որ ֆրանսիական արվեստաբան Դենի Ռոշը գրել է. «Նա նման է անտիկ աշխարհի քանդակագործներին՝ արևելյան ծագումով, որպիսիք, անտարակույս, եղել են հին Հունաստանի արվեստանոցներում, և որոնք հեռավոր ատավիզմով կապված են Ասիայի ու Եգիպտոսի հին արվեստի հետ»: Իսկ քննադատ Լուի Վոկսելը ավելացրել է. «Ատավիզմի ազդեցությունը նրա մոտ ձուլվում է Արևմուտքի ազդեցությանը»: «Լինելով հայ, Գյուրջյանը պատկանում է դարավոր ճյուղին և ծանոթ է արևելյան արվեստի հարստությանն ու շքեղությանը»,— հայտարարում է Գուստավ Կանը:

Վարպետն իր ստեղծագործությամբ ամբողջովին կապված է հարազատ ժողովրդի կուլտուրայի հետ: Հավանաբար այդ է պատճառը, որ սերը բովանդակալից ձևերի նկատմամբ Գյուրջյանի մոտ զուգորդվում է հին Հայաստանի ճարտարապետական հուշարձանների հետ: Բայց ո՛չ միայն այդ: Բավական է հիշատակել հայ այնպիսի նկարիչների դիմաքանդակները, որպիսիք են՝ Ե. Թադևոսյանը, Մ. Սարյանը, Գ. Յակուլովը, փիլիսոփա Ալ. Շիրվանզադեն, հայ կուլտուրայի ականավոր գործիչ Ա. Չոպանյանը, պատկերացնելու համար, թե ինչպես էր հագեցնում Շուշիի, հայրենակիցների նկատմամբ իր թախծալի կարոտի ծարավը լայն հոգու տեր այդ մարդը: Մոսկվայում և Փարիզում նա բարեկամական հարաբերություններ է հաստատել ռուսական կուլտուրայի շատ ներկայացուցիչների՝ Ռախմանինովի, Սկրյաբինի, Շալյապինի, Լունաչարսկու հետ: Գյուրջյանը վայելում էր Մաքսիմ Գորկու բարեկամությունը: Նրա գեղարվեստական ժառանգության մեջ աչքի են զարնում նաև ռուս բարեկամների դիմաքանդակները: Արտահայտչական մեծ ուժով կերտված Շալյապինի կերպարը դրսևորում է ռուս ժողովրդի տաղանդավոր զավակի խառնվածքը, բնավորությունը: Գյուրջյանի առավել հաջողված ստեղծագործություններից է Գարեգին Հովսեփյանի դիմաքանդակը: Իմաստուն հայ ծերունու ընդհանրական տիպ է այն: Նայելով դիմաքանդակին՝ զգում ես, որ հենց այսպիսի մարդիկ են ստեղծել մեծ հոգևոր արժույթները, մշակել հողը և պաշտպանել հայրենիքը: Ամուր, հզոր մարդիկ, ինչպես Հայաստանի լեռները: Քանդակագործության գլուխգործոցներից է Հենրիետա Պասկալի դիմաքանդակը: Դերասանուհու աչքերը ներշնչանք են ճառագում, նրա ողջ դեմքը լի է դրամատիզմով: Փոքր-ինչ հեռամետ հայացքն իմաստալի է, տպավորիչ:

Վարպետի դիմաքանդակային պատկերասրահում հատուկ տեղ են գրավում նեգրերի կերպարները, որոնց նա անդրադարձել է իր ողջ ստեղծագործական կյանքում: Հավանաբար Գյուրջյանին գրավել են նրանց արտահայտիչ դիմագծերը: Բելգիական գրանիտից պատրաստված կանացի երկու գլուխները լավագույնս արտահայտում են բնօրինակների խառնվածքը. վճռական գործոն է քարի սև գույնը, որն այստեղ խաղում է ֆունկցիոնալ դեր, նմանակելով նեգրական դեմքերի բնական գույնը: Գյուրջյանի աներկբայելի հաջողություններից է նեգրի գլուխը, որը ցուցադրված է ժամանակակից արվեստի փարիզյան թանգարանում: Հետաքրքրական է վերջին գործը՝ կերտված մահվան տարում. նեգրի գլուխ, որը խիստ տարբերվում է նախորդներից: Մեր առջև կերպարն է նեգրի՝ հպարտ մարդու, զարթոնք ապրող Աֆրիկայի զավակի և ոչ թե ստրուկի:

Յակուլովի և Սարյանի դիմաքանդակներում ձգտելով ամենահավաստի (ընդհուպ մինչև որոշ կնճիռները) նմանակման, Գյուրջյանը միաժամանակ դիմել է ընդհանրացման ձևերին: Կարելի է ասել, որ Գեորգի Յակուլովը գեղեցիկ մարդ չէր— նեղ ճակատ, ուղիղ մազաբաժան ունեցող սղալված մազեր: Գյուրջյանը չի էլ իդեալականացնում նրա դիմագծերը, ջանալով ճշգրտությամբ վերարտադրել բնօրինակը: Նայե՛ք, սակայն, դիմաքանդակին. ոգեշնչված դեմք, վե՛հ զգացմունքներ: Ճշմարտացի վերակերտելով բնօրինակը, քանդակագործը չի սահմանափակվում նրա արտաքինով, այլ ներկայացնում է գլխավորը— արտիստի՝ կյանքում իր կոչումը խորապես ըմբռնող մեծ գեղագետի, ներաշխարհը:

Շատ քանդակագործներ ու նկարիչներ են փորձել ստեղծել Սարյանի դիմանկարը, բայց նրանք ոչ թե կերպար են կերտել, այլ ֆիքսել են կոնկրետ մարդուն, չընկալելով նրա էությունը: Գյուրջյանի կերտածն արժեքավոր է հենց նրանով, որ մեծ նմանությամբ հանդերձ նրա մեջ արտացոլված է նկարչի ականավոր լինելը, հայկական արվեստում խաղացած նրա վիթխարի դերի խոր ըմբռնումը: Քանդակագործն ստեղծել է համարձակորեն կյանք նետվող և միայն առաջ նայող մարդու կերպար: Այդ զգացողությունն արգասիք է ներքին այն դինամիկայի, որն այնպես բնորոշ է Գյուրջյանի լավագույն դիմաքանդակներին:

Որքան էլ շատ սիրեր Գյուրջյանն իր քանդակած մարդուն, նա երբեք չի իդեալականացրել նրան, չի դիմել արտաքին պաթոսին, ցուցադրական արտիստիզմին: Արվեստի վարպետների դիմաքանդակներում կարևորն ու միավորողը, չնայած կերտված բնավորությունների խիստ տարբերություններին, ստեղծագործական ոգին է, խառնվածքը, նորարարության ոգին, հատկանիշներ, որոնք բնութագրում են իրեն՝ Գյուրջյանին: Եվ թող տարօրինակ չթվա, եթե ասենք, որ այդ դիմաքանդակները որոշ չափով իր իսկ՝ Գյուրջյանի անհատականությունը ցայտուն արտահայտող ինքնաքանդակներ են: Գյուրջյանի կերտած անձնավորություններից շատերը գրականության, երաժշտության, նկարչության ու թատրոնի հսկաներ են: Սակայն այդ չի նշանակում, թե նա ձգտել է անմահացնել միայն նշանավոր մարդկանց: Գյուրջյանը կերտել է նրանց, ովքեր հուզել, հոգեպես հարստացրել են իրեն, համակել ստեղծագործելու մղումով:

Հայրենիքից կտրված, նրանից հեռու, Գյուրջյանը միշտ հավատարիմ է մնացել նրան, սերտ կապ պահպանել իր ժողովրդի լավագույն ներկայացուցիչների հետ: ...Մարտիրոս Սարյանը հիշում էր. «Շատ տարիներ առաջ, Փարիզում բացված իմ ցուցահանդեսում, ես հանդիպեցի Հակոբ Գյուրջյանին: Հիշում եմ, նա ինձ ասաց. «Մարտիրոս, ապրել հայրենիքից հեռու, նշանակում է ապրել առանց ներկապնակի»: Ապա լռեց և խոր հառաչելով ավելացրեց. «Սակայն այստեղ ևս ես որոնում եմ հայրենակիցներիս, կերտում նրանց դիմաքանդակները և դրանով էլ միշտ թարմ եմ պահում ներկապնակս»: Թախիծ կար նրա խոսքերում: Փեթակը կորցրած մեղվի պես երկար նա շրջում էր իմ ցուցահանդեսում, ասես ներծծում էր իր մեջ հայրենիքի արևը, նրա բույրն ու գույները»:

Բարձր պրոֆեսիոնալիզմը, բնօրինակի խոր ուսումնասիրությունը հնարավորություն էին ընձեռում Գյուրջյանին՝ դիմելու համարձակ

փորձերի: Այդ ամենևին չէր աղարտում նրա ստեղծագործությունների իրական հողը, հակառակը՝ հաղորդում էր դրանց ինքնատիպություն, անկրկնելի հնչեղություն:

Հակոբ Առաքելյանն իր արխիվում պահպանել է քանդակագործական արվեստի մասին Հակոբ Գյուրջյանի գրած ֆրանսերեն ձեռագրի պատճենը:

«Իմ բոլոր որոնումներում,— գրում է նա,— ես ջանում եմ գտնել զուտ քանդակագործական լուծում ո՛չ միայն դեկորատիվ ստեղծագործություններում, այլև դիմաքանդակներում և արձանիկներում: Մնալով նատուրալիզմի շրջանակներում՝ իմ կերպարներին ես հաղորդում եմ քանդակային և գեղանկարչական ձևեր: (Նատուրալիզմ ասելով Գյուրջյանը նկատի ունի ոչ այն հասկացությունը, որ սահմանված է արվեստաբանության մեջ, այլ ռեալիզմը— **Ա. Ա.**): Այսպես է «Քրիստոսի գլուխը» զուտ մոնումենտալ և գեղանկարչական ստեղծագործությունը, որն իմպրեսիոնիզմից հեռանալուց հետո իմ կերտած առաջին գործերից է. իմպրեսիոնիզմը ես համարում եմ դեկադենտականություն մեր դարաշրջանի քանդակագործության մեջ, ուր քանդակային ձևն իսպառ մոռացության է տրված. նույնն է և իմ վերջին գործերում— տիկին Կրիչևսկայայի դիմաքանդակում և իշխանուհի Ն. Տ.-ի ու իշխանուհի Լ. Ի.-ի և այլոց արձանիկներում, ուր մնալով նատուրալիզմի շրջանակներում՝ ես նրանք կերտում եմ քանդակային ձևերով:

Իմ երկրորդ խնդիրն է ստեղծագործությունների օգնությամբ իրական պատկերացում տալ այն մասին, թե ինչ է քանդակը: Ժողովուրդն առհասարակ քանդակ է համարում այն ամենը, ինչ պատրաստված է քարից, բրոնզից, փայտից:

Մեր ժամանակի ամենախոր մոլորությունն է այդ: Ըստ իս, քանդակ պետք է համարել միայն այն, ինչ արված է քանդակագործության օրենքներով, այսինքն՝ այն, ինչ օժտված է երեք հատկանիշով— դեկորատիզմ, մոնումենտալություն, կոմպոզիցիա:

Այն ստեղծագործությունները, ուր համատեղված չեն այս սկզբունքները, քանդակ համարվել չեն կարող:

Ըստ այս հայեցակետի, քանդակ պետք է համարվեն ո՛չ միայն բնօրինակից, քանդակագործական օրենքների համաձայն արված ստեղծագործությունները, այլև զուտ վերացական ձևեր ունեցող կոմպոզիցիաները, ձևեր, որոնք ոչնչով նման չեն բնության մեջ մեր տեսածներին: Քանդակ պետք է համարել նաև այն ստեղծագործությունները, որոնցում բնությունն զգալի է հույժ աննշան չափով, իսկ ողջ մնացյալը զուտ երևակայականի կոմպոզիցիան է:

Քանդակ պետք է համարվեն և այն ստեղծագործությունները, որոնցում բնությունը լրիվ ձևափոխված է, բոլոր այն դեպքերում, եթե վերոհիշյալ սկզբունքները պահպանված են, ապա դա կատարյալ քանդակ է»:

Եվ ինչպես չհիշենք այստեղ Բուրդելի խոսքերը. «Անհրաժեշտ է տեսնել բնօրինակի ներքինը. ստեղծագործությունը կերտելու համար պետք է սկսել տվյալ իրի կմախքից, իսկ հետո արդեն այդ կմախքին տալ արտաքին ձև: Անհրաժեշտ է իրի այդ կմախքը տեսնել իրական կողմով և նրան բնորոշ արտահայտությամբ»:

Գյուրջյանի արվեստանոցը, որը նա սիրով անվանակոչել է «Ծուշի», գտնվում էր Փարիզի Բուլոնիա արվարձանում: Այստեղ նա աշխատելու վերադարձավ՝ հավերժացնելու Խաչատուր Աբովյանի կերպարը. այդ միտքը նրան հուզում էր դեռևս Ժուլիենի ակադեմիայում ուսանելու տարիներին:

Գաղթական հայերի դառը ճակատագիրն է արտահայտել նա «Փախուստը» բրոնզյա քանդակում: Գեղջուկի ծանր աշխատանքը Արցախի լեռներում ներկայացված է «Վար» բրոնզաձույլ քանդակում: Թերևս այն աշխատանքային թեմայի միակ արձագանքն է նախահեղափոխական քանդակագործության ասպարեզում: Այդ թեմային նա անդրադարձել է նաև «Հայ գեղջուկները» հարթաքանդակում:

Ցավոք, նա չկարողացավ իրականացնել իր երազանքը՝ ստեղծել Վլադիմիր Իլյիչ Լենինի դիմաքանդակը: Լենին մարդու, Լենին մտածողի, Լենին հեղափոխական գործչի կերպարը մշտապես հուզել է խորաթափանց արվեստագետին: Լենինի անհատականության մեջ ևս նա տեսնում էր մարդկության նվիրական ձըգտումների, վեհ իդեալների իրական մարմնացումը: Լենինին նա ծանոթացել էր Փարիզում, 1912 թվականին, ուր Մաքսիմ Գորկու հետ Իլյիչն այցելել էր նրա արվեստանոցը:

Այդ հանդիպումը նկարագրել է դրամատուրգ Ի. Սուրգուչովը, որի կիսանդրին ծեփում էր Գյուրջյանն այն ժամանակ. «Օրերից մի օր սեանսի պահին Գյուրջյանի արվեստանոցը եկավ Գորկին, բայց ոչ մենակ, այլ արտակարգ խորաթափանց աչքերով մի մարդու հետ: Այդ աչքերը հածում էին կավի վրայով, ասես միանգամից ամեն ինչ կլանում էին, ամեն ինչ գնահատում. և մարդն այդ ասաց. «Շուրթերը չոր են ստացվել, չոր են»: Վլադիմիր Իլյիչն էր նա»:

Լենինի հետ ունեցած առաջին հանդիպումը և զրույցը քանդակագործական արվեստի մասին ընդմիշտ մնաց Հակոբ Գյուրջյանի հիշողության մեջ:



Սկսվեց առաջին համաշխարհային պատերազմը: 1914 թվականի վերջին Գյուրջյանը մեկնեց Ռուսաստան: Հյուրընկալվելով Գորկու մոտ, Մուստամյակում, նա ոգևորված կերտում էր իր գրող-ընկերոջ դիմաքանդակը: 1914 թըվականի դեկտեմբերի 14-ին Պեշկովային ուղղած նամակում Գորկին գրում է. «Տաղանդավոր մարդ է: Գլուխս գերազանց է կերտել»: Պեշկովայի վկայությամբ, իր այդ դիմաքանդակը Գորկին համարում է քանդակագործության մեջ իրեն ներկայացնող լավագույն գործը:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո ցրտահար ու սովյալ Մոսկվայում Գյուրջյանը չտեսնված ոգևորությամբ լծվում է մոնումենտալ արվեստի պրոպագանդմանը:

Վ. Ի. Լենինի կանխամտածման համաձայն պետք էր ստեղծել արվեստի ականավոր գործիչների դիմաքանդակների պատկերասրահ: Գյուրջյանն ընտրեց Վրուբելին: Չտաքացվող արվեստանոցում, մոռացած ցուրտն ու քաղցը, քանդակագործն աշխատում էր: Երկու տարի անց գործն ավարտված էր: Տարիներ շարունակ նրան հուզող վրուբելյան փոթորկահույզ թեման իրական մարմնավորում ստացավ. ուղղանկյուն պատվանդանին Վրուբելի կիսանդրին է, իսկ հիմքի մոտ, երկաստիճան հարթակի վրա նստած է մտքերի մեջ խորասույզ Դևը: Հաջողությամբ պսակվեց Գյուրջյանի առաջին փորձը: Բայց մի անգամ գիշերը դժբախտություն պատահեց: Առավոտյան, մտնելով արվեստանոց, Գյուրջյանը սարսափից քարացավ: Վրուբելի կավաձույլ հուշարձանը փշուր-փշուր էր եղել: Չարաղետ պատճառը սաստիկ ցուրտն էր, սուր, ծակող քամին: Երկամյա աշխատանքն ապարդյուն կորավ:

Ուժեղ կամքի տեր պետք է լինի մարդը, որ կարողանա նման հարվածից հետո ոտքի կանգնել, չընկճվել և կրկին ձեռնամուխ լինել ստեղծագործական աշխատանքի:

Մոսկվայում, Տեատրալնի հրապարակում Մարքսի հուշարձանը դնելու իր մտադրությունը Գյուրջյանը հաղորդեց ճարտարապետներ Ս. Ալյոշինին և Ս. Կոլցովին: Աշխատանքը եռում էր: Թռչում էին շաբաթները, ամիսները... Վերջապես Մարքսի արձանը կրող գալարաձև կոմպոզիցիայի մակետը պատրաստ էր:

Ավերի ու կարիքի այդ ծանր ժամանակներում նման հուշարձանի կառուցումը բավական դժվարին գործ էր:

**Ռուսական արվեստի պատմություն** մենագրության 44-րդ էջում կարդում ենք. «Մարքսի հուշարձանը... մտահղացումն անշուշտ պատկանում է մոնումենտալ պրոպագանդայի ամենատաղանդավոր ստեղծագործություններին: Դրանում արտացոլված էին հեղափոխության ուժը, նրա ժողովրդական ակունքը և հոգևոր հանճարը՝ մարմնավորված Մարքսի պատկերաքանդակում»:

Մարքսի հուշարձանի հիմնադրմանը՝ 1920 թվականի մայիսի 1-ին, ներկա էր Լենինը: Անմոռաց րոպեներ ապրեց Գյուրջյանը՝ կանգնած Վլադիմիր Իլյիչի կողքին: Զրույցի ժամանակ քանդակագործը դիմեց Լենինին, խնդրելով ընտրել մի քանի սեանսների ժամանակը, որպեսզի ինքը հնարավորություն ունենար կերտելու նրա դիմաքանդակը:

Առաջնորդի իմաստությունը, նրա մեծությունը, մարդկայնությունը առինքնել էին վարպետ քանդակագործին, համակել նրան անհուն սիրով, ստեղծագործելու բուռն տենչով, ակնածանքով ու հիացմունքով: Քանդակագործն արդեն պատկերացնում էր առաջնորդի՝ գրանիտից կերտված վեհասքանչ կերպարը: Ձեռքերը ձգվում էին դեպի հատիչը: Նա հասկանում էր՝ Լենինի կերպարի կերտումը մեծ պատիվ է, մեծ պատասխանատվություն:

Լենինի հետ ունեցած զրույցի մասին Գյուրջյանը պատմեց Ա. Վ. Լունաչարսկուն, որի գիպսե կիսանդրին նոր էր ավարտել: Լունաչարսկու դիմաքանդակում նրան հաջողվել էր ներկայացնել լենինյան կոհորտայի այդ փայլուն ներկայացուցչի անզուգական խառնվածքը:

Մի քանի օր անց, 1920 թվականի հունիսի 21-ին, Անատոլի Վասիլևիչը դիմեց Լենինին՝ հետևյալ խնդրանքով. «Թանկագին Վլադիմիր Իլյիչ: Նկարիչ-քանդակագործ Գյուրջյանին Դուք խոստացել եք մի քանի անգամ կեցվածք ընդունել: Հայ է այդ արվեստագետը և շուտով մեկնելու է Արևմուտք: ...Շատ լավ քանդակագործ է նա, և կիսանդրին անշուշտ լավը կլինի: Ես շատ եմ խնդրում Ձեզ չմերժել և այդ աշխատանքի համար նշանակել համեմատաբար կարճատև սեանսներ մոտակա ժամանակներս:

Ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը»:

Հակոբ Գյուրջյանին չհաջողվեց կերտել Վլադիմիր Իլյիչի քանդակը: Խանգարեց առաջնորդի զբաղվածությունը: Իսկ քանդակագործն ստիպված եղավ մեկնել Փարիզ:

Երբ սովետական երկրի նկատմամբ թշնամաբար տրամադրված տարրերն իմացան բոլշևիկների հետ Հակոբ Գյուրջյանի ակտիվ աշխատակցության մասին, ավերեցին Բուլոնիայում գտնվող նրա արվեստանոցը: Քանդակագործին ոչինչ չէր մնում անելու, բացի իր Ֆրանսիա մեկնելն արագացնելուց: 1921 թվականի սկզբին նա եկավ Փարիզ՝ դառնացած,

հիվանդ: Արվեստանոցը վեր էր ածվել ջարդըրտված, փշուր-փշուր եղած քանդակների գերեզմանոցի: Անվնաս էին մնացել միայն մի քանի դիմաքանդակներ՝ մարմարից ու բրոնզից:

Ուժեղ կամքի, մեծ եռանդի տեր Գյուրջյանը շուտով թոթափեց բախտի այդ ծանր հարվածը: Չտեսնված աշխատասիրությամբ ու ոգևորությամբ նա սկսեց գործել: Ռուսաստանում ապրած տարիներին հաճախ էր տեսել, թե մարդիկ ինչպիսի՜ համառությամբ ու ոգևորությամբ են արկանում նոր կյանքի հիմքերը: Նոր կյանք էր սկսվել և Գյուրջյանի համար— պայքար ինքնահաստատման համար՝ իրադարձություններով հարուստ Փարիզում: Կըրկին փայլատակեց քանդակագործի տաղանդը: Կրկին սկսեցին խոսել նրա մասին:

Միայն անդադրում, ոգեշունչ աշխատանքի շնորհիվ Հակոբ Գյուրջյանին հաջողվեց իր տեղը գտնել եվրոպական արվեստում: Մեծ վարպետը մարդկային սխրանք գործեց, դրանով իսկ դրսևորելով մեր ժողովրդի լավագույն հատկությունները, կորովն ու կենսունակությունը իր սեփական լույսով փայլել հյուրընկալ Ֆրանսիայի աստեղալի երկնակամարում:

Փարիզի լրագրերից մեկը գրում էր. «Հակոբ Գյուրջյանն իրավամբ համարվում է ժամանակակից ամենաականավոր քանդակագործներից մեկը... Նա միշտ զարգացնում է իր արվեստը, միշտ որոնում, և նրա ամեն մի արձանը ստեղծագործության նոր փուլ է, նոր նվաճում»:

«Փարիզն այնպես է վարժվել Հակոբ Գյուրջյանի նորանոր գործերի մշտական ներկայությանը ցուցասրահներում ու ցուցահանդեսներում, որ նրա մահը՝ 1948 թվականի դեկտեմբերին, ազդեց մեզ վրա, ինչպես կազդեր հայրենակցի մահը: Մենք մոռացել էինք, որ նա հայ է, բայց մի՞թե նա կարող էր մոռանալ իր հայրենիքը»,— գրել է ֆրանսիական արվեստաբան Մաքսիմիլիան Գոթիեն Հակոբ Գյուրջյանին նվիրված իր մենագրության մեջ, որը լույս է տեսել Փարիզում:

Ես բախտ եմ ունեցել տասնյակ տարիներ վայելելու բարեկամությունը Մարտիրոս Սարյանի, որն ստեղծել է հայկական գեղանկարչության իր հանրահանաչ դպրոցը: Ո՞վ է սակայն, առաջին քանդակագործը հայկական արվեստում: Այս հարցին ոչ ոք չի պատասխանել:

1982 թվականի մայիս—հունիս: Հակոբ Գյուրջյանի ծննդյան 100-ամյակի առթիվ Հայաստանի պետական պատկերասրահում բացվեց քանդակագործի ստեղծագործությունների ցուցահանդեսը: Առաջին անգամ բազմաթիվ այցելուների աչքի առաջ էր նրա ստեղծագործական համարյա ողջ ժառանգությունը: Ահա նա, քանդակագործական արվեստի առաջին երգիչը հայկական մշակույթում՝ ժողովրդի հիացմունքին, ճանաչմանն արժանացած: Մեծ վարպետի հանճարը, նրա ոգեշնչանքը մարմնավորվել ու քարացել են բրոնզի, մարմարի, բազալտի մեջ:

Ճիշտ է Մաքսիմիլիան Գոթիեն. «...Մի՞թե նա կարող էր մոռանալ իր հայրենիքը»: Հակոբ Գյուրջյանն իր ստեղծագործություններից հինգ հարյուրը կտակել է հարազատ Հայաստանին: Դրանք գտել են իրենց մշտական հանգրվանը վերածնված հայկական հողում:

Կատարյալ արվեստը սիրվում է բոլորի կողմից: Ֆրանսիական քանդակագործության ու գեղանկարչության գլուխգործոցների հետ միասին Գյուրջյանի ստեղծագործությունները ցուցադրվել են Ճապոնիայում, Շվեդիայում, Սովետական Միությունում, Ամերիկայի Միացյալ Նահանգներում և այլ երկրներում: Նրա անունը դրվել է այնպիսի խոշորագույն վարպետների կողքին, ինչպիսիք են՝ Բուրդելը, Մայոլը, Դելակրուան, Կուրբեն, Ռենուարը, Գոգենը, Վան-Գոգը, Մատիսը, Պիկասոն:

...Շրջում եմ Հայաստանի պետական պատկերասրահի ցուցահանդեսներով, երկյուղածությամբ հպվելով Հակոբ Գյուրջյանի քանդակներին և մտածում. կատարյալ արվեստագետը ինտերնացիոնալիստ է, համաշխարհային արվեստը բոլոր ժողովուրդների ազգային ստեղծագործության անմահ քերթվածների սքանչելի մի ծաղկեփունջ է:

Ինչո՞վ է թանկ մեզ համար Գյուրջյանը: Վարակիչ ոգով, համարձակությամբ, նորարարությամբ:

Վերստին հիշում եմ Մարտիրոս Սարյանի խոսքերը. «Երբ ես շրջում եմ ժամանակակից խոշորագույն քանդակագործներից մեկի՝ Հակոբ Գյուրջյանի ստեղծագործությունների ցուցահանդեսում, տեսնում, զգում եմ, որ իր քանդակները կերտելիս նա ոգեշնչվել է իր Հայաստանի արևով ու գույներով»:

Ինչպես արդեն ասել եմ, մեծ վարպետն իր ողջ կյանքում երազում էր վերադառնալ հայրենիք: 1928 թվականին քույրը՝ Մարոն, այցելեց եղբորը՝ Փարիզում: Նա խնդրեց քրոջը և նրա ամուսնուն՝ Ս. Մուրադյանին (որն այն ժամանակ ֆրանս-սովետական բանկի դիրեկտորն էր), որ նրանք խոսեն Գորկու կամ Լունաչարսկու հետ: Մեծ արվեստագետը, որի հոգում միշտ վառ մնաց հայրենասիրության կրակը, մինչև կյանքի վերջը հավատարիմ մընաց իր դավանանքին, հպարտությամբ կրելով սովետական անձնագիրը: Սակայն այդպես էլ նրան չհաջողվեց հայրենիք վերադառնալ:

Հայրենիք վերադարձան նրա սքանչելի ըստեղծագործությունները, որոնք սպասում են իրենց արժանի և մշտական ցուցասրահին:

---

# ՏՊԱՏԱՌԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԵՎ ԹՂԹԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆԸ

**Խ. Ե. ՍԱՄՎԵԼՅԱՆ**

*ԳՐԱՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԳՈՐԾԻ հսկայական աճը մեր երկրում, ուր լույս տեսնող գրականության տպաքանակը հասնում է աննախադեպ չափերի, խիստ կարևոր է դարձնում տպագրական թղթի խնայողության հարցը:*

*Հայտնի է, որ թղթի արտադրության հումքային աղբյուրներն անսպառ չեն: Այս պարագայում հասկանալի է, թե ինչու թուղթ սպառող ձեռնարկությունները, արձագանքելով կուսակցության ու կառավարության կոչերին, նոր միջոցառումներ են մշակում թղթի ծախսման ասպարեզում խնայողության հասնելու համար: Թղթի խնայողության նոր աղբյուրների հայտնաբերումը և այդ միջոցներից արդյունավետ օգտվելը տասնմեկերորդ հնգամյակի կարևորագույն առաջադրանքներից են:*

*Տպագրական թղթի խնայողությունը պայմանավորված է մի շարք գործոններով, որոնց մեջ կենտրոնական տեղ են գրավում տպատառերի հետ առնչվող հարցերը:*

*Տպատառերի միջոցով թղթի խնայողության հասնելու մղումը բնավ էլ նոր չէ: Այն մտահոգել է բոլոր ժամանակների ու դարերի հրատարակիչներին: Անցյալի փորագրիչներն ու հրատարակիչները տքնել, մեծ ճիգ ու ջանք են գործադրել և հասել են շոշափելի արդյունքի: Այսպես, Հակոբ Մեղապարտի ջանքերով նրա հրատարակությունների մեջ սկզբնավորվում և մինչև մեր օրերը հարատևում են խելամտորեն ստեղծված ծոցագրերն ու միացյալ տառերը, որոնք դարեր շարունակ կիրառվել են շարվածքային գործում՝ ապահովելով զգալի խնայողություն:*

*Խնայողության խնդիրը նույնքան կարևոր ու կենսական է եղել նաև ձեռագիր մատյանների շրջանում: Մի շարք հանրահայտ ու հաճախ կրկնվող բառերի կրճատ գրությունը ձեռագրերի մեջ աներկբայելի են դարձնում, որ միջնադարյան գրիչների ու «բանի սպասավորների» համար խնայողության խնդիրը եղել է ուշադրության կենտրոնում: Պետք է ենթադրել, որ միջին դարերում ասպարեզ մտած և (յեվ) փակագիրը ծնունդ է առել հենց խնայողության հիման վրա: Թերևս հարանման շարժառիթով է պայմանավորված նաև ե (յէ) և ո (վո)երկհնչուն տառերի գոյությունը մեր այբուբենում:*

*Երբ խոսքը վերաբերում է տպատառերի միջոցով ձեռք բերվող խնայողությանը, ապա գործնականում այդ նշանակում է մեծացնել շարվածքային տողի ու էջի տարողունակությունը: Այդ նշանակում է տողում ավելի շատ տառ և էջի մեջ ավելի շատ տող տեղավորելու միջոցով կրճատել գրքի էջերի քանակությունը:*

*Տողի տարողունակությունը մեծացնելու հարցը առանց դժվարության կարելի է լուծել տառապատկերը փոքր-ինչ նեղացնելու միջոցով, եթե միայն այս մոտեցումը չհարվածի տառաստեղծման կարևորագույն առաջադրանքին՝ դյուրընթեռնելիությանը: Ուստի խնայողության խնդրին անդրադառնալիս*

մեկում փորձ չի արվել հասնելու այն բաղձալի խնայողությանը, որն իրականացվում է անշպոն շարվածքի միջոցով։ Իսկ թե ինչու և ինչպես է, որ անփութորեն ձեռքից բաց է թողնվել այդ հսկայական չափերի հասնող հնարավորությունը, այս հարցին պետք է պատասխան տան հրատարակչությունները։ Մեր կարծիքով, տպագրական թուղթը խնայողաբար ծախսելու համար միայն ներքին մղումներն ու բարի ցանկությունները քիչ են, հրատարակիչները պետք է տիրապետեն նաև իրականացնելու մասնագիտությանը, որը, ցավոք, չեն կարողանում։

Խոսենք մի երրորդ հնարավորության մասին։

Ինչպես հայտնի է, գրքերի շարվածքի համար գոյություն ունեն հատուկ ստանդարտացված չափեր։ Մեր հանրապետությունում շարվածքը կատարվում է գերազանցապես 5, $5^{1}/_{2}$, 6, $6^{1}/_{2}$ կվադրատի վրա։ Մասնագետներին հայտնի է, որ չափային հանձնարարականների մեջ նույնպիսի իրավունքով տեղ են գրավում նաև $5^{1}/_{4}$, $5^{3}/_{4}$, $6^{1}/_{4}$ և $6^{3}/_{4}$ չափերը, որոնք, սակայն, երբեք չեն կիրառվում մեր հրատարակչական առօրյայում։ Առերևույթ այս երկու խումբ թվերի տարբերությունը կարծեք թե այնքան էլ մեծ չէ, սակայն հաշվարկը ցույց է տալիս, որ շարվածքում մեկը մյուսի նկատմամբ ունի 4,8 տոկոսի տարբերություն։ Այդ նշանակում է, որ եթե $5^{1}/_{2}$ կվադրատ շարվածքային չափը փոխարինենք $5^{3}/_{4}$-ով, ապա յուրաքանչյուր 400 էջանոց գիրքը վերաշարելու դեպքում տնտեսված թղթի հաշվին կարող ենք տպագրել մեկ 19 էջանոց բրոշյուր նույնքան տպաքանակով։ Ինչպես նկատելի է, ստացված արդյունքն այնքան փոքր չէ, որ չարժանանա ուշադրության, ուստի մի կողմից հրատարակչությունները պետք է մտահոգվեն այդ չափերը ևս կիրառելու, մյուս կողմից՝ տպարաններում պետք է ստեղծել համապատասխան հնարավորություն անհրաժեշտության դեպքում նաև այդ չափերով շարվածք կատարելու համար։ Պետք է նշել, որ տպարանների շարվածքային տեղամասերը բավարար չափով ապահովված չեն լինոտիպի կոտորակային չափերով, մյուս կողմից՝ տպարանները չափափոխման լրացուցիչ աշխատանքից խուսափելով, դիմադրում են դրանց գործադրմանը՝ հրատարակչությանը պատճառելով թղթի զգալի կորուստներ։

ՍՍՀՄ հրատպետկոմի № 401 հրամանագրով 1982 թ. հունվարի 1-ից շրջանառության մեջ է դրվել նոր համակարգ (ОСТ—29.62—81), որի մեջ նոր ու ավելի մեծ տեղ է հատկացված քառորդային չափերին։ Այդ նշանակում է, որ հրատարակչություններն իրավունք չունեն և չպետք է նախկին անտարբերությունը շարունակեն, առավել ևս, երբ նոր հրահանգն ունի նաև պարտավորեցնող կետ։

Թղթի խնայողության շատ մեծ հնարավորություններ պայմանավորված են շարվածքային տառաչափի ընտրությամբ։ Շարվածքի տառաչափ ընտրող գրաշարին այդ մասին ցուցում տվողը պետք է կարողանա ճիշտ որոշել հրատարակվող գրականության բնույթը, տվյալ գրքի մասսայականության չափը, այդ գրականությունից օգտվողի կրթական մակարդակն ու տեսողական հնարավորությունները և ըստ այնմ որոշի շարվածքի տառաչափը։

Ինչպես չի կարելի Նարեկացու Մատյան ողբերգությունը մասսայական տպաքանակի դեպքում 8-ի տառաչափով շարել, այնպես էլ անթույլատրելի է, երբ տեղեկատու գրականությունը՝ մատենագիտությունները, բառարանները, հանրագիտարաններն ու կատալոգները շարվում են 10 կետաչափանոց տառով։

Որքան ուրախալի է, որ վերջին երեք տասնամյակի ընթացքում մեծ տեղ է հատկացվում մատենագիտությունների հրատարակմանը, նույնքան ցավալի է, որ այդ մատենագիտությունները 10-ի տառաչափով շարվելու հետևանքով ո՛չ միայն անտեսվել է հսկայական չափերի հասնող թղթի խնայողությունը, այլև անհարկի մեծացել է այդ գրքերի ծավալը և դրանք դարձել են դժվար գործածելի։

Օրինակներ շատ կարելի է բերել, բայց ամենից թարմը «Հասկեր» ամսագրի մատենագիտությունն է։ Այս գրքի հիմնական բնագիրը շարված է 10-ի



տառաչափով, որի հետևանքով մեկ էջում տեղավորվել է 36 տող, մինչդեռ 8-ի տառաչափով շարվելու դեպքում նույն էջում կարելի էր տեղավորել 43 տող (անշպոն շարվածքի դեպքում՝ նույնիսկ 54)։ Հրատարակիչների՝ շարվածքի տառաչափը ճիշտ որոշելու դեպքում գիրքը 308-ի փոխարեն կունենար 258 էջ։ Միայն այս գրքում շռայլված թղթի հաշվին կարելի էր տպագրել 50 էջանոց մի այլ մատենագիտություն, նույնքան տպաքանակով։ Եթե նման շռայլումները հազվադեպ լինեին, թերևս հարկ չէր զգացվի անդրադառնալու այս փաստին, բայց եթե որևէ մեկը ցանկանա հետամտել, կարող է համոզվել, որ «Հասկերի» մատենագիտությունը ոչ միայն բացառիկ երևույթ չէ, այլ կան ավելի աններելի խախտումներ մեծ ու փոքր հրատարակչությունների առօրյայում, ուստի բնավ էլ ավելորդ չենք համարում Հրատպետկոմի ուշադրությունը հրավիրել այս փաստի վրա։

Նույնը պետք է ասել նաև տեղեկատուների, բառարանների ու կատալոգների մասին, որոնց շարվածքը պետք է կատարել ո՛չ միայն 8-ի, այլև 7-ի ու 6-ի տառաչափերով։ Այս հանգամանքը սրանից շուրջ 135 տարի առաջ գիտակցելով, Մխիթարյան հայրերը հատուկ տառ են պատրաստել և Առձեռն բառարանի շարվածքն իրականացրել են 6 կետաչափանոց տառերով։

Մատենագիտությունները, տեղեկատուները, հանրագիտարանները, բառարաններն ու կատալոգները փոքր տառաչափով շարելու նպատակահարմարությունը պայմանավորված է այդ հրատարակությունների օգտագործման բնույթով։ Նման գրականությունից օգտվող որևէ անձ երբեք չի վերցնում և մեկ շնչով ծայրից ծայր կարդում, ասենք, բառարանի չորս հատորները, ուստի և այստեղ չի կարող խոսք լինել տառաչափի փոքրության հետևանքով հոգնածություն առաջանալու մասին։ Եթե այդպես է, իսկ դա իրոք այդպես է, ապա մեր այդ կարգի հրատարակությունները, սկսած Մալխասյանի բառարանից, կարող էին ունենալ ավելի փոքր ծավալ ու բարեձև տեսք, և օգտվելը կդառնար ավելի դյուրին։

Հրատարակչությունները թղթի զգալի կորուստներ են ունենում նաև գրքի լրացուցիչ բնագրերի տառաչափերը ոչ ճիշտ նշանակելու (շարել տալու) հետևանքով։

Յուրաքանչյուր շարքային ընթերցողի հայտնի է, որ գրքի լրացուցիչ բնագրերը (առաջաբանները, հավելվածները, ծանոթագրությունները, բառարաններն ու անվանացանկերը) միշտ ավելի փոքր տառաչափով են շարվում, քան հիմնական բնագիրը։ Ընթերցողները գիտեն, որովհետև առիթ են ունենում ծանոթանալու նաև ռուսերեն հրատարակություններին... Բայց արդյոք մեր հրատարակչությունները խստությամբ հետևո՞ւմ են այդ սկզբունքին և կիրառո՞ւմ են այն, ինչ օրինականացված է միութենական մյուս հանրապետություններում։ Ցավոք, ոչ միշտ։

Գրքեր կան, որոնց ո՛չ միայն առաջաբանները, այլև հավելվածներն ու բառարանները շարված են նույն տառաչափով, ինչ գրքի հիմնական բնագրերը։ Առանձնակի շռայլություն է նկատվում նաև անվանացանկերի շարվածքում։ Երբեմն գրքի այդ բաղադրամասը շարում են 10-ի տառաչափով և այն էլ մեկ սյունակի վրա, ոչ լրիվ իրացնելով էջի օգտակար մակերեսը։ Ավելի հաճախ կատարվում են նաև շարվածքային տեխնիկայի այլ կարգի խախտումներ։

Վերը տեսանք, որ անշպոն շարվածքով հրատարակված գրքերը չեն բավարարում ընթերցողներին։ Սակայն լրագրային շարվածքի փորձը ցույց է տալիս, որ փոքր տողաչափերի դեպքում անշպոն շարվածքը* տեսողական իմաստով դժվարություններ չի հարուցում։ Տվյալ դեպքում, քանի որ խոսքը վերաբերում է անվանացանկերին, և մենք գործ ունենք երկու սյունականոց կարճ տողաչափերի հետ, անշպոն շարվածքը ոչ մի անպատեհություն չի առաջացնում, ուստի և չպետք է մերժել, առավել ևս, երբ անվանացանկի ծավալը մեծ է, և տնտեսված թուղթը կարող է հասնել շոշափելի չափերի։

* Անշպոն շարվածք արտահայտությունը լինոտիպի դեպքում պետք է ընդունել պայմանականորեն։

Ինֆորմացիայի հոսքի արդի պայմաններում, անտարակույս, անվանացանկերն ունեն շատ կարևոր նշանակություն։ Այս ամենով հանդերձ չի կարելի ու չպետք է խրախուսվեն այստեղ տեղի ունեցող թղթի շռայլումները։ Ինչպես հայտնի է, տարվա սկզբին վաճառքի հանվեց Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա գիրքը։ Միանգամայն տեղին է ու տրամաբանված այս գրքի վերջում անվանացանկի առկայությունը, սակայն ամենևին տրամաբանված չէ այդ անվանացանկը 10 կետաչափի վրա շարելու փաստը։ Եթե շարվածքը 10-ի փոխարեն իրականացվեր 8 կետաչափի վրա, ապա 82-ի փոխարեն անվանացանկը կունենար 66 էջ ծավալ։ Ճիշտ է, տարբերությունը ընդամենը 16 էջ է, սակայն 7.000 տպաքանակի դեպքում՝ խնայված թղթի հաշվին կարելի էր տպագրել 46 թեկնածուական ավտոռեֆերատ։

Տպատառերի ճիշտ ու խելացի օգտագործման ու շարվածքային տեխնիկայի ինտենսիվացման բնագավառում կան թղթի խնայողության նաև այլ աղբյուրներ ու պոտենցիալ հնարավորություններ, որոնք, վերը նշվածների համեմատությամբ, թեև ավելի համեստ արդյունքներ են արձանագրում, սակայն չպետք է անուշադրության մատնել հենց թեկուզ այն պարզ տրամաբանությամբ, որ միութենական մասշտաբով այդ կարգի տնտեսումները նույնպես համարվում են խրախուսելի։

Նշենք դրանցից մի քանիսը։

ՍՍՀՄ ստանդարտների պետական կոմիտեն ГОСТ—7.12—77-ով հաստատել և շրջանառության մեջ է դրել 635 միավորից բաղկացած հաճախ օգտագործվող բառերի կրճատ գրության մի բառացանկ, որի կիրառումը դարձել է պարտադիր ռուսերեն լույս տեսնող բոլոր հրատարակությունների համար։ Նման մի բառացանկի կազմումն ու օրինականացումը նույնքան կարևոր է նաև հայերենի համար։ Սակայն, որքան հայտնի է, իրավասու մարմիններն այդ ուղղությամբ գործնական որևէ քայլի չեն դիմել, մինչդեռ հաճախ օգտագործվող բառերի կրճատ գրության կիրառմամբ հրատարակչական գործում կարելի է ապահովել զգալի խնայողություն, էլ չենք խոսում այդ բառերի կրճատ գրության հարցում եղած տարբերայնությունը վերացնելու մասին, որը հրատարակչական գործում նույնքան կարևոր է ու անհրաժեշտ։ Ավելորդ չենք համարում նշել, որ նախկինում հայերենի շարվածքային գործում եղել է մի քանի տասնյակ բառերի կրճատ գրության ավանդույթ, ավելին, մի քանի բառերի համար նույնիսկ ստեղծվել են փակագրեր, կցագրեր ու այլևայլ բնույթի միացյալ տառեր ու ծոցագրեր։ Եթե անցյալում, նվազ տպաքանակի պայմաններում, կարևորություն է տրվել դրանց գործածությանը, ապա այսօր ավելի քան տրամաբանական է դառնում կրճատ բառաձևերը կյանքի կոչելու անհրաժեշտությունը։ Պետք է խորապես գիտակցել, որ շարվածքային գործում ձեռք բերված խնայողությունը ո՛չ միայն փոքրացնում է գրքի ծավալն ու տրնտեսվում է թուղթ, այլև զգալապես իջեցվում է հրատարակվող արտադրանքի ինքնարժեքը, ինչը չի կարող չմտահոգել հրատարակիչներին։

Օգտվելով պատեհ առիթից՝ ցանկանում ենք մի քանի խոսք ասել նաև առոգանության նշաններ կրող ձայնավոր (միաձույլ) տառերի (ա՞ ա՜ ա՛, ե՞ ե՜ ե՛, է՞ է՜ է՛, ի՞ ի՜ ի՛, ո՞ ո՜ ո՛, օ՞ օ՜ օ՛) գործածության մասին։ Հրատարակչական առօրյայում կարևորություն ներկայացնող այս տառանիշերը տվյալ դեպքում մեզ զբաղեցնում են ո՛չ միայն ու ո՛չ այնքան խնայողության, որքան շարվածքային տեխնիկայի անաղարտության ու հրատարակվող բնագրերի դյուրընթեռնելիության առումով։

Հայոց լեզվի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ առոգանության նշանները դրվում են ոչ թե նախադասության վերջում, այլ առոգանվող բառի վրա։ Ձեռքի շարվածքի «տիրապետության» շրջանում այդ խնդիրն ստացել է համապատասխան ու բավարար լուծում։ Հայ փորագրիչները 6 ձայնավոր տառերի վրա համապատասխանաբար տեղադրել են 3-ական առոգանության նշան և ստեղծել են 18 միավորից բաղկացած միաձույլ տառանիշերի մի համալիր, որը և հաջողությամբ օգտագործել են շարվածքում ըստ անհրաժեշտության։ Դրան հակառակ տողաձույլ մեքենայի գոյության հենց սկզբից մինչև այսօր շուրջ յոթ տասնամյակ առոգանության նշանակիր ձայնավորները, լի-



նոտիպի ավտոմատ կարգավորման համակարգում չունենալով իրենց տեղը և տառարկղում համապատասխան «կացարան», ի դժբախտություն շարվածքային արվեստի, դուրս են մղվել գործածությունից։ Ավելին, «Գրքի սովորական» և «Արամյան» տառատեսակների համալիրում երբեք չեն եղել և այժմ էլ չկան այդ 18 միաձույլ տառամայրերը։ Ուրախությամբ պետք է արձանագրել, որ նոր տառատեսակների ստեղծման ժամանակ խորապես գիտակցվել է միաձույլ տառերի կարևորությունը և սրբագրվել են անցյալում թույլ տրված սխալները։ Շուրջ երկու տասնամյակ է, ինչ նոր տառատեսակների հետ առանց բացառության ստացվում են այդ 18 նշանակիր ձայնավորների միաձույլ տառամայրերը և այսուհանդերձ, քանի որ դրանք տեղ չունեն լինոտիպի ավտոմատ կարգավորման համակարգի մեջ, չեն կարողանում շարվածքային գործում վերականգնել իրենց ավանդական ստատուսը։

Տողաձույլ մեքենայով կատարվող շարվածքից գրաշարները դուրս են նետել այդ նշանների միաձույլ տառամայրերը և գործ են ածում դրանց հավաքովի «համարժեքը»՝ ձայնավորից անմիջապես հետո շարվածքում տեղադրում են առոգանության նշանը, մեծ բացատ ու անհարկի ճեղք առաջացնելով բառակապակցության մեջ։ Այս մեխանիկական մոտեցման պատճառով բառը բաժանվում է երկու մասի, որի հետևանքով խախտվում է տառաբաժանումների կանոնիկ հաջորդականությունը։ Տրոհված բառը կորցնում է սահուն ընթերցման ռիթմը, որն իր հերթին բացասաբար է անդրադառնում դյուրընթեռնելիության վրա, իսկ մյուս կողմից ընկնում է շարվածքի տեխնիկական որակը։ Արտաքինից սովորական խախտում թվացող այս անկանոնությունը արտադրության ոլորտում ունի իր լուրջ և օբյեկտիվ պատճառները։

Հայտնի է, որ լինոտիպ մեքենան ունի ընդամենը 92 միավոր տառամայր տեղավորելու և ավտոմատ կերպով դրանք շարվածքի մեջ մտցնելու հնարավորություն։ Հավելյալ նիշերը տեղակայվում են գրաշարի աջ կողմում հատուկ տառարկղի մեջ և շարվածք են ներմուծվում ձեռքով։ Ռուսական տառերի համալիրն ունի 93 միավոր տառանիշ, որից 92-ը շարվածքի մեջ են մտցվում ավտոմատ սարքի միջոցով, իսկ մեկը՝ գլխատառ Щ-ն տեղավորվում է կողային տառարկղում։ Դրան հակառակ՝ հայերեն տառերի համալիրը բաղկացած է 134 միավորից, որից 92-ը ենթարկվում են ավտոմատ սարքի կարգավորմանը, իսկ 42-ը, որոնց մեջ նաև 18 նշանակիր միաձույլ տառանիշները, դուրս են մնում ավտոմատացման ոլորտից։ Ռուսերեն շարվածք անողը տառային համակարգի լրիվ ավտոմատացման շնորհիվ կատարում է օրվա իր աշխատանքային առաջադրանքը։ Հայերենի դեպքում, քանի որ շարվածքում օգտագործվող տառանիշների մոտ մեկ երրորդը դուրս է մնում ավտոմատացման ոլորտից, գրաշարը դրանք շրջանառության մեջ դնելու դեպքում երբեք չի կարողանում նույն արտադրողականությունն ապահովել։ Քանի որ վարձատրման նորմանները միասնական են, ուստի հայերենի գրաշարը նաև չի կարողանում միևնույն աշխատավարձն ստանալ։ Այս պատճառով գրաշարը շրջանցում է կողային արկղի տառանիշերը գործածության մեջ դնելու պարտականությունը և կիսատ-պռատ միջոցներով ձգտում է ապահովել իր աշխատանքային նորման։ Ընդ որում գրաշարներն այդպես են վարվում ո՛չ միայն միաձույլ նշանների հետ, այլև գլխատառ 0-ի փոխարեն միշտ իբրև կանոն գործ են ածում զրո թվանշանը, և այլն։

Այն, ինչ այսօր շարվածքային տեխնիկայի առումով կատարվում է առոգանության նշանների հետ, անհանդուրժելի է, ուստի պետք է, ինչ գնով էլ լինի, վերականգնել մեր շարվածքային տեխնիկայի անաղարտությունը։ Այդ են պահանջում մեր լեզվի առանձնահատկությունը, առոգանության նշանների կիրառման մեր դարավոր ավանդույթը, մեր տպատառերի դյուրընթեռնելիությունը և, վերջապես, մենք՝ ընթերցողներս։ Սակայն որքան համոզված ենք, որ վերականգնումն անհրաժեշտ է, նույնքան վստահ ենք, որ այս կնճռոտ հարցը չի լուծվի, մինչև որ գրաշարների ցուցաբերած սուբյեկտիվ վերաբերմունքի հաղթահարման հետ չվերանան վերը նշված օբյեկտիվ պատճառները։

Շարվածքում միաձույլ նշանակիր տառերի իրավունքը վերականգնելու համար պետք է կարգավորել հայերենի գրաշարին հավելյալ վարձատրության

տալու հարցը և պարտադիր դարձնել կողային արկղում գտնվող բոլոր տառանիշերի օգտագործումը։

Քանի որ տպագրական թղթի խնայողության հարցում որոշակի դեր ունի նաև շարվածքային տեխնիկան, ուստի հարկ է մի քանի խոսք ասել նաև միալար շարվածքի կանոնների պահպանման մասին։ Ըստ ընդունված կարգի, շարվածքային տողում ամենամեծ բառաբաժանումներն իրենց չափով չպետք է գերազանցեն տառի բարձրության կեսը, իսկ ամենափոքրը՝ մեկ երրորդը։ Բայց արդյոք այդպիսի՞ն են մեր հրատարակություններում առկա բառաբաժանումների չափային համամասնությունները։

Ոչ ամենևին։

Մեր գրաշարները պետք է խորապես գիտակցեն, որ բառաբաժանումների համաչափությունը և միալար շարվածքի ընդհանուր կանոնների պահպանումը սերտորեն առնչվում են բնագրերի դյուրընթեռնելիության աստիճանի, ապա նաև թղթի խնայողության ռեժիմի հետ։ Թեև վերը նշեցինք, որ այստեղ ակընկալվող արդյունքները փոքր են, բայց պետք է կրկնենք, որ տպաքանակի մեծության պայմաններում փոքր խնայողությունները ևս տալիս են մեծ արդյունք։

Մեր խոսքն ավարտելուց առաջ կկամենայինք ասել, որ պետք չէ ծայրահեղությունների մեջ ընկնել. վերը բերված օրինակներից ու թված փաստերից չպետք է հանգել այն սխալ հետևության, թե կոչ է արվում արտադրություն իջեցվող բոլոր գրքերը շարել 9 կետաչափանոց տառով, առանց շպոնի, միայն քառորդային չափերի վրա։ Խնայողության նպատակով չի կարելի ու չպետք է շրջանցել ընթերցողին հանձնվող գրքի դյուրընթեռնելիությունը։ Չպետք է չարաշահել ո՛չ անշպոն շարվածքի հնարավորությունը և ոչ էլ փոքր կետաչափանոց տառերի օգտագործումը։ Որքան կարևոր է ու օգտակար այդ հնարավորություններից մտածված ու խելացի օգտվելը, նույնքան վտանգավոր է ու անիմաստ դրանց ոչ չափավոր ու ոչ խելացի կիրառումը, առավել ևս՝ չարաշահումը։

Մեր հոդվածի ծավալը հնարավորություն չի տալիս մանրամասն պարզաբանելու, թե ինչպես և ինչ չափերով պետք է կիրառվեն վերոհիշյալ միջոցառումները, սակայն հրատարակչություններում կան հատուկ մասնագետներ՝ տեխնիկական խմբագիրներ։ Վերջիններս պարտավոր են շատ հստակ, խոր ու համակողմանի գիտելիքներ ունենալ այդ ամենի մասին։

Տեխնիկական խմբագրից պահանջվում են պոլիգրաֆիական բազմակողմանի գիտելիքներ և գործիմացություն, մեծ հմտություն, նաև ճաշակ ու հետևողականություն։ Տեխնիկական խմբագիրը պետք է տիրապետի շարվածքային գործի, տպագրության ու կազմարարական աշխատանքների բոլոր գաղտնիքներին։ Նա պետք է լավ իմանա, թե որ գործը կարելի է փոքր տառաչափերով շարել, որը մեծ, որը շպոնով և որն առանց շպոնի, այդ ամենի վերաբերյալ ունենալով տրամաբանված ու գիտականորեն հիմնավորված տեսակետ։ Տեխնիկական խմբագիրը պետք է հստակ պատկերացում ունենա ձեռագիր-բնագիրը «գիրք դառնալու» բոլոր պրոցեսների վերաբերյալ, տիրապետի էջի գեղարվեստական ձևավորմանը՝ կոմպոզիցիային։ Ընդ որում միայն իմանալը քիչ է, նա պետք է կարողանա ճիշտ ու խելացի հրահանգավորման միջոցով իրականություն դարձնել իր մտահղացումները։

Հրատարակչությունում տպագրական թղթի տնօրինումը՝ շռայլումն ու խնայումը պայմանավորված են տեխնիկական խմբագրի ցուցումներով։ Տեխնիկական խմբագիրներն իրենց մասնագիտությանը լավ չտիրապետելու հետևանքով ո՛չ միայն ձեռքից բաց են թողնում խնայողության մեծ հնարավորություններ, այլև նույն նկատառումով դիմում են մանր ու չարդարացվող միջոցների՝ կատարում են անհարկի խտացումներ, որոնք, շոշափելի արդյունք չտալով հանդերձ, աղարտում են էջի կոմպոզիցիան և գցում գրքի շարվածքային ձևավորման որակը։

Տեխնիկական խմբագրի սխալներն ու վրիպումները ո՛չ միայն չեն շրջա-



կըվում արտադրության ոլորտում, այլև աննշան թվացող վրիպումները դառնում են աչք ծակող թերություններ և չափվում գրքի տպաքանակի մեծությամբ։

Տեխնիկական խմբագրի դերը թեև կարևոր է ու պատասխանատու, սակայն մեր հրատարակչական գործում ամենուրեք մատնված է անուշադրության։ Իբրև կանոն տեխնիկական խմբագիր են դառնում այդ մասնագիտության, պոլիգրաֆիական գործի հետ առնչություն չունեցող մարդիկ։ Ավելի անմխիթարական է վիճակը փոքր հրատարակչություններում։ Չունենալով տեխնիկական խմբագրի հաստիք, այդ գործը հանձնարարում են պոլիգրաֆիային անտեղյակ մարդկանց կամ տպարանի ղեկավար աշխատակիցներից մեկին։ Քանի որ տեխնիկական խմբագրության վճարման չափը պայմանավորված է գրքի ծավալով, ապա միանգամայն հասկանալի է, թե ինչու հաճախ 200 էջանոց, գրքի ծավալն աճում, դառնում է 250 էջ։

Վերը բերված փաստերը հանգեցնում են այն եզրակացության, որ տպագրական թղթի խնայողությունը կարգավորելու առաջին նախապայմանն այն է, որ իրավասու անձինք կարողանան հրատարակչություններն ապահովել տեխնիկական խմբագիրների մասնագիտացված կադրերով, ինչը տարիներ շարունակ բարձիթողի է մատնված հանրապետությունում։ Պետք է բարձրացնել տեխնիկական խմբագիրների պոլիգրաֆիական գիտելիքների մակարդակը՝ ըստ ամենայնի մեծացնելով նրանց դերը հրատարակչությունում։

Ինչ վերաբերում է թղթի խնայողությանը ուղղակի իմաստով, ապա պետք է կրկնենք, որ մեր հանրապետության հրատարակչական գործում եղել են ու կան տպագրական թղթի տնտեսման շատ որոշակի ու շոշափելի հնարավորություններ, բայց չեն եղել ու չկան այդ միջոցներն իրականության վերածելու համար անհրաժեշտ գիտելիքներ ունեցող ու սրտացավ վերաբերմունք ցուցաբերող մարդիկ, որի հետևանքով այդ հնարավորությունները մինչև օրս անտեսվել են՝ տխուր հետք թողնելով հրատարակված գրքերի ծալքերում։

Մի հոդվածում դժվար է ընդգրկել այն բոլոր միջոցները, որ այսօր պետք է կիրառվեն թղթի խնայողության համար, սակայն նման մի հոդվածի առիթով եթե ցուցաբերվի սթափ մոտեցում, կարելի է կանխել անուշադրության ու անտնտեսվարության հետևանքով տեղի ունեցող կորուստները։

---

# ՀԱՅԵՐԵՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՇԱՌԱՎԻՂՆԵՐԸ

**ՆՎԱՐԴ ՊԱՌՆԱՍՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻ ԾԱԳՄԱՆ ու պատմական զարգացման, արդի վիճակի ու հեռանկարների, հարևան լեզուների հետ նրա առնչությունների ամենատարբեր խնդիրների քննարկմանն էր նվիրված միջազգային հայերենագիտական գիտաժողովը, որը կայացավ 1982 թ. սեպտեմբերին, Երևանում: Առաջին անգամ չէր, որ Երևանը դառնում էր միջազգային գիտաժողովների վայր, սակայն առաջին անգամն էր, որ այստեղ հավաքվել էին աշխարհի տարբեր երկրներում հայերենի ուսումնասիրությամբ զբաղվող գիտնականներն ու մասնագետները՝ ներկայացնելու իրենց գիտական պրպտումների արդյունքները, քննարկելու իրենց հուզող և դեռևս վերջնական լուծում չստացած խնդիրներ, փոխհաղորդակցվելու միմյանց գիտական նվաճումներին, ճշտելու իրենց հետագա ուսումնասիրությունների ընթացքը: Եվ դա պատահական չէր:

Հին է հայ լեզվաբանական մտքի պատմությունը, որի ակունքները հասնում են մինչև մշակութային-լուսավորչական ու գիտական այն բուռն շարժումը, որ սկիզբ առավ հին Հայաստանում հայ գրերի գյուտից անմիջապես հետո: Սակայն այն ըստ ամենայնի ծավալվեց և զարգացման աննախընթաց հնարավորություններ ստացավ Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո միայն, երբ կուսակցության X համագումարում ընդունված և կենսագործվող լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ վիթխարի հնարավորություններ ստեղծվեցին հայ ժողովրդի ինչպես տնտեսական ու քաղաքական կյանքի, այնպես էլ ազգային մշակույթի, այդ թվում նաև մայրենի լեզվի ու նրա գիտական ուսումնասիրության զարգացման համար: Հայոց լեզուն ընդարձակեց իր գործառնության շրջանակները, դարձավ Սովետական Հայաստանի պետական լեզուն, իսկ ՍՍՀՄ կազմավորմամբ՝ նաև Սովետական Միության պետական լեզուներից մեկը, մի բան, որ դարձավ հզոր գործոն նրա մշակման, կատարելագործման ու զարգացման համար:

Պետական հիմքի վրա դրվեց նաև հայոց լեզվի ուսումնասիրության գործը: Ստեղծվեցին գիտական այնպիսի օջախներ, ինչպիսիք են՝ ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտը, Մատենադարանը, Երևանի պետական համալսարանի և Հայկական պետական մանկավարժական ինստիտուտի հայոց լեզվի ամբիոնները, որտեղ ծավալվեցին հայերենագիտական լուրջ աշխատանքներ: Հայերենն սկսեց ուսումնասիրվել համակողմանի և ամբողջովին՝ գիտական-տեսական ու գործնական հայեցակետերով: Երևանը դարձավ հայերենագիտության խոշորագույն կենտրոնն ամբողջ աշխարհում: Իսկ վերջին տասնամյակներին Հայաստանի գիտությունների ակադեմիան և գիտական մյուս օջախներն ստանձնեցին նաև աշխարհի հայագետների աշխատանքը համախմբելու և կոորդինացնելու գործը:

Հայտնի իրողություն է, որ, սկսած XIX դարից, հնդեվրոպական լեզվաբանության հիմնադրումից, հայերենը դարձել է նաև Եվրոպայի լեզվաբանների, ապա նաև Ամերիկայի գիտնականների ուսումնասիրության առարկան (Պետերման, Հյուբշման, Վինդիշման, Պետերսեն, Մեյե, ապա՝ Պիզանի, Ֆոգտ, Ֆեյդի, Բոնֆանտե, Գրեպին, Ռ. Շմիտտ և ուրիշներ): Հետաքրքրությունը հայերենի նկատմամբ հատկապես ուժեղացել է վերջին շրջանում, որն ունի իր պատճառները: Հայերենը, որպես հին հնդեվրոպական լեզու՝ գրի առնված մեկուկես հազարամյակ առաջ, իր հարուստ լեզվական հուշարձաններով արժեքավոր նյութ է ընձեռում հնդեվրոպական լեզուների համեմատական քերականությամբ զբաղվողներին: Պատմահամեմատական լեզվաբանության մեջ վերջին տարիներս կատարվող ուսումնասիրությունների համաձայն հայերենի բառապաշարը և քերականական կառուցվածքը պարունակում են այնպիսի հնատիպ գծեր, որոնք կարող են հնարավորություն ընձեռել ավելի ճշգրիտ վերականգնելու հնդեվրոպական նախալեզվի որոշ կարևոր կողմեր ու առանձնահատկություններ, ինչպես նաև նպաստել հնդեվրոպացիների նախահայրենիքի հարցի լուծմանը: Դրանով էլ բացատրվում են հետաքրքրության ակնբախ աճը հայերենի և նրա պատմության նկատմամբ, դրա ուսումնասիրության տարածքային սահմանների խիստ ընդլայնումը վերջին տարիներիս: Բնականաբար օտարազգի գիտնականներին առանձնապես հետաքրքրում է հայերենի պատմական ընթացքի ուսումնասիրությունը: Բազմակողմանիորեն հետազոտվում են մեր հին գրական լեզուն, նրա կառուցվածքը, գրաբարով գրված պատմական հուշարձանները, հայ հին մատենագիրների լեզուն ու ոճը: Ընդհանուր լեզվաբանական առումով նվազ հետաքրքրական չէ նաև հայոց լեզվի արդի վիճակի ուսումնասիրությունը: Հայտնի է, որ ժամանակակից հայերենը ներկայացված է երկու գրական տարբերակներով և բազմաթիվ բարբառներով: Այդպիսի տարբերակվածությունն ինքնին առատ նյութ է մատակարարում լեզվաբաններին, մղում նրանց ուսումնասիրելու ինչպես դրանց միջև եղած փոխհարաբերությունները, նույնպես և այդ երևույթի ներլեզվական և արտալեզվական պատճառները:

Գիտատեխնիկական հեղափոխության ժամանակակից փուլում, երբ ինֆորմացիայի ծավալն աճում է արտակարգ չափերով, գիտության ամեն մի բնագավառի համար առաջնահերթ անհրաժեշտություն է պարբերաբար հավաքվել, հանրագումարի բերել անցած ճանապարհի արդյունքները, նշել դեռ չլուծված պրոբլեմների շրջանակը, դրանց լուծման ուղիներն ու միջոցները:

Հայերենագիտությունը բացառություն չի կազմում: Այսպիսի պայմաններում, երբ խիստ մեծացել է հայերենի ուսումնասիրության աշխարհագրությունը և դրանով զբաղվում են աշխարհի ամենատարբեր երկրներում (հայագիտական ամբիոններ կան, օրինակ, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Շվեյցարիայում, Հոլանդիայում, Բելգիայում, հայերենն ուսումնասիրում են հնդեվրոպական լեզվաբանության շատ ականավոր ներկայացուցիչներ), գիտական առումով անխուսափելի անհրաժեշտություն է դարձել միջազգային գիտաժողովների կազմակերպումը:

1979 թվականի հունիսին Ֆիլադելֆիայում Պենսիլվանիայի համալսարանում միջազգային ուսումնասիրությունների և փոխանակությունների խորհրդի (YREX), Պենսիլվանիայի և Օհայո նահանգի Կլիվլենդի համալսարանների համատեղ ջանքերով հրավիրվեց հայերենագիտական միջազգային կոնֆերանս, որի աշխատանքներին մասնակցեցին 12 երկրների 25 մասնագետներ (այդ թվում՝ 4-ը Սովետական Միությունից): Ֆիլադելֆիայի կոնֆերանսը մի կողմից՝ ցույց տվեց այդպիսի գիտական հավաքների անհրաժեշտությունն ու արդյունավետությունը, մյուս կողմից՝ պարզ դարձրեց, որ նման գիտական համաժողովն առավել արդյունավետ ու օգտակար կլիներ, եթե հրավիրվեր հայերենագիտության խոշորագույն կենտրոնում՝ Երևանում:

Եվ, ահա Հայկական ՍՍՀ ԳԱ-ի, մասնավորապես լեզվի ինստիտուտի, անմիջական նախաձեռնությամբ և հանրապետության կառավարության գործուն աջակցությամբ հրավիրվեց և ամենաբարձր մակարդակով անցկացվեց միջազգային հայերենագիտական գիտաժողովը, որի աշխատանքներին մասնակցեցին և զեկուցումներով հանդես եկան Սովետական Միության գիտական կենտրոններից (Մոսկվա, Լենինգրադ, Թբիլիսի, Բաքու, Վիլնյուս) և արտասահմանյան 10 երկրներից, (ԱՄՆ, Ֆրանսիա, ԳՖՀ, Բելգիա, Դանիա, Հոլանդիա, Իտալիա, Կանադա, Լեհաստան, Բուլղարիա) ժամանած ավելի քան 100 լեզվաբաններ ու հայագետներ: Բացի անմիջական զեկուցողներից գիտաժողովի աշխատանքներին մասնակցում էին Հայաստանի գրեթե բոլոր հայերենագետներն ու հայագետները, գիտական, ուսումնական, հասարակական կազմակերպությունների բազմաթիվ ներկայացուցիչներ: Գիտաժողովի հիմնական նպատակն էր ի մի բերել և ամփոփել հայոց լեզվի ուսումնասիրության բնագավառում աշխարհի գիտնականների ձեռք բերած նվաճումները, ամրապնդել գիտական կապերը տարբեր երկրների հայագիտական կենտրոնների ու գիտնականների միջև, համախմբել գիտական ուժերն ու նշել հայերենագիտության հետագա զարգացման հեռանկարները և ուղիները:

Բազմազան ու լայն էր գիտաժողովի թեմատիկան և ընդգրկում էր հայերենի ուսումնասիրության բոլոր բնագավառները: Գրեթե բոլոր զեկուցումներն աչքի էին ընկնում գիտական բարձր մակարդակով: Դրանք մի կողմից՝ ամփոփում էին զեկուցող մասնագետների երկար տարիների գիտական պրպտումների արդյունքների և ներկայացնում էին հայերենագիտության ներկա մակարդակն ու նվաճումները, մյուս կողմից՝ արծարծում էին այն պրոբլեմային խնդիրները, որոնք հայերենա-

գիտության մեջ դեռևս սպասում են իրենց լուծմանը:

Ըստ բովանդակության՝ զեկուցումները խմբավորվում էին հիմնականում հետևյալ գիտակարգերի շուրջը՝ համեմատական լեզվաբանություն, լեզվի պատմություն, լեզվի տարբեր մակարդակների համակարգային ուսումնասիրություն, բարբառագիտություն, զուգադրական ու տիպաբանական լեզվաբանություն, հանրալեզվաբանություն և կիրառական լեզվաբանություն: Դրանցում քննարկված հարցերն իրենց ընդգրկունությամբ ու բազմակողմանիությամբ հաճախ դուրս էին գալիս հայ լեզվաբանության շրջանակներից, ունեին կարևոր նշանակություն նաև ընդհանուր լեզվաբանության, մասնավորապես պատմահամեմատական լեզվաբանության համար:

Գիտաժողովի աշխատանքներն ընթացան երեք մասնաճյուղով՝ համեմատական քերականության, լեզվի պատմության ու ժամանակակից հայերենի:

Գիտական լայն հասարակայնության ուշադրության կենտրոնում էր առանձնապես հայերենի համեմատական քերականության մասնաճյուղը, որի աշխատանքներին մասնակցում էին և զեկուցումներով հանդես եկան հնդեվրոպական համեմատական լեզվաբանության այնպիսի ականավոր ներկայացուցիչներ, ինչպիսիք են՝ ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Գ. Ջահուկյանը, Է. Աղայանը, ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամներ Թ. Գամկրելիձեն (Թբիլիսի), Մ. Բոգոլյուբովը (Լենինգրադ), բանասիրական գիտությունների դոկտոր Վ. Իվանովը (Մոսկվա), պրոֆեսորներ Ջ. Գրեպինը, Է. Հեմփը, Վ. Ծմալցտիգը (ԱՄՆ), Վ. Վինտերը, Կ. Ծմիդտը (ԳՖՀ), Մ. Լերուան (Բելգիա), Ջ. Բոլոնեզին (Իտալիա), ինչպես և սովետական ու արտասահմանյան միջին ու երիտասարդ սերնդի շատ այլ մասնագետներ: Մասնաճյուղի, ինչպես նաև լիագումար նիստերում, լսվեցին հայերենի համեմատական քերականության ամենատարբեր հարցերին նվիրված զեկուցումներ: Քննարկվեցին համեմատական քերականության համար հույժ կարևոր այնպիսի հարցեր, ինչպես՝ հայերենի տարածքային նկարագրությունն ու նրա տեղը հնդեվրոպական լեզվաընտանիքում, լեզվական առնչակցությունները հնդեվրոպական այլ լեզուների հետ, հայերենի հնչյունային համակարգի զարգացման, համեմատական ձևաբանության, շարահյուսության և բառագիտության հարցեր, նաև հայ մշակույթի պատմության հարցեր՝ կապված լեզվական հուշարձանների հետ: Զգալի տեղ էին գրավում հայերենում հնդեվրոպական նախալեզվի հնչյունական համակարգի, առանձնապես բաղաձայնական համակարգի՝ հայերենում արտացոլման և հետագա զարգացման ու հնչյունափոխական գործընթացների հարցերը: Դրանց էին նվիրված պրոֆեսորներ Թ. Գամկրելիձեի (Թբիլիսի), Ջ. Գրեպինի (ԱՄՆ), Ջ. Բոլոնեզիի (Իտալիա), Օ. Ծիրոկովի (Մոսկվա), Բ. Օլսենի (Դանիա), բանասիրական գիտությունների թեկնածուներ Ամ. Խաչատրյանի, Ալ. Խաչատրյանի, Ս. Հանեյանի (Երևան) բովանդակալից զեկուցումները:

Համեմատական ձևաբանության առանձին հարցերի քննությանն էին նվիրված պրոֆեսորներ Է. Հեմփի (ԱՄՆ), Է. Թումանյանի (Մոսկվա), Ֆ. Մավեի (Բելգիա), Ֆ. Կորտլանդի (Հոլանդիա), բանասիրական գիտությունների թեկնածուներ Լ. Սարաջևայի (Երևան), Ժ. Վայտենբերգի (Հոլանդիա), իսկ շարահյուսության հարցերին՝ պրոֆեսոր Վ. Ծմալցտիգի (ԱՄՆ) զեկուցումները:

Մասնաճյուղում հատուկ քննության առնվեցին նաև համեմատական բառագիտության հարցերը, որոնց քննությունը կարևոր էր մի կողմից՝ հայ և հնդեվրոպական մյուս լեզուների լեզվական առնչակցությունները պարզելու (պրոֆ. Մ. Ֆինացի՝ Իտալիայից, բանասիրական գիտությունների թեկնածու Ա. Ռուսակով՝ Լենինգրադից), մյուս կողմից՝ հայերենի բառապաշարի զարգացումն ու իմաստափոխական պրոցեսները մեկնաբանելու առումով (պրոֆեսորներ Հոբը՝ ԳՖՀ-ից, Հ. Ասմանգուլյանը և Վ. Քոսյանը՝ Երևանից, Ա. Փերիխանյանը՝ Լենինգրադից): Հատուկ հետաքրքրություն առաջացրեց Լ. Գերցենբերգի (Լենինգրադ) զեկուցումը՝ նվիրված **Արմենիա** բառի ստուգաբանությանը (հեղինակը այն կապում էր հին հունական **էդեմ**—դրախտային այգի բառի հետ):

Հայագիտության և ընդհանրապես հնդեվրոպաբանության համար որոշակի հետաքրքրություն էին ներկայացնում աշխարհահռչակ լեզվաբան, Քեմբրիջի (ԱՄՆ) համալսարանի պրոֆեսոր Ռ. Յակոբսոնի զեկուցումը (կարդաց պրոֆեսորի այրին)՝ **Հին հայկական Վահագնը համեմատական դիցաբանության լույսի տակ**, պրոֆ. Ջ. Ռասելի (ԱՄՆ) **Հին հայկական կրոնի մասին** և պրոֆ. Վ. Իվանովի (Մոսկվա) **Հին հայկական դիցաբանական տեքստի կառուցվածքի հարցի շուրջը** զեկուցումները:

Համեմատական քերականության մասնաճյուղում կարդացված զեկուցումներն իրենց նշանակությամբ դուրս են գալիս հայերենագիտության շրջանակներից և ունեն կարևոր նշանակություն ընդհանրապես հնդեվրոպական լեզվաբանության համար: Գիտաժողովում շեշտվեց, որ հնդեվրոպաբանների և



մասնավորապես հայերենի համեմատական քերականությամբ զբաղվող մասնագետների առջև կան շատ կարևոր, իրենց լուծմանն սպասող խնդիրներ, որոնք պետք է լինեն համեմատաբանների ուշադրության կենտրոնում: Դրանցից են՝ հայերենի տարածքային կապերի հետագա բացահայտումը, հնչյունական, քերականական և բառային զուգաբանությունների համակողմանի ուսումնասիրությունը, դրանց տեսակարար կշռի որոշումը, արխայիկ գծերի ու նորագոյացությունների սահմանազատումը, հայերենի և հնդեվրոպական մյուս լեզուների մերձավորության ու փոխհարաբերության, ինչպես և հայերենի և մեռած հնդեվրոպական լեզուների կապերի հետագա զննությունը, որոնք մեծապես կնպաստեն հայերենի նախագրային շրջանի զարգացման փուլերի սահմանմանը, հայերենի ծագման, ինչպես և հնդեվրոպական նախալեզվի հետ կապված շատ կնճռոտ հարցերի լուծմանը: Նշվեց, որ այս առումով շատ հետաքրքրական նյութեր են պարունակում մեր բարբառները, այդ իսկ պատճառով անհրաժեշտ է հատկապես ուսումնասիրել հայերենի բարբառների արխայիկ երևույթները, ավելի խորացված բացահայտեց այն ամենը, ինչ բարբառները կարող են տալ համեմատական լեզվաբանությանը:

Հայոց լեզվի պատմության մասնաճյուղում հանդես եկան մասնագետներ ԱՄՆ-ի, Կանադայի, Բելգիայի, Բուլղարիայի, Ֆրանսիայի, Լեհաստանի համալսարաններից ու գիտական կենտրոններից, Մոսկվայից, Լենինգրադից, Թբիլիսիից, Բաքվից և բնականաբար՝ Երևանից: Նրանց թվում էին այնպիսի հռչակավոր և վաստակաշատ լեզվաբաններ, ինչպիսիք են՝ պրոֆ. Ֆ. Ֆեյդին՝ Ֆրանսիայից, պրոֆեսորներ Մ. Լերուան և Վ. Էսբրոկը՝ Բրյուսելի համալսարանից, պրոֆ. Թոմսոնը՝ Նյու-Յորքից, Ռ. Ծմիտտը՝ ԳՖՀ-ից, պրոֆ. Վ. Առաքելյանը՝ Երևանից, նաև հայոց լեզվի պատմության ու բանասիրության ճանաչված երիտասարդ շատ մասնագետներ: Լայն էր մասնաճյուղում կարդացված զեկուցումների թեմատիկան: Լսվեցին զեկուցումներ հայերենի զարգացման տարբեր փուլերի ու տարբերակային ձևերի, հայերենի պատմական բարբառագիտության, հայերենի և հարևան ժողովուրդների լեզուների շփումների ու փոխազդեցությունների, հայ լեզվաբանական մտքի պատմության, հայերենի պատմության շրջանաբաժանման սկզբունքների, հայերենի գրական-պատմական, բառարանագրական հուշարձանների, ինչպես նաև բնագրագիտական ու բանասիրական մի շարք այլ խնդիրների վերաբերյալ: Հայոց լեզվով մեզ հասած հին և միջնադարյան ավելի քան 25 հազար ձեռագիր մատյանները վաղուց են զբաղեցնում հայագետներին և ընդհանրապես ողջ լեզվաբանական աշխարհին: Մեծ ուշադրությամբ լսվեցին հայ մատենագրության առանձին գործերին, առանձին պատմաշրջանների թեմատիկ ընդհանրություն ունեցող ժողովածուների բնագրական, բառաքննական ուսումնասիրությունների արդյունքները ներկայացնող զեկուցումներ. այդպիսին էին Վ. Էսբրոկի **Մշո տոնական ժողովածուի կառուցվածքը**, Ռ. Թոմսոնի **Դիոնիսիոս Արիոպագացու հայերեն թարգմանության տեքստը** և պրոֆ. Ա. Սանջյանի (Լոս-Անջելոս) **Օտար բառեր հայերեն ձեռագրերի հիշատակարանների մեջ** զեկուցումները:

Հայ մատենագրության լեզվական նյութի երկարամյա ուսումնասիրության արդյունքն էին ներկայացնում պրոֆ. Վ. Առաքելյանի **Դասական կամ «ոսկեդարյան» հայերենի հարցի շուրջը** և բանասիրական գիտությունների թեկնածու Ա. Մուրադյանի **Հունաբան դպրոցի ժամանակագրության հարցը** զեկուցումները: Հայերենի բառապաշարի բառարանագրական մշակման ու բառագիտության լավագույն ավանդույթների շարունակության ու զարգացման վկայությունն էին պրոֆ. Ա. Տերյանի (ԱՄՆ) **Փիլիսոփայական տերմինների և հասկացությունների հայերեն միջնադարյան մի բառարան**, բանասիրական գիտությունների դոկտոր Կ. Յուզբաշյանի (Լենինգրադ) **Ռուշտունի լեզվի բառարան ՍՍՀՄ ԳԱ արևելագիտության ինստիտուտի հավաքածուի մի հայերեն ձեռագրում** և բանասիրական գիտությունների թեկնածու Ք. Չուգասզյանի (Երևան, Մատենադարան) **Եղիա Կարնեցու թուրքերեն—հայերեն անտիպ բառարանը** զեկուցումները, նաև հայերենի բառապաշարի տարբեր հարցերի քննությանը նվիրված զեկուցումներ: Հիշարժան են, օրինակ, պրոֆ. Մ. Լերուայի (Բրյուսել) և բանասիրական գիտությունների թեկնածու Լ. Հովհաննիսյանի զեկուցումները՝ նվիրված իրանական փոխառություններին, Ռ. Գեորգաձեի (Թբիլիսի) զեկուցումը՝ նվիրված հայերենից վրացերենին անցած փոխառություններին, որը սովետական ժողովուրդների լեզվական մերձեցումների և փոխազդեցությունների հետաքրքրական օրինակ էր: Հայոց այբուբենին և ուղղագրության պատմությանն էին նվիրված բանասիրական գիտությունների թեկնածու Ս. Մուրավյովի (Մոսկվա) և բանասիրական գիտությունների դոկտոր Ս. Գյուլբուդաղյանի (Երևան) զեկուցումները: Կարդացվեցին հետաքրքրական զեկուցումներ նաև հայերենի պատմական քերականության վերաբերյալ

(պրոֆ. Ֆ. Ֆեյդին՝ Փարիզից, պրոֆ. Կ. Կոքսը՝ Կանադայից, բանասիրական գիտությունների թեկնածու Ս. Անթոսյանը՝ Երևանից):

Հայոց լեզվի պատմության հարցերը և հայ-վրացական լեզվական առնչությունները միշտ գտնվել են Վրաստանի լեզվաբանների հետազոտությունների ոլորտում: Ուրախալի է, որ Վրաստանի հայագետները զբաղվում են ո՛չ միայն հայ-վրացական բառապաշարային ընդհանրությունների, այլև քերականական կառուցվածքների զուգադրական-տիպաբանական ուսումնասիրությամբ, որը որոշակի հետաքրքրություն է ներկայացնում ընդհանուր լեզվաբանության, մասնավորապես լեզուների տիպաբանական ուսումնասիրության առումով: Այդպիսին էին բանասիրական գիտությունների դոկտոր Ա. Մարտիրոսովի և բանասիրական գիտությունների թեկնածու Մ. Սախոկիայի զեկուցումները:

Մեզ մոտ նոր զարգացող ուղղության՝ պատմական բարբառագիտությանն էին նվիրված պրոֆ. Ա. Պիսովիչի (Լեհաստան)՝ լիագումար նիստում կարդացած փաստալից և ընդգրկուն **Հայ բարբառների նոր պարսկական փոխառությունների հնչյունաբանության մի քանի հարցեր** և բանասիրական գիտությունների թեկնածու Մ. Մուրադյանի (Երևան) **Բարբառային տարբերակվածությունը հայերենի զարգացման միջին շրջանում** ուշագրավ զեկուցումները, իսկ բանասիրական գիտությունների դոկտոր Հ. Մուրադյանը ներկայացրեց այն գիտական սկզբունքները, որոնցով ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտն առաջնորդվում է հայ բարբառների ատլասի կազմության շնորհակալ և հույժ կարևոր գործում: Զեկուցումների մի ամբողջ շարք էր նվիրված հայերենի քերականագիտության և տեսության պատմության հարցերին (բանասիրական գիտությունների թեկնածուներ՝ Լ. Հովսեփյան, Ղ. Միրզոյան, Ա. Աբրահամյան, Դ. Սլիվնյակ՝ Երևանից):

Մասնաճյուղում կարդացված զեկուցումների համառոտ թվարկումն իսկ ցույց է տալիս դրանց բովանդակության բազմապիսությունն ու օգտակարությունը հայոց լեզվի պատմության ուսումնասիրության կարևոր բնագավառում:

Ժամանակակից հայերենի մասնաճյուղում հանդես եկան ճանաչված մասնագետներ՝ ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Է. Աղայանը, պրոֆեսորներ՝ Ս. Աբրահամյանը, Մ. Ասատրյանը, Ռ. Իշխանյանը, Հ. Բարսեղյանը և ուրիշներ, ինչպես նաև միջին և երիտասարդ սերնդի մասնագետներ ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտից, Երևանի պետական համալսարանից, Խ. Աբովյանի անվան պետական մանկավարժական, ՀՍՍՀ ԳԱ արևելագիտության, Կիրովականի մանկավարժական ինստիտուտներից, Լենինգրադից, Թբիլիսիից, Բաքվից, Փարիզից, Վենետիկից, Սոֆիայից:

Այս մասնաճյուղում ևս թեմատիկ բազմազանությամբ, գիտական խորությամբ և բարձր մակարդակով կազմված զեկուցումները, մեծ մասամբ լինելով համաժամանակյա հայեցակետով կատարված հետազոտություններ, միմյանցից տարբերվում էին թե՛ ուսումնասիրության եղանակներով, թե՛ նպատակադրումներով, թե՛ լեզվական նյութով: Դրանցում գործառական և կառուցվածքային առումներով հետազոտված էին նոր գրական հայերենի և առաջին հերթին ժամանակակից արևելահայերենի ու արևմտահայերենի քերականական համակարգերը, հնչյունաբանությունը, բառակազմությունն ու բառապաշարը, ոճաբանությունն ու դարձվածաբանությունը: Կային պատմական, զուգադրական, հարաբերակցական, հանրալեզվաբանական, կիրառական, նաև տեղեկատու բնույթի զեկուցումներ: Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ գիտաժողովում ներկայացված էին ժամանակակից հայերենի հետազոտության գրեթե ամեն բնագավառ, ուսումնասիրության ամեն տեսակ:

Ժամանակակից հայերենի քերականական կառուցվածքին էր նվիրված վեց զեկուցում: Դրանցից երկուսը վերաբերում էին խոնարհման համակարգին (բանասիրական գիտությունների թեկնածուներ Հ. Բարսեղյան՝ Երևանից և Ն. Կոզինցևա՝ Լենինգրադից): Ժամանակակից գրական արևելահայերենի հոլովման համակարգին նվիրված հետաքրքրական, նորարարական բնույթի զեկուցում ներկայացրեց Փարիզի համալսարանի հայագիտական ամբիոնի վարիչ, պրոֆ. Ժան-Պիեռ Մահեն: Օգտագործելով ֆրանսիացի լեզվաբան Ժան Պերոյի՝ ձևույթների դասակարգման մեթոդը և հայերենի կառուցվածքի սեփական դիտարկումները, նա կատարել է ժամանակակից արևելահայ գրական լեզվի հոլովների կառուցվածքային-իմաստաբանական դասակարգում՝ փորձելով մասնավորապես լուծել սեռական և տրական հոլովների գոյության և տարբերակման խնդիրը:

Երկու զեկուցում վերաբերում էին ժամանակակից հայերենի շարահյուսության հարցերին, մասնավորապես բայական բառակապակցությունների կառուցվածքային առանձնահատկություններին (տեխնիկական գիտությունների թեկնածու Ռ. Ուռուտյան՝ լեզվի ինստիտուտից) և շարադասության առանձնահատկություններին՝ լեզվի գործառական-ոճական տարբերակվածության, առկայացման



գործոնի, առոգանության հաշվառմամբ (Ն. Մելիքյան՝ լեզվի ինստիտուտից): Տեքստի լեզվաբանությանն էր նվիրված **Նախընթաց անդամը հայերենի պարբերությունում** զեկուցումը (բանասիրական գիտությունների թեկնածու Բ. Ղազարյան՝ լեզվի ինստիտուտից), իսկ բանասիրական գիտությունների դոկտոր Վ. Գրիգորյանի զեկուցումը հայոց լեզվի քերականության՝ իբրև կառուցվածքահամակարգային միասնության, նկարագրության նոր հայեցակետի մշակման փորձ էր:

Լայնորեն քննարկվեց նաև ժամանակակից հայերենի բառագիտությունը՝ տարբեր առումներով: Պրոֆ. Ս. Աբրահամյանն իր հետաքրքրական զեկուցման մեջ քննության էր առել ժամանակակից հայերենի տերմինակազմության մի քանի կարևոր հարցեր: Հայերենի բառապաշարի մի ուրույն շերտին՝ ազգանուններին էր նվիրված բանասիրական գիտությունների թեկնածու Տ. Ավետիսյանի զեկուցումը (Կիրովականի մանկավարժական ինստիտուտից): Ժամանակակից գրական հայերենի դարձվածաբանության իմաստային-կառուցվածքային վերլուծությանն էին նվիրված բանասիրական գիտությունների թեկնածու Խ. Բադիկյանի (լեզվի ինստիտուտ) և Մ. Խամոյանի (արևելագիտության ինստիտուտ) զեկուցումները: Ինչպես հայերենագիտության, նույնպես և, թերևս, ադրբեջաներենագիտության համար յուրովի նորություն էր Բաքվի մանկավարժական ինստիտուտի դոցենտ Գ. Բաղիրովի զեկուցումը՝ նվիրված ադրբեջաներենում առկա հայերեն բառային ներթափանցումներին: Զեկուցման մեջ փորձ էր արված հայերեն բառեր գտնելու ինչպես ադրբեջաներեն գրական, խոսակցական ու գեղարվեստական գրականության լեզվում, այնպես էլ Ադրբեջանի ու Հայաստանի տարածքի ադրբեջանական բարբառներում:

Արդի հայերենի հնչյունաբանության տարբեր հարցերին էին նվիրված բանասիրական գիտությունների թեկնածուներ Վրացական ՍՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտի աշխատակից Ն. Սաղանելիձեի և ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտի գիտաշխատակից Ա. Արամյանի զեկուցումները, որոնցում հնչյունների բաշխական վերլուծության հիման վրա բացահայտված էին արդի գրական արևելահայերենի հնչյունական համակարգի մի շարք առանձնահատկություններ: Հնչյունաբանության և դրա հետ կապված գրաբանության կիրառական խնդիրներին էր առնչվում Բուլղարիայի պատվիրակներ Ս. Ստոյանովի, Վ. Ցվետկովի և Է. Սելյանի ներկայացրած զեկուցումը, որն արժեքավոր էր հատկապես այն գործնական լուծումներով, որ առաջարկեցին ու ցուցադրեցին հեղինակները՝ օգտագործելով «Ստոյանով» տիպի սղագրման մեքենան՝ հարմարեցված հայերենին: Զեկուցման տեղեկատու բնույթն առավել հետաքրքրական էր դարձնում այն: Մասնաճյուղում լսվեցին այդ բնույթի նաև այլ զեկուցումներ, որոնք ներկայացրին սովետահայ բառարանագրության նվաճումները (պրոֆ. Ա. Սուքիասյան՝ Երևանի պետական համալսարանից) և Հայաստանում փորձառական հնչյունաբանության զարգացման գիտական ու նյութական նախադրյալներն ու հրապարակված արդյունքները (բանասիրական գիտությունների թեկնածու Ռ. Թոխմախյան՝ Հայկական ՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտից):

Հատկապես հետաքրքրական էին նոր գրական հայերենի պատմությանը վերաբերող զեկուցումները, որոնցում առաջ քաշված դրույթները մեծապես կնպաստեն հայոց լեզվի պատմության ստեղծման գործին, որ ձեռնարկել ու իրականացնում է ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտը: Ժամանակակից գրական հայերենի քերականական կառուցվածքի զարգացման ընթացքն էր ներկայացնում մեր զեկուցումը, որն ընթերցվեց լիագումար նիստում: Պրոֆ. Ռ. Իշխանյանը (Երևանի պետական համալսարան) բնագրագիտական և գործառական քննությամբ մեկնաբանեց վաղ աշխարհաբարի բարբառային հիմքի հարցն ու առանձնահատկությունները, իսկ պրոֆ. Մ. Ասատրյանը (Երևանի պետական համալսարան) ներկայացրեց արևելահայ գրական լեզվի և Արարատյան բարբառի հնչյունական համակարգերի փոխհարաբերությունները:

Հայտնի է, որ ժամանակակից հայերենն ունի երկու գրական տարբերակ, որոնց զուգադրական ուսումնասիրության ոլորտում հայերենագիտության մեջ կատարվում են առաջին քայլերը: Երեք զեկուցում վերաբերում էին այս բնագավառին՝ մասնավորապես արևելահայ ու արևմտահայ գրական լեզուների, հընչույթային համակարգերի (բանասիրական գիտությունների թեկնածու Ա. Սարգսյան՝ լեզվի ինստիտուտից), հնչերանգի (բանասիրական գիտությունների թեկնածու Ս. Ղուկասյան՝ լեզվի ինստիտուտից) և բաղադրյալ ստորոգյալների արտահայտության ձևերի զուգադրական հանգամանալի քննությանը (բանասիրական գիտությունների թեկնածու Ա. Քյուրքչյան՝ Խ. Աբովյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտից):

Առանձին խումբ էին կազմում հանրալեզվաբանական բնույթի զեկուցումները: Այս ուղղությունը ևս հայերենագիտության ոլոր-

տում իր առաջին քայլերն է կատարում: Ակադեմիկոս Է. Աղայանի զեկուցումը, որն ընթերցվեց լիագումար նիստում, ներկայացնում էր Սովետական Հայաստանի պետական լեզվի՝ գրական արևելահայերենի գործառական զարգացման և հասարակական դերի բարձրացման պատմությունը, բանասիրական գիտությունների թեկնածու Հ. Զաքարյանի զեկուցումը վիճակագրական նյութի հիման վրա ներկայացնում էր հայերենի և Երևանում զուգահեռ գործածվող մյուս լեզուների փոխհարաբերությունը հասարակական կյանքի տարբեր ոլորտներում: Պրոֆ. Լ. Զեքիյանի (Վենետիկ) զեկուցումն ուղղակի շոշափում էր արևմտահայերենի ցավոտ հարցերից մեկը՝ լեզվապահպանման խնդիրը սփյուռքում, մանավանդ արևմտյան երկրներում: Զեկուցման արժեքավոր կողմերից էր այն, որ պատմական, մշակութային և հասարակական պայմանների ու գործոնների վերլուծությամբ զեկուցողը փորձում էր կանխատեսել լեզվապահպանման հետագա ընթացքը:

Միջազգային հայագիտական գիտաժողովը լիովին կատարեց իր առջև դրված խնդիրները: Այն էական դեր խաղաց հայերենագիտության զարգացման մեջ ո՛չ միայն իր անմիջական գիտական արդյունքներով, այլև իր նպատակադրմամբ, հեռանկարային կանխագծումներով: Ավագ և միջին սերնդի ներկայացուցիչների կողքին հանդես եկած համեմատաբար երիտասարդ մասնագետները իրենց բովանդակալից զեկուցումներով ցույց տվեցին, որ աճել է երիտասարդ հայերենագետների մի նոր սերունդ, որը, շարունակելով ավագ սերնդի գործը, ավելի կզարգացնի հայերենագիտությունը:

Գիտաժողովը կարևոր իրադարձություն էր մեր հանրապետության գիտական կյանքում: Այն մեծապես կնպաստի հայերենագիտության հետագա զարգացմանը, նոր հետաքրքրություն կհարուցի հայոց լեզվի ու հայ մշակույթի նկատմամբ:

Գիտաժողովի Սովետական Հայաստանում հրավիրվելը շատ խորհրդանշական էր նաև իր զուգադիպությամբ մի մեծ իրադարձության՝ Սովետական Միության կազմավորման 60-ամյակի հետ: Ըստ էության, այն ցուցադրումն էր Սովետական Միության կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության և նրա վիթխարի նշանակության, ինչպես սովետական մյուս ժողովուրդների, նույնպես և մեր ժողովրդի ազգային մշակույթի ու ազգային լեզվի զարգացման համար:

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 22.12.82 թ.: Ստորագրված է տպագրության՝ 21.1.83 թ.: ՎՖ 06722: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16000: Պատվեր՝ 2720:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2

## СОДЕРЖАНИЕ



### НА РУБЕЖАХ ОДИННАДЦАТОЙ ПЯТИЛЕТКИ



### НЕЗАБЫВАЕМЫЕ ВСТРЕЧИ



### ПРОБЛЕМЫ И СУЖДЕНИЯ